ԺՈՂՈՎԱԾՈՅՔ

# ԱՌԱԿԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ

ՆԻՒԹԵՐ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ ՄԻՋԻՆԴԱՐԵԱՆ
ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

ԸՍՏ ՀԱՅԱԳԷՏ Ն. ՄԱՌԻ

ՏԵՂԵԿԱՏՈՒՈՒԹԻՒՆ ԵՒ ՔԱՂՈՒԱԾՔ

ԳՐԵՑ

Հ. ՅԱԿՈՎԲՈՍ Վ. ՏԱՇԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1900.

# ԱԶԴ

*Հայագէտ Ն. Մառի եռահատոր գործն Վարդանայ եւ ընդհանրապէս “Վարդանեան„ եւ այլ հայ Առակաց վրայ ռուս լեզուաւ նոր ժամանակի հայագիտութեան ամենակարեւոր գործերէն մին է: Մեր պարտքն համարեցանք այս քննութիւնքը՝ որ նոր լոյս սփռեցին մեր մատենագրութեան գլխաւոր ճիւղերուն միոյն վրայ, ընդարձակ տեղեկատուութեամբ ծանօթացընել մեր ընթերցողաց, պատշաճ տեղերն աւելի քաղուածօրէն յառաջ բերելով կարեւոր կէտերը. եւ այս՝ այնու մանաւանդ որ շատ հայ բանասիրաց թերեւս մատչելի չըլլայ հայագիտին սկզբնագիրը (տես “Հանդէս„, 1899, Թ. 7 եւն:) Գործը կը խոստովանինք մեր ակնկալածէն աւելի ստուարացաւ. եւ ասով մանաւանդ վերջին եւ կարեւորագոյն գլուխները քիչ շատ ամէն նշանաւոր կէտերը կ՚ամփոփեն: Այս պատճառաւ կարծենք ապարդիւն աշխատութիւն մը չենք կատարած, նոյնն այժմ առանձին գրքուկի ձեւով հրատարակելով: Սակայն քանի որ մեզի անհնար էր մտնել շատ մը մանրամասնութեանց մէջ, որ ոչ նուազ կարեւոր են այս կարգի քննութեանց, կը բաղձայինք կատարուած տեսնել այն մեր ակնկալութիւնը, զոր յայտնեցինք (տես վարը՝ էջ 7) թէ հմտագոյն մը ռուս լեզուի “չուշանար հատորի մը մէջ ամփոփել գրքին պարունակութեան էական մասերը պէտք եղած մանրամասնութեամբքն ալ, եւ այսպէս մատչելի ընել յարգի գործս նաեւ այն հայ բանասիրաց շրջանին, որուն մատչելի չէ արդի մեծածաւալ գործը ռուս լեզուաւ:„ Այս նպատակին թերեւս նպաստէ մասամբ նաեւ մեր այս համառօտութիւնն. եւ այս վախճանաւ միայն լոյս կը տեսնէ ներկայ տետրակս:*

Հ. Ց. Տ.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ԺՈՂՈՎԱԾՈՅՔ ԱՌԱԿԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ

## ԸՍՏ Ն. ՄԱՌԻ

Մ՚իջին դարու մեր մատենագրութեան գլխաւոր բաժիններէն մին կը կազմեն Առակներու բազմատեսակ հաւաքածոյքն։ Բաւական առատութեամբ կը գտնուին ձեռագրաց մէջ, բայց նաեւ բաւականէն աւելի խառնակ, պէսպէս ծաւալով ու քանակութեամբ առակաց, զանազան խմբագրութեամբ եւ այլեւայլ անուններով։ Այս ամէնն՝ կարելւոյն չափ ընդարձակ շրջանի մէջ ամփոփել, իրարու համեմատել, ճշգրտել փոփոխ աղերսներն՝ որոշելով պէսպէս խմբերն ու խմբագրութիւնները, սկզբնաւորութիւնքն, միւս գրականութեանց ազգակից նիւթերու հետ բաղդատել, եւ որոշել այլեւայլ հեղինակաց տրուած բաժինները, գրական աշխատասիրութիւն մըն է՝ որ որչափ կարեւոր նոյնչափ դժուարին է. գործ մը որ միայն երկարամեայ քրտնաջան հետախուզութեամբ եւ ուսումնասիրութեամբ ի գլուխ կրնար հանուիլ։ Այս գործն ստանձնած է հայագէտն Ն. Մառ՝ որուն բազմաթիւ միւս գործերն ալ անծանօթ չեն մեր ընթերցողաց, եւ ի գլուխ հանած այնպիսի ընդ

# ԺՈՂՈՎԱԾՈՅՔ ԱՌԱԿԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ

## ԸՍՏ Ն. ՄԱՌԻ

---

Մ՚իջին դարու մեր մատենագրութեան գլխաւոր բաժիններէն մին կը կազմեն Առակնե-
րու բազմատեսակ հաւաքածոյքն։ Բաւական ա-
ռատութեամբ կը գտնուին ձեռագրաց մէջ, բայց
նաեւ բաւականէն աւելի խառնակ, պէսպէս
ծաւալով ու քանակութեամբ առակաց, զանա-
զան խմբագրութեամբ եւ այլեւայլ անուննե-
րով։ Այս ամէնն՝ կարելւոյն չափ ընդարձակ
շրջանի մէջ ամփոփել, իրարու համեմատել,
ճշգրտել փոփոխ աղերսներն՝ որոշելով պէսպէս
խմբերն ու խմբագրութիւնները, սկզբնաւորու-
թիւնքն, միւս գրականութեանց ազգակից նիւ-
թերու հետ բաղդատել, եւ որոշել այլեւայլ
հեղինակաց տրուած բաժինները, գրական աշ-
խատասիրութիւն մըն է՝ որ որչափ կարեւոր նոյն-
չափ դժուարին է. գործ մը որ միայն երկարա-
մեայ քրտնաջան հետախուզութեամբ եւ ուսում-
նասիրութեամբ ի գլուխ կրնար հանուիլ։ Այս
գործն ստանձնած է հայագէտն Ն. Մառ՝ որուն
բազմաթիւ միւս գործերն ալ անծանօթ չեն մեր
ընթերցողաց, եւ ի գլուխ հանած այնպիսի ընդ-

արձակ ծրագրով ու ծաւալով, ինչպէս նաեւ այնպիսի մանրազնին հիմնականութեամբ եւ քննադատական սրամտութեամբ, որ իւր եռահատոր գործն ոչ թէ պարզ Վարդանայ Առակաց քննութիւն եւ հրատարակութիւն մ'եղած է, այլ հմտալից աղբիւր մը ճոխ "Նիւթերու միջինդարեան Հայոց մատենագրութեան պատմութեան" առհասարակ։

Հայ Առակաց մասին ցայժմ շատ բան չէր եղած։ Բաց ի այլեւայլ (պարզ ընթերցանութեան համար, ուստի առանց որ եւ է քննադատական ընտրողութեան) հին ու նոր հրատարակութիւններէ Աղուեսագրոց, Առակաց Վարդանայ, Մխիթարայ Գօշի, Ոլիմպիանու եւ Նմանեաց, կը մնային բազմատեսակ եւ խառնակ հաւաքմունք հետազօտելի եւ հրատարակելի։ Միակ հետազօտական գրուածն՝ որ լոյս տեսած է, կը գտնուի հանգուցեալ Հ. Ղ. Յովնանեանի "Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ" երկասիրութեան մէջ, երկու բաւական ընդարձակ հատածներ "Առակաց" մասին, (Տետր Բ, տպ. Վիեննա 1897, էջ 273—337,) գլխաւորաբար ի նկատի ունենալով այն խնդիրը թէ ինչ կապ կայ առոնց եւ Պիտպայի գրոց մէջ։ Սակայն պակասն էր ամբողջ նիւթին լիակատար ուսումնասիրութիւն մը, որ տարածուէր յարակից ամէն խնդիրներուն վրայ ալ, Աղուեսագրքէն մինչեւ Ոլիմպիան, Գօշ, Վարդան, "Եսովպեան" առակներն, "Բարուախօս", Ազգային ժողովրդական առածներն, եւն։

Թէ այս պակասը շատ պիտի չուշանար լրացուելու, եւ այն՝ այսպիսի ընդարձակ ծաւալով, յայտնի էր մեզ արդէն քանի մը տարի յառաջ. այնպէս որ ուրիշ տեղ մը (տես “Ցուցակ„ տպ. 1896, էջ 1055) կրնայինք հարեւանցի նշանակել թէ “Աղուեսագրոց եւ ընդհանրապէս Առակաց Նոր հրատարակութիւն մը բազմաթիւ ձեռագրաց համեմատութեամբ, քննութեամբք եւ արաբերէն բնագրով մը՝ որ հայերէնէն է, կը հրատարակէ Ն. Մառ քիչ ժամանակէն՝ երեք հատորով:„ Այս ծանօթութիւնն ունէինք ի հարկէ նոյն իսկ հեղինակէն, որ բարեհաճած էր մեր առջեւը դնել նաեւ այն ատեն արդէն տպագրուած երկու հատորները: Վասն զի Բ. եւ Գ. հատորները (Բնագիրք եւ Ցաւելուածք) տպագրութեան իբրեւ տարի նշանակուած ունին 1894. յատկապէս Գ. հատորին յառաջաբանը “1893 դեկտ. 1„ թուականը կը կրէ, Բ. հատորինը՝ “26 մայիս 1895:„ Չէր լրացած տակաւին առաջին հատորը կամ Հետազօտութիւնքն, որուն յառաջաբանական զեկուցումը “1 ապրիլ 1899„ թուականաւ ստորագրուած է. որով ամբողջ գործն այժմ դեռ հրապարակ կ՚ելլէ միանգամայն:

Ահա այս սպասուած երկասիրութիւնն, որ հայագիտին “մագիստրոսական„ ալ աշխատասիրութիւնն է, առջեւնիս ունինք. (օրինակ մը բարեհաճած էր հեղինակը խաւրել մեզի) վերոյիշեալ խորագրով, կամ՝ ինչպէս ինքը հայագէտն Բ հատորին ճակատը դրած է՝ “Ն. Մառ, ժո-

Ժողովածոյք Առակաց Վարդանայ, Նիւթք առ ի Պատմութիւն Միջին դարուց Դպրութեան Հայերէնի", երեք մասով. առաջինը՝ "Հետազօտութիւնք", երկրորդը՝ "Բնագիր" (հայերէն), երրորդը՝ "Յաւելուածք" նոյնպէս բազմաթիւ բնագիրներով։ Երեքն ի միասին ստուար գործ մը կը կազմեն 1207 մեծադիր ութածալ էջերով։[1] Բայց թողլով նաեւ ծաւալը՝ հարեւանցի ակնարկ մ'ալ օրինակի համար միայն երկրորդ մասին կամ բնագրին վրայ իւր այն բազմախուռն մանրակրկիտ համեմատութեամբքն իբր 24 օրինակի, բաւական է համոզել՝ բանասիրական հետազօտութեանց նաեւ քիչ ծանօթ բանասէր մ'որ հոս տարիներու անխոնջ ջանասիրութեան արդիւնքն է ամբարած։ Միայն նիւթական աշխատութիւնը մեծ եւ յարատեւ փութաջանութիւն կը պահանջէ, եւ՝ եթէ այսպիսի գործքի մը յարգը կորսնցընել չուզուիր՝ անխոնջ մտադրութիւն ամենափոքր համեմատուած կէտերու ալ ճշգրտութիւնը պահպանելու։ Մեր արդի հանգամանաց մէջ՝ նոյն իսկ պարզ ատաղձ հաւաքելը դիւրին չէ եւ անհնար առանց նաեւ երկար ուղեւորութեանց։ Այսպէս հայագիտիս մանրամասն համեմատած ձեռագիրք կը գտնուին Էջմիածին, Վենետիկ, Վիեննա, Պարիս ու Բերլին,

---

[1] Н. Марръ, Сборники притчъ Вардана, Матеріалы для исторіи средневѣковой Армянской Литературы. I. Изслѣдованіе. Petersb. 1899, 8° pp. XLI + 594. — II. Текстъ. 1894, 8° XVI + 344. — III. Приложенія, 1894, 8° pp. X + 202.

չհաշուելով միւս ամէն ձեռագիր ու տպագիր գործերն որ անհրաժեշտ էին այս կամ այն կէտին լուսաւորութեան եւն։ Այս միայն նիւթական կողմն է. բայց այսպիսի աշխատասիրութեան մ'ամենէն յարգի՝ միանգամայն դժուարագոյն եւ ծանրակշիռ կողմն է՝ այն ամէն խառնակ ատաղձները մշակել, քննադատել եւ հետազօտել, առաջարկեալ խնդիրներն ուսումնասիրել ամէն տեսակէտով։ Աչքէ անցընելու է միայն գործածուած ձեռագրաց եւ տպագիրներու եւ այլ շատ յաճախ յիշուած ուսումնական գործերու "Նշաններու եւ համառօտութեանց" ցանկը (էջ ԺԴ—Ե, ԺԶ—Է), տեսնելու համար թէ որչափ ընդարձակ է հայագիտին ընտրած նիւթերուն հետազօտութեան շրջանը։

---

## Ա.

Առաջին մասը կը պարունակէ Հետազօտութիւնքն՝ ինչպէս ըսինք, եւ է եռահատոր գործոյն ամէնէնստուար հատորը։ Սկիզբը դրուած են, ինչպէս այսպիսի գործքերուն մէջ սովորական է, այլեւայլ պատրաստողական մասեր (էջք Ա—ԽԱ), Յառաջաբան մ՚ուր նշանակուած են քանի մը նորագոյն հրատարակութիւններ ալ, դիտողութիւններ ձեռագրաց համեմատութեանց կերպին մասին, եւ նմաններ (էջ Է եւն), "պայմանեալ նշանաց եւ համառօտութեանց" մասին դիտողութիւն եւ ցանկեր նոյն համառօտութեանց (էջ ԺԳ եւն), վրիպակներ՝ երեք հատորին ալ (էջ ԺԸ եւն), ընդարձակագոյն նիւթոց ցանկ մը՝ բոլոր հատածներու նիւթը մի առ մի նշանակելով (էջ Ի—ԼԹ) եւ նմաններ։ Մեծագոյն տեղը կը բռնեն ի հարկէ բուն "Հետազօտութիւնքն (էջ 1—573), բաժնուած տասն ընդարձակ գլուխներու, եւ դարձեալ՝ որ փընտռուած բան մը դիւրաւ գտնելու մեծապէս կը նպաստէ՝ բազմաթիւ հատածներու անընդհատ թուարկութեամբ ի սկզբանէ մինչեւ վերջն, որով բուն մարմինը բաժնուած է՝ §§ 1—583 հատածներու։ Հատորը կը փակեն այլեւայլ Յաւելլիք եւ Ուղղելիք (էջ 573—6), Վերջաբան մը (էջ 577—82), եւ ի վերջոյ անուանց ցանկ մը

(էջ 583—94։) Բուն ծանրակշռութիւնը կը մնայ ի հարկէ հետազօտութեանց վրայ, ուր հեղինակը քննութեան առած է առակներու եւ յարակից նիւթերուն ամէն խնդիրները։ Երկար կ'ըլլար եթէ այս քննութեանց արդիւնքները մանրամասն հոս յառաջ բերել ուզուէր, որչափ ալ բաղձալի ըլլար։ Մենք ստիպուած ենք շատանալ գլխաւոր կէտերը համառօտիւ յիշելով, նախ որ մեր տրամադրելի միջոցը չի ներեր աւելին, եւ երկրորդ որ կը յուսանք եւ կը բաղձանք որ հմտագոյն մը այն լեզուին որով հայագէտը գրած է իւր ուսումնասիրութիւնն, չ'ուշանար փոքր հատորի մէջ ամփոփել գրքին պարունակութեան էական մասերը՝ պէտք եղած մանրամասնութեամբքն ալ, եւ այսպէս մատչելի ընել յարգի գործս նաեւ այն հայ բանասիրաց շրջանին, որուն մատչելի չէ արդի մեծածաւալ գործը ռուս լեզուաւ։

## 1.

Առաջին գլուխն է (§ 1—54) "Աղուէսագիրք եւ كتاب امثال الثعالب ("Գիրք Առակաց Աղուէսուց"), ուստի աղուեսագիրքն հայերէն եւ արաբերէն բնագիրներով։ Շատոնց ծանօթ էր հայ աղուեսագիրքն․ արաբականը ծանօթացաւ Լոթի ցուցակովն արաբական ձեռագրաց "Հնդկական Պաշտօնէութեան" մատենադարանի[1]

[1] O. Loth, A Catalogue of the Arabic Mss. in the Library of the Indian Office. Լոնտոն 1877, էջ. 303։

եւ քիչ մ'եաքն ծանօթ գիտնականք Պրիմ եւ Սօցին կրնային մատնանիշ ընել[1] որ զրուցապատում մը "Նիւթը կրնայ առած ըլլալ միայն բերանացի աւանդութենէ, եւ ամէն հետքերը հոս գլխաւոր զանգուածին համար մատնանիշ կ'ընեն դէպ ի Քրդաստան ու Հայաստան. Համեմատելու է՝ օրինակի համար՝ մանրամասնութեանց մէջ գրեթէ բառացի անգամ համաձայն եղող Վարդանայ առակներն եւ անոնց շատ նմանները 1049 (թուրշունի) յեռոպերէն Հնդկական պաշտօնէութեան"։ Միւս կողմանէ շատ անճիշդ գաղափարներ ունէին առակացս մասին գիտնականք. այսպէս երբ անգղիացի գիտնական մը[2] յիշելով Բերախեահի խմբագրած "Աղուեսու առակները (Meshle Shualim)" կը յիշեցընէ որ "մի եւ նոյն ժամանակ հեռաւոր Հայաստանի մէջ Բերեքիա Նաքդանեան Թարգմանեց արաբերէնէ 164 առակներու հաւաքում մը Agho-Vesakirk տիտղոսով"։ Այս տեղեկութեան հիմն է Դիւ-Մերիլի գործը[3], որ կը յիշէ երեք հայ առակախօսներ՝ "Մխիթար Գոշ, Վարդան, եւ Բերեքիա Նաքդանեան՝ հեղինակ հաւաքման մ'որ՝ Բերախեահի հաւաքման պէս՝ կը յորջորջուի Agho-Vesakirk, գիրք աղուեսու" եւն։ Անծանօթ ա-

---

[1] E. Prym und A. Socin, Der Neu-Aramäische Dialect des Tûr-'Abdîn, Գէօթինկէն 1881, Հտր. Ա, էջ ԻԳ—ԻԴ։

[2] Jacobs, The Fables of Aesop, 1889, I. 177.

[3] Du Méril, Poésies inédites du moyen âge, précédées d'une histoire de la Fable Ésopique. Փարիզ 1854, էջ 29—31։

ռամկագիրս “Երեմիա վարդապետ„ ի Հարկէ պարզ “թիւրիմացութեան մ'արդիւնք„ է, ըստ երեւութին Աղուեսագրոց “կեղծ-Էջմիածնեան„ 1698ի տպագրութեան Հրատարակիչն փոխուած եղած է Հեղինակ, եւն: Դիւ-Մերիլ մէկ կողմանէ իւր տեղեկութիւնքն քաղած է Վարդանայ գաղղիերէն թերի թարգմանութիւնն առջեւն ունենալով[1]. միւս կողմանէ կայ Նայմանի կարծիքն[2], որ կը գրէ թէ Վարդանայ կը տրուի առակաց գիրք մ'որ “մասամբ օրինակուած է Հնագոյն Հայ մատենագիրներէ եւ մասամբ յօրինուած իրմէ, ամբողջը 144 թուով„ եւն, եւ ուրիշ նմաններ: Այս ամէն անճիշդ գաղափարներն ճշգրտելու Համար նախ պէտք էր Համեմատել Աղուեսագիրքն եւ յիշեալ արաբականը: Ցախտակ մը (էջ 4—5) մեր առջեւը կը դնէ Հայ եւ արաբ աղուեսագրոց առակաց նիւթերը՝ թուով 164: Յիշեալ արաբական ձեռագրին մասին (India Office Nr. 1049, այժմ՝ Nr. 3515) որ “քարշունի„ է, այսինքն՝ արաբերէն ասորատառ, ընդարձակ տեղեկութիւններ կը գտնենք գրքիս մէջ, որուն § 5 կը ներկայացնէ ձեռագրին բովանդակութիւնն՝ բաց ի Աղուեսագրքէն, ընդՀանրապէս զրոյցներ եւ Հրաշքներ Ս. Կուսին,

---

1 S.-Martin, Choix de Fables de Vartan. Պարիս 1825:

2 Neumann, Versuch einer Geschichte der arm. Literatur. Լայպցիգ 1836, էջ 176: Նայման այստեղ բառ առ բառ թարգմաներ է Գեր. Հ. Սուքիաս Սոմալի գործէն (S. Somal, Quadro եւն. Վենետ. 1829, էջ 111—12) միայն քանի մը կէտ աւելի անճիշդ ալ բացատրելով:

եւ նմանիք։ Դժբախտաբար ճիշտ Աղուեսագրքին քանի մը թուերը կը պակսին ձեռագրին թերի ըլլալովն։

Ամենակարեւոր կէտն է եւ հիմն այսպիսի ուսումնասիրութեանց՝ խնդրոյ տակ եղող բնագիրները մանրամասն համեմատել իրարու եւ ճշգրտել այս բաղդատութենէ ելած արդիւնքն։ Այս բաղդատութեան նուիրած է հեղինակն առաջին գլխուն մեծագոյն մասը (§ 7—40), ուր 35էն աւելի առակներ յառաջ բերուած են ռուսերէն թարգմանութեամբ, աղբերքն համեմատուած եւ ճշգրտուած, մէկ կողմանէ արաբերէն աղուեսագրքին (բնագիրքը տես III, 133 ff), միւս կողմանէ հայերէնին։ Քանի մը հատին ազգակից եւ նաեւ աղբիւր են Գոշի անուամբ առակներն, որոնք ի հարկէ նոյնպէս հաղորդուած են թարգմանութեամբ, եւն (տես § 11, 21, 35, 38։)

Այս համեմատութենէն շատ ծանրակշիռ հետեւութիւն մը կ'ելլէ, որ այլազգ շատերուն անհաւատալի պիտի երեւար.— այնչափ վարժած ենք՝ հայ թարգմանութեանց առատութենէն՝ շուտ մ'ամէն բան դիւրաւ թարգմանութիւն համարելու, բաւական որ նման օտար բնագիր մը գտնուի։ Իսկ հոս հայագէտը կ'ապացուցէ որ “Արաբական “Գիրք առակաց աղուեսուց„ է Թարգմանութիւն հայերէն Աղուեսագրոց„, ապացոյց մ'որուն նուիրուած են տասն հատուածներ (§ 41—9) զօրաւոր եւ համոզիչ ապացոյցներով։ Բաց անկէ որ արաբականին լեզուական (ընդարձակ

տես § 42) եւ այլ նշաններն կը ցուցընեն որ արաբերէնն աւելի ուշ ժամանակի ծնունդ է՝ համեմատութեամբ հայոյն, բաց ի նաեւ ծանրակշիռ փաստերէ՝ որ կը խօսին ի նպաստ հայկական ծագման Աղուեսագրոց, (— գլխաւորաբար այն կէտն որ նոյն հաւաքման նիւթերուն շատին աղբիւրը կը գտնենք հայ մատենագրութեան մէջ մինչեւ նաեւ ԺԲ. դար, տես Գոշ եւ Վարդան Այգեկցի —,) կան նաեւ ուրիշ շօշափելի ապացոյցներ։ Արաբերէնին հայերէն բնագրէ թարգմանուած ըլլալուն "վճռական" ապացոյց են ստուգիւ այն բազմաթիւ սխալմունքն ու վրիպակներն որ կը տեսնուին արաբերէնին մէջ, որ կը մեկնուին հայ բնագիր մը սխալ հասկընալէն կամ կարդալէն, օրինակին աղաւաղութենէն եւն։ Ընդարձակ հատած մը՝ քանի չափ ստորաբաժանմամբ (§ 46) յառաջ կը բերէ բազմաթիւ այսպիսի կէտեր։ Յիշենք միայն մէկ քանին ։ ՃՀԲ. առակը (II, 207) կը պատմէ որ Աղեքսանդրի բերին "նուր" մի որ "ելից զթափսին" եւ խաղողին մէկ վազը կուժ մը լեցուց, որուն վրայ Աղեքսանդր "խորհեցաւ չարէք առնուլ", եւ այն ատեն այն առատութիւնը խափանեցաւ երկրէն։ Իրաւունք ունի հայագէտը պնդելու որ հոս "Նուռ" աղաւաղութիւն է "նուր" բառին, իսկ "չարէք" առնուլ պարսկերէն բառ է եւ կը նշանակէ չորրորդ մասն իբր հարկ առնուլ, ուստի կարդալու է "չարէք (چاریك) առնուլ"։ Բայց արաբացի թարգմանը դժուարաւ կրնար թափանցել այս կէտին, ուստի փոխադրած՝ "Նուռ"

(الرمانة) եւ «չարիք ընել» (يعمل شر). տես Արաբ. Թիւ 19։ — Անօթի աղուէսն սառոյց գտնելով (առակ ՀԳ.) կը սկսի ուտել, բայց կը ստիպուի ըսել՝ «Վա՜յ ինձ, զի ահագին է ֆըֆըռտելոյ. զի աղաղակս է ի գլուխս եւ յատամունս իմ, եւ ի փորս իմ բնաւ ինչ մի ոչ իջանէ։» Խնդրական «գրգըռտելոյս» պէսպէս ձեւերով կը գտնուի («կրկտելոյս» «ֆըֆըռնօ», «ֆըֆըռնօ», «գոլգայ-լոյն» եւ «գլգլոյն») եւ անշուշտ պէտք է մեկնել ռամկօրէն «կլկլալ» (կռկռալ) բացատրու-թեամբ։ Արաբացին (Թիւ 36) ըստ երեւութին կարդալով «գոլգայլոյն» կամ «գալգայլոյն» իւր օրինակին մէջ, լուծեր երկու բառ ըրեր է «ֆուլ ֆույլոյն», իբրեւ թէ բնագիրն ըլլար՝ «ահագին է գալ գայլոյն»։ — ԾԵ. առակին համեմատ մարդասպան մը փախած՝ ուզեց Նեղոսն անցնիլ, եզերքն առիւծ տեսնելով՝ կը փախչի ծառ մը կ'ելլէ, բայց հոն ալ կար ահագին վիշապ մը, որուն վախէն ծառէն վար ինկաւ, «Նա-ահա ել է ֆէթէն խոխորդէլան եւ էխուլ զնա։» Բայց Արա-բացին (Թիւ 59) կը գրէ՝ فخرج من الارض شيا مثل التنين وابتلعه այսինքն՝ «եւ ելաւ ֆէթնէն ճէթի (կամ՝ հըճէթի) նման բան մը եւ կլլեց զանի-կայ։» Ցայտնի է որ ֆէթը՝ արաբացին «ֆէթին» ըրեր է. այն ատեն ի հարկէ կոկորդիլոս մը չէր կրնար գետնէն ելլել, այլ միայն հրէշ մը՝ կետի նման բան մը։ — Երինջները խայտալով (առակ ԾՁ.) կը նախատէին եզներն որ աշխատե-լէն չեն դադրիր։ Ահա կու գայ թագաւորն. ժողվելով երինջները մորթեցին եւ ճաշ պա-

տրաստեցին թագաւորին ու զօրաց։ Այն ատեն ըսին եզներն երիջներուն՝ “Ահա որդեակք մեր, ճան աւուրս այս պարապորդ հանգչէիք եւ գիրանայիք„։ Իմաստն այնպէս պայծառ է որ խնդիր չի կրնար ըլլալ “վասն աւուրս„ ընթերցուածին վրայ։ Սակայն կայ աղաւաղութիւն մ'ալ „Ճ[illegible]ւոր„, զոր գտած կ'երեւայ Արաբացին (Թիւ 60) թարգմանելով ضر, ուստի “վնասակար„ հասկցած։ — Առակի մը մէջ (ՂԵ․) առիւծը կ'ըսէ մարդուն՝ “Թէ մարդ ես, նա սէրտ եւ անխնայ զարկ դու եւ հար զթիկունս իմ՝„ եւն։ Արաբացին (Թ․ 73) փոխադրած է “Զարկ նործրաորտանեամբ (اضرب بقلب قاسى) երեսիս„ եւն․ ուր թողլով “զթիկունս իմ„ խօսքին՝ “յերեսս„ փոխուիլը՝ յայտնի կը տեսնուի որ “սէրտ„ գրաբար՝ այն ժամանակի ոչ շատ սովորական բառն արաբական թարգմանիչը “սէրտ„ կարդացեր է, որով “կարծր սրտով„ կրնար գրել։ — Առակի մը մէջ (ՄԺԴ․) կ'ըսուի թէ այրի մի “յամէն օր շերեփ մի Ջուր լնոյր ի կարն եւ ի խափ տայր„ եւն, ասութիւն մ'որուն իմաստին վրայ տարակոյս չի կրնար ըլլալ։ “Ի խափ տալ„ է պարզապէս նաեւ արդի հայ գեղացւոյն կաթը կարգաւ գիւղի տներու “խապ„ տալն (փոխ տալ)։ Արաբացին չէ հասկցած այս կէտն, այլ “խաբ„ իմաստով առած, ուստի փոխադրած غش (խաբել, խարդախել։)

Բաւական է այսչափն ալ ապացոյցներու այն հարուստ ատաղձէն, զոր հաւաքած է հայագէտը, որուն ապացուցութիւնն՝ ինչպէս ըսինք,

լիովին համոզիչ է։ Ապացոյց հաւաքել դիւրին էր նաեւ այնու որ արաբականին թարգմանիչը շատ տեղ այնպէս բառական թարգմանութիւն մ՚ըրած է որ նաեւ անով տեղ տեղ իմաստը մթագնած։ Ցանցառ չեն նաեւ հայերէն բառեր անփոփոխ պահուած, որոնցմէ շարք մը յառաջ կը բերէ հայագէտն (տես § 46), այսպէս "ուրուր" (արաբ. الرورو, թիւ 53.) "վարազ" (براز թիւ 61), "գանձ" (كنز, թիւ 141), աւելի եւս նշմական բառերն "քարոզ, քարոզել, քահանայ" եւն. "սպիտակացուցանեն զերեսս" (ՄԳ.) այնպէս թարգմանուած է որ բաց ի բուն արաբ բառէն հայ "սպիտակ" ալ պահուած է (بياض الاسبيداج), եւ նմաններ։ Միւս կողմանէ արաբացին ճարպիկ թարգման մըն է, որ դժուարին տեղերը դիւրին ելք մը կը գտնէ մերձաւոր բան մը գրելով. այսպէս երբ "սիրամարգ"ի տեղ կը թարգմանէ "թռչուն ծաղկեալ" (Թիւ 97), "գամփռ"ի տեղ պարզ "շուն". "կոյս հաւատաւոր" (ԼԲ.) իրեն համար սոսկ "աղջիկ" է (Թիւ 99). "եկեղեցապան"ը՝ պարզ "ծառայ" (Թ. 154) եւ նմաններ. որով զարմանալու չէ, երբ արծուին՝ որ իւր որսը կը պահէր ծառերու վրայ "եւ ի բարձր վէմս" (ՃԺԳ.)՝ արաբացւոյն քով՝ "բարձր մնարէի" վրայ կը պահէ նոյնը (Թիւ 156)։ Հայագէտը շատ մանրամասն քննութեան առած է այս ամէն կէտերը, նաեւ այն երեք առակներն որ արաբականին յատուկ են (§ 50—2), արաբացւոյն յատուկ ընթերցուածները՝ լաւ կամ գէշ (§ 53—4), այս վերջինքս

այնու մանաւանդ կարեւոր, վասն զի յաճախ այսպիսի ընթերցուածներէ կրնայ գտնուիլ թէ ինչպիսի հայ օրինակ մ'առջեւն ունէր թարգմանելու ատեն։ Այսչափ Աղուեսագրքին մասին։

## 2.

«**Առակք Մխիթարայ եւ Վարդանեան ժողովածոյք**» է խորագիրն երկրորդ գլխուն, որ ամբողջ նուիրուած է Գօշի առակաց եւ Վարդանեան ժողովածոյից փոփոխ աղերսը քննելու. (§§ 55—89,) եւ արդէն կարեւոր խնդիր մըն է Աղուեսագրոց եւ Մխիթարայ առակաց շօշափման կէտերը պարզել։ Գօշի առակներն, որ այլ եւայլ անգամ (Վենետ. 1790, 1842, 1852) լոյս տեսած են, չհաշուելով մանր քաղուածքները, այսպէս 18 առածներ Լազարեան ճեմարանի աշակերտաց համար հրատարակուած «Ընտիր հատուածք» եւն գրոց մէջ,(Մոսկ. 1849, էջ 12—8։) Հնոց քով յատկապէս Կիրակոս Գանձակեցի յաճախ կը յիշէ զՄխիթար Գօշ[1], եւ անոր գրութեանց մասին կը գրէ հետեւեալը. (տպ. Վենետ. 1865, էջ 115, տպ. Մոսկ. 1858, էջ 129) «Եթող նա յարձան եւ յիշատակ գերեզմանի գիրս իմաստախոհս՝ յօգուտ իմաստասիրաց, համառօտ մարգարէութեանն

---

[1] «Գօշ» մականուան մեկնութիւնը կու տայ արդէն Կիրակոս (տպ. Վենետ. 114—15) թէ «այսպէս կոչէին զնա մականուամբ, զի նօսրագոյն էին ալէք նորա», ուստի Հայագէտը (էջ 66 Ծան.) կը համեմատէ «գօշ» — كوسه։ Ուրիշները «Գօշ» եւ «Քաջ» շփոթած են իրարու։

Երեմիայ՝ գեղեցկագիր կարգօք, եւ սուղ ինչ կանոնս վասն սպասաւորելոյ մարմնոյ եւ արեան Տեառն, թէ որպէս պատշաճ իցէ կամ որպիսի կարգօք, եւ գիրք մի Ողբ ի վերայ բնութեանս՝ ի դիմաց Եւայի՝ առ դստերս նորա. եւ գիրք մի Յայտարարութիւն ուղղափառ հաւատոյ՝ ընդդէմ ամենայն հերձուածոց, ի խնդրոյ մեծ զօրավարին Զաքարէի եւ եղբօր իւրոյ. եւ այլ թուղթս խրատականս: Եւ եղեւ վախճան նորա ի վեցհարիւր վաթսուն եւ երկու թուին„ (= 1213:) Ինչպէս կը տեսնուի Առակք յայտնապէս յիշուած չեն. միայն ուրիշ տեղ մը (տպ. Վենետ. 106, Մոսկ. 121) կ'ըսուի որ "ցանկացաւ նա հմուտ լինել գրոց սրբոց եւ Առակաց խորհրդոց որ կան ի նոսա„ որ նախընթաց "թուղթս խրատականս„ բառերուն հետ՝ կրնայ առնուիլ Գոշի առակներու հաւաքում մը յօրինելու իմաստով: Ձեռագիրք ալ իրեն կ'ընծայեն. այսպէս Վենետկոյ թ. 1091 Նոտրգիր ԺԷ. դարէն, Վիեննայի թ. 29՝ ՌՃՂԵ (= 1746ին), Էջմիածնի թ. 2 Նոտրգիր 1777ին գրուած, Վիեննայի թ. 379 օրինակուած 1785ին, որոնց մէջ խորագիրն է մերձաւորապէս՝ "Առակք առասպելականք եւ բարոյականք որ կերպարանեն զճշմարտութիւն, ասացեալ մեծ վարդապետի Մխիթարայ մականուն Գոշ:„ Բայց ինչպէս կը տեսնուի՝ նոր ձեռագիրներ են առհասարակ, նաեւ Վենետկոյ յիշեալ թ. 1091 Ոսկեփորիկն[1]. (տես ասոնց մասին § 58:) Ուստի

[1] Ձեռագիրս ունի՝ "Բանք իմաստասիրաց„, Առակք Ողիմպիանու (էջ 46—59), յետոյ Առակք Գոշի (էջ 59 եւն.)

բնական է որ հայագէտը մեծ մոպդրութիւն դարձուցած է (հմմտ. § 59) ձեռագրի մ'որ ըստ երեւութին գոչի առակաց մէկ մասին ուրիշ հեղինակ մը կ'անուանէ՝ զՅովհաննէս Ծործորեցի (իբր 1250—1326։) Այս ձեռագիրն է Էջմիածնի ութածալ բոլորգիր մէկ քարոզգիրքն ("Մայր Ցուցակ"[1] Թ. 2238) որ ունի "Առակք ստեղծականք պիտանիք առնուլ ի զրուցատրութիւնս եւ յասացուածս։ Արարեալ Յովհաննու Ծործորեցւոյ", որուն իբր 30 առակները համեմատելի են Մխիթարայ առակաց հետ (Թիւք 161—190։) Որչափ ալ մթին ու շփոթ երեւան յիշատակարանքն[2] այս հաւաքման, ըստ երեւու-

յթող (էջ 233—280) "Այլեւայլ բանք պիտանիք եւ անպիտանք, յորս կան եւ բառք եւ բանք պարսկերէն եւ յայլեւայլ լեզուս եւ բարոյական առածք ճուղայեցերէն եւ զանազան պատմութիւնք եւ հոգեւորք"։ Բարոյական առածքն ծանօթութեան մը համեմատ՝ (էջ 246) են "ի դպրոցին Բարե-Խորգմանեցւոյ Յակոբ վարդապետի յաւրինակէ։" Ասոնց եւ Առակաց հաւաքմանց նոյն կտորները նշանակած է հայագէտը։ Մխիթարայ մեր ձեռագրաց մասին՝ տես "Ցուցակ" 165—66, 830—31 եւ 1118։

[1] Տպ. Տփղ. 1863, էջ 224։ Ցուցակագրողն իբրեւ հինգերորդ նիւթ կը դնէ "բանք ինչ Վարդան վարդապետի" եւ վեցերորդ՝ "Առակք Յօհան Ծործորեցւոյն", եւ կ'ըսէ թէ ձեռագիրն "չունի զյիշատակարան։"

[2] Մանրամասն տես էջ 70—72 (§ 59.) Առակաց վերջը կ'ըսուի՝ ա) "Եւ զվերջացեալս ի բարեաց գործոց զտարտամ Տէրէնց զՅովհ. ծանօթ բանի եւ տեղեաւ Խղնկոյ, իսկ այժմ Ծործորեցւոյ։ Ի Թվականիս փրկչին ՌՅԺԶ (= 1316)։ բ) Եւ զպիտակ պէտս Գրիգոր վերջին գծօղ յիշեալ աղաչեմ։" Յետոյ՝ անջրպետէ մ'ետքը՝ ա) "Իսկ ըստ Հայոց ԻՉԽԳ (= 1294) աւարտ եղեւ գիրքս։ — բ) Փառք...։ Համարձակեցայ յանդգնաբար, եւ գրեցի զփոքրիկ ձեռագիրս։ Ի սկիզբն եգաւ գրոյս գրուակ մի քարոզ, եւ գրուակ մի յառաքելա-

*թին կրնայ, կ'ըսէ Հայագէտն, հետեւցուիլ անոնց-մէ որ Նախ Յովհ. Ծործորեցի 1316ին գրած էր առակներ՝ որ այժմ Մխիթարայ կը տրուին, առանց մատնանիշ ընելու հեղինակը. երկրորդ՝ գրիչ մը Գրիգոր անուն, յետոյ հաւաքածոյ մը կազմած է այլեւայլ խրատական իրաց եւ մէջն առած Ծործորեցւոյ հաւաքումն ալ անոր յիշատակարանովն. երրորդ՝ ձեռագիրը վերանորոգած է Խաչատուր ոմն 1709ին։ Անշուշտ այս մոքով հասկընալու է յիշատակարանները, եւ դժուարաւ Ծործորեցին բուն հեղինակ այն առակաց, որուն դէմ կրնան այլեւայլ առարկութիւններ հանուիլ. (տես § 61։) Ուստի առ այժմ մնալով հնոյն վրայ, բան մը միայն ապահով է, այն՝ որ այն առակները 1316էն ետքը չեն, ըլլայ հեղինակը Մխիթար, ըլլայ Ծործորեցի։ Աւելի կարեւոր է Գոշի առակաց աղբիւրներուն քննութիւնն, որոնք կրկին են, այսինքն "Բարոյախօս" եւ Եսովպեան առակները. (տես § 62։)*

*Կարեւորագոյն խնդիրն է ճշգրտել այն աղերսն որ կայ այս Առակաց եւ "Վարդանեան"*

---

*կանեւ. հայրապետադիր կանոնաց եւ մասն ինչ վկայութեանց սուրբ գրոց, եւ յայլ օգտակար եւ պիտանի բանից վարդապետաց։" գ) "Այս քանի մի բանքս եղծեալ կայր ի գրոյս ընդ իմացմամբ բանիւք յայտ բերաք Նոր Ջրեցու+, ընթերձողք գրոյս յիշեսջիք զմեզ տառապեալ Խաչատուր բանի սպասաւոր։ ՌՃԾԸ. դրեցաք" (— 1709)։ — Մեր գնելով ա—գ բաժանմանց՝ զոր աւելցուցինք, կրնայ խառնակութիւնը պարզիլ՝ երեք կարգի եւ անձի յիշատակարանքը զատելով։ Ծործորեցւոյն համար երկու թուական կը մնայ մին 1316 գրելու տարին, միւսն 1294՝ երբ "աւարտ եղեւ գիրքս", կարելի է թէ առակաց հաւաքման գործը։*

առակաց Հաւաքմանց մէջ. խնդիր մ՚որուն բազմակողմանի քննութեան կը նուիրէ մնացեալ բոլոր հատածներն այս երկրորդ գլխուն. (§§ 63—87։) Համեմատական տախտակ մը (§ 63) կը ցուցընէ որ Մխիթարայ իբր 30 առակներ կը գտնուին նոյնութեամբ Վարդանեան Հաւաքմանց մէջ, սակայն մեծագոյն մասը՝ Վարդանայ անուամբ այն Հաւաքման մէջ, զոր հայագէտը Br. համառօտութեամբ կը նշանակէ (= Բերլինի Ms. or. Minut. 273, հայ բնագիրը տես հայագիտիս գործոյն մէջ՝ գ, 97 եւն.) քանի մը բան ալ միւսներուն մէջ, այսպէս՝ ag (= Աղուեսագիրք, տպ. Ամստ. 1668), B (= Ձեռ. Էջմ. Թիւ 453), D (= Ձեռ. Էջմ. 12) եւն։ Փոփոխ աղերսները որոշելու համար հոս ալ հայագէտն յառաջ կը բերէ ռուս թարգմանութեամբ բազմաթիւ առակներ Մխիթարայ՝ այն ձեւով որ անոնք կը գտնուին ի Br. եւ կը բաղդատէ մէկ կողմանէ Գոշի, միւս կողմանէ միւս օրինակաց հետ, յատկապէս Վենետկոյ Մատենադարանի Թ. 1108 ձեռագրին, համեմատելով եւ թարգմանութեամբ ծանօթացընելով իբր 20 առակներ. (տես §64—83։) Վենետկոյ այս Թ. 1108 ձեռագրին տարբեր ընթերցմունքն յիշեալ իբր 20 առակաց՝ ստիպուած էր հայագէտը հաղորդել ուսումնասիրութեանս մէջ, ուստի դրած է իբր "Յաւելուած" այս Երկրորդ Գլխոյն (էջ 93—95։) Բաց ի այս համեմատական առակներէն Բերլինի ձեռագրին՝ կան տակաւին ուրիշներ ալ Մխիթարայ առակներէն, որոնք համեմատա-

կանն ունին Վարդանեան ուրիշ հաւաքմանց մէջ, (այսպէս Թիւք 13, 58, 89, 100, 121, 122, 123, 164 եւ 183։) Ջասոնք ալ համեմատու-թեան կ'առնու հայագէտն (§ 84 եւն,) եւ ընդ-հանուր խորհրդածութեամբք այս երկու՝ Մխի-թարայ եւ Վարդանեան հաւաքմանց մասին կը կնքէ իւր ուսումնասիրութեանց այս մասն։ Եր-կուքն ալ պատահական փոխառութենէ դուրս ընդհանուր բան մ'ունին իրարու հետ, երկուքն ալ ծնունդ ըլլալով գրական ուղղութեան մ'որ ժողովուրդը կրթել կ'ուզէր առակներով եւ ա-ռասպելներով, երկուքն ալ սերած համանման հոգեշահ-խրատական երկերէ, ունենալով միանգամայն կրկին ընդհանուր աղբիւր՝ վե-րոյիշեալ "Բարուախօսն„ եւ եսովպեան առակ-ները։

### 3.

Երրորդ գլուխն՝ "Ընդարձակ եւ Համառօտ Վարդանեան Հաւաքմունք„ գործոյս ամէնէն ընդ-արձակ բաժիններէն մին է. (§ 90—165)։ Ինչպէս արդէն խորագիրը կը ցուցնէ՝ այս-տեղ ջանացած է հեղինակն մի առ մի պարզել առակաց բազմախուռն հաւաքմանց պէսպէս խմբերն, իւրաքանչիւր ձեռագրի հաւաքման բովանդակութիւնը համեմատելով ազգակից միւս հաւաքմանց հետ, եւ այս վերլուծութեամբ որոշել անոր պատշաճ տեղը այն խմբերուն մէջ։ Անոր համար մի առ մի քննուած կը գտնենք հոս Վարդանեան առակաց բազմաթիւ ձեռա-

գիրներն որ ծանօթ են, իւրաքանչիւր տեղ զետեղելով համեմատական տախտակ մը՝ ուր նշանակուած կը տեսնուի նոյն ձեռագրին բովանդակած առակներն եւ անոնց համապատասխանող թուերը միւս խմբերու մէջ. (այս գլխոյ մէջ կան՝ Տախտակք Գ—Ի։) Մեզի անհնար է այս անթիւ մանրամասնութեանց մէջ մտնել. ուստի կը շատանանք նշանակելով գլխաւորաբար ձեռագիրները։

Մանրակրկիտ հետազօտութեանցս առաջին մասը (§§ 90—109) կը սկսի դարձեալ Աղուեսագրքով եւ Վարդանայ առակաց այն հաւաքմամբ որ կը գտնուի Պարիսի ձեռագրաց մէջ։ Առաջինը կը նշանակուի ag համառօտութեամբ, երկրորդը V (= Վուլգատա) վասն զի կը համարուի իբր օրինակ սովորական բնագրին Վարդանեան հաւաքմանց։ Երկուքն ալ կը ներկայացընեն "Վարդանեան" հաւաքմանց մէկ ցեղի երկու տարբեր ձեւեր։ Մանրամասն յառաջ բերուած կը գտնենք Աղուեսագրոց բոլոր տպագրութիւններն[1] (§ 91)։ Այսչափ տպա-

[1] Առաջին տպագրութիւնն՝ "Գիրք աշխարհաց եւ առասպելաբանութեանց որ է Աղուեսագիրք . . . ՅԱմսթելօտամում" 1668—1669 (սկսած 1668 հոկտ. 1 եւ աւարտած 1669 յունուար 20) կը պարունակէ Խորենացւոյ Աշխարհագրութիւնն (էջ 3—65), Մղոնացոյց եւն (էջ 65—88) եւ Աղուեսագիրք (էջ 1—211) եւ ցանկ։ Ընդհանրապէս նոյնպէս են միւսներն ալ. այսպէս՝ երկրորդն Մարսէյլ 1676, երրորդն՝ Մարսէյլ 1683 (էջ 83—276 "Գիրք առասպելաբանութեանց որ ասի Աղուեսագիրք արարեալ սակս խրատու եւ զգուշութեան"). չորրորդը տպուած բուն Լիվոռնոյ 1698, բայց այսպիսի ճակատով՝ "Գիրք աշխարհաց

գրութեանց հանդէպ յեռագէր „Աղուեսագիրք„, այսինքն առակաց ճիշդ նոյն հաւաքումն՝ ցայսօր միայն մէկ հատ ծանօթ է. այն է մեր Մատ. Թիւ 31, խորագրովս՝ „Գիրք առակաց արարեալ սակս խրատու եւ զգուշութեան„. ուստի բնական է որ աստ բովանդակութիւնը վերլուծած է հեղինակը (§ 92)։ Հաւաքածոյն թերի է, վասն զի մինչեւ ՃԺԴ առակ կը հասնի. այլուստ այնչափ մեծ է համաձայնութիւնն որ ուրիշ տեղ մը[1] կասկած յայտնեցինք թէ մի գուցէ տպագրէն օրինակուած ըլլայ։ Միւս կողմանէ ալ Vի կամ „Հաւաքման առակաց Վարդանայ„ ցայժմ նոյնպէս միակ ձեռագիր մը ծանօթ էր, այն է Պարիսի Ազգ. Մատենադարանի մէկ օրինակը (anc. fonds Nr. 135), ինչպէս յիշատակարանէն կը տեսնուի՝ ՌԿԴ (= 1615) տարին գրուած Խուռնաւիլցի Պետրոս երիցուէն։[2] Ասկէ եղած է

---

եւ առասպելաբանութեանց որ է աղուէսագիրք. ի Ս. Էջմիածին՝ Եբեփոյ Հորդոպերէ„ եւն։ Մանրամասնութիւնք կը թողունք յիշել։

[1] Տես „Ցուցակ„, էջ 179 (Թ. 31, Թղ. 107–178)։

[2] Յիշատակարանը տես Հայագիտիս քով (էջ 104), ուր ի միջի այլոց կ'ըսուի՝ „Արդ գրեցաւ Առակաց գիրքս ... զի ասացեալ է սայ առն աստուածայնանի եւ տիեզերայհռչակ եռայմեծին ... քաջ փաղերային Վարդանայ ... յիշեսջիք ի մաքրայփայլ աղաւթս ձեր զանարժան Պետրոս երէցս զԽուռնաւիլցի, որ զառակաց գիրքս գրեցի, գրեցաւ գրկունքս ի թվին ՌԿԴ. աւգոստոս ամսոյս Զ, աւրն Եշքի։ ... Ես անարժան Պետրոս էրեցս յոյժ աշխատեցայ այսմ տառիս, որ գրեցի յայրի ատենիս բաղձանքս շատ էր աղքատիս։ Դարձեալ յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զՄրապիոն արհեպիսկոպոսն որ զառակաց գիրքս գրել երետ„ եւն։ Վերջը կցուած է՝ „Արդ ես

այն մասնական. հրատարակութիւնն 45 առակաց՝ հանդերձ գաղղիերէն թարգմանութեամբ, չհաշուելով նաեւ մասնաւոր առակներու հրատարակութիւնն այլեւայլ տեղեր եւ առոնց մասին եղած այլեւայլ գրուածքները։[1] Այժմ հայագէտը կը նշանակէ ճիշդ նոյն կարգի «Հաւաքման առակաց Վարդանայ» (= V) երկրորդ օրինակ մ'ալ, այն է Վենետիկոյ Թ. 1194, զոր ծանօթ հնագէտն Պր Ս. Ալիշան 1872ին գնած է ի Կ. Պոլիս, նոտրգիր (տես § 95)։ Արդ այժմ եթէ համեմատենք առակաց թուերն մէկ կողմանէ Աղուեսագրոց, միւս կողմանէ «Հաւաքման Վարդանայ» Պարիսի ձեռագրին հետ, կը տեսնենք կրկին երեւոյթներս. նախ կան Աղուեսագրոց առակներ, որ կը պակսին Պարիսի ձեռագրի հաւաքման մէջ, ընդհակառակն Պարիսի «Հաւա-

---

Սրապիոն եպիսկոպոս զկարգ հայրապետութեան յանձս առի թուլին ՌԿԴ. տեառն իմոյ Տէր Յովհաննէս կաթուղիկոսէն» եւն։

[1] Մանրամասն յառաջ կը բերէ հայագէտն, տես § 94 լիովին։ Կարեւորն է՝ «Հատընտիր Առակք Վարդանայ», Choix de Fables de Vartan en arménien et en français ed. St. Martin. Paris 1825։ Այս առթիւ գրուածներէն յիշուին՝ Neumannի յօդուածն ի Jahrbücher für wissenschaftliche Kritik, 1829, II, 358—360. դարձեալ հմմտ. K. L. Roth, Die Aesopische Fabel in Asien, ի թերթին «Philologus», VIII, 1853, էջ 133 եւն։ Առանձին առակներ յաճախ լոյս տեսած են ի «Բազմավէպ» (տես 1847, էջ 342. անդ՝ 1848, էջ 250. անդ՝ 1855, էջ 38, 206, 278, 344. անդ՝ 1856, էջ 38, 68. անդ՝ 1861, էջ 25. անդ՝ 1877, էջ 61. անդ՝ 1883, էջ 345. անդ՝ 1887, էջ 133, 196, եւն) շարք մ'ալ Հ. Ղ. Յովհաննեանի «Հետազօտութեանց» մէջ (Բ, էջ 278–292. հմմտ. «Հանդէս Ամս.» 1890, էջ 251–253)։

քումն Վարդանայ„ ունի բազմաթիւ առակներ ալ որ չկան Աղուեսագրոց մէջ. այնպէս որ յատուկ այս Նպատակաւ յօրինուած Տախտակ մը կը ներկայացընէ 67 առակ աւելի Պարիսի Հաւաքման մէջ (տես § 96—101. յատկապէս՝ Տխտ. Դ)։ Բնականապէս այս ամէնը նոյն Հաւաքման նախնական վիճակին չէր վերաբերեր, ուստի զանազանելու է հիմնական եւ կողմնական տարերքն, եւ ներկայ կամ անագան վիճակն՝ հնէն, հնագունէն եւ աւելի եւս նախնականէն, միւս կողմանէ աչքի առջեւ ունենալով երկուքին (ag եւ V) ալ ներկայ վիճակին բաղդատութիւնը. (յատուկ բաղդատական տախտակ մը տես էջ 116—117, Տխտ. Ե)։ Այս եւ յաջորդող ուրիշ համեմատութեանց արդիւնքն այն է որ՝ ինչպէս ըսինք՝ թէ Աղուեսագիրքն եւ թէ Վարդանեան հաւաքման "Սովորականը„ (V) երկու խմբեր են առակաց հաւաքմանց։

Մնացեալ բոլոր հաւաքմունքն ալ, որոնք դարձեալ բազմաթիւ խմբերու կը վերաբերին, կրնանք երկու գլխաւոր տեսակի բաժնել, ընդարձակ հաւաքմունք (տես § 110—147) եւ համառօտ հաւաքմունք (§ 148—159)։ Ընդարձակներուն կարգէն են ի հարկէ նաեւ վերոյիշեալները, յատկապէս Սովորական յօրջօրջուածը (V)։ Վերջինս երկու խմբագրութեամբ ալ կայ, մին հնագոյն (I)՝ Էջմիածնի ձեռագրի մը համեմատ, միւսը նորագոյն (յիշեալ V), զորոնք երկարօրէն իրարու համեմատած է հայագէտն եւ անոնց պէսպէս յատկու-

թիւնքն որոշած, (համեմատական տախտակ մը՝ էջ 120—121. Տխտ. Զ) բազմաթիւ առակներ ալ թարգմանաբար յառաջ բերելով, վերլուծելով յատուկ մասունքն Սովորականին կամ Պարիսեան ձեռագրին եւ Աղուեսագրոց. որոշելով այլեւայլ խմբեր հաւաքմանց (β, γ եւն, տես § 110—124)։ Ընդարձակներու կարգէն է Էջմիածնի մատենադարանի մէկ ձեռագիրը՝ նորոգուած ՌՃԽԳ (= 1694) թուին Դաւիթ Ղրիմեցիէն, պարունակելով "Պատարագի մեկնութիւն", "Աշխարհացոյց", "Քաղաքաց մեկնութիւնք", "Բառգիրք", եւ "Առակք Վարդան վարդապետի", ինչպէս նաեւ "Խրատք Խիկարայ իմաստնոյ" եւ "Հարանց վարք"։ Այս ձեռագիրն՝ զոր հայագէտը G համառօտութեամբ կը նշանակէ, Աղուեսագրքին հետ ունի 28 հատ ալ նոր թուեր այս խորագրով՝ "Գիրք առակաց ասացեալ սուրբ վարդապետին Վարդանայ ի պէտս հոգոյ եւ մարմնոյ, զոր ժողովեալ գրեցի Մեղաւորս Վարդան ի Զօրն Մանկանց առ հոգեւոր որդեակս իմ...։ Ամենայն աստուածեղէն գիրք առակաւ եւ աւրինակաւ ցուցընեն մեզ զբարին եւ զչարն." եւն (տես § 125, եւ համեմատութիւն Gի այն 29 կտորներուն ընդ V եւ ABD՝ Տխտկ. Թ)։ Նոյն կարգի (Gի համանման) հաւաքում մըն է՝ զոր կը ներկայացընէ մեր Մատենադարանի Թ. 146 ձեռագիրը, 1473ին գրուած Երուսաղէմ՝ Աւետիք անուն եպիսկոպոսէ մը, ճիշդ նախընթացին համաձայն խորագրով մ'ալ.[1]

---

1 Ձեռագրիս մասին տես նաեւ "Ցուցակ" էջ 448–

(տես § 126, եւ Համեմատական Տխտ. Ժ)։ Էջմիածնի ուրիշ մէկ ձեռագիրը՝ Թ. 453, զոր Հայագէտը B Համառօտութեամբ կը նշանակէ եւ որ այլուր ցուցակագրած է,[2] գրուած է ՌՀԷ (= 1628) տարին Լեհաստան, գրչութեամբ Բասլի եւ երեք աշակերտաց։ Ասոր եւ իւր պարունակութեան մասին շատ ընդարձակ կը խօսի Հայագէտը (տես § 127—135, եւ Տխտ. ԺԱ, խմբագրութիւն δ եւն)։ Կը մնան երկու ուրիշ օրինակ ալ ընդարձակ խմբագրութեանց կարգէն, զորոնք Հայագէտը D եւ W Համառօտութեամբք կը նշանակէ։ Առաջինը կը գտնուի Էջմիածնի Թ. 12 ձեռագրին մէջ, որ ՌՃԺԸ (= 1669) թուին գրուած է Սարգիս երիցուէն Ստեփաննոս վարդապետի համար[1] (տես § 136—140)։ Երկրորդն որ համացեղ է, կը գտնուի մեր մատենադարանին վերը յիշուած Թ. 146 ձեռագրին մէջ, վերոյիշեալ Վարդանայ առակներէն յառաջ՝ Առակագիրք մը 141

449։ Թղ. 204բ—240բ. կը գտնուի "Գիրք առակաց Սողոմոնի (°). ասացեալ սուրբ վարդապետին Վարդանայ ... զոր ժողովեալ գրեցի մեղաւորս Վարդան ի Ջորա միաբանանցդ եւն։

1 Տես գործոյս Յաւելուածները, Հատ. Գ, 17—19։

2 Ցիշատակարանը տես էջ 140. "Արդ յիշեցէք զՀեզահոգի դեռաբոյս Նորաբողբոջ զՍտեփաննոս վարդապետն, որ ետ գրել վասն խրատու ժողովրդեան, որ առաւել պիտանի եղէն առ ի մարդիկ շահելոյ ...։ Թվ. ՌՃԺԸ. օգոստոսի ԺԳ։ Զմեղսամած Սարգիս երէց յիշեցէք ի Տէր զգծող սորա, եւն։ Հաւաքման խորագիրն է՝ "Խրատք գեղեցկայարմարք եւ առակաւոր բանիւք ասացեալ իմաստնոց ... զոր ի բազում այլեւայլ օրինակաց ժողովեալ եդա-տառք։"

կտորներով։[1] Շատ մանրամասն քննութեան առած է Հայագէտն այս վերջինը կամ W, յատկապէս ընդարձակ տախտակաւ մը ներկայացընելով հաւաքմանս բոլոր՝ թուով 141՝ առակներն եւ համեմատելով թէ Աղուեսագրոց եւ թէ Վարդանայ "Սովորականին„ համապատասխանող կտորներուն հետ. (տես § 141—144, Տխտ. ԺԳ՝ էջ 143—146։) Ասկէ կը տեսնուի որ Wի մէջ բազմաթիւ կտորներ կան՝ իբր 38 թուով՝ որ յիշեալ երկուքին մէջ ալ կը պակսին։ Անդրագոյն համեմատութիւններ յիշեալ խմբերուն եւ յատուկ հատած մը "Աղուեսագիրք„ յորջորջման մասին (§ 147) կը փակեն հետազօտութեանց այս մասը։

Ընդարձակներուն դէմ կայ բաւական թուով խումբ մ'ալ Համառօտ հաւաքմանց առակներու. (տես § 148—159։) Առաջինն է նոյն իսկ այն համառօտ հաւաքումն զոր վերն առիթ ունեցանք յիշելու (Br.), Բերլինի մէկ ձեռագիրն՝[2] 1614ին գրուած, պարունակելով Բառագիրք եւն, եւ ի վերջոյ (Թղ. 100—112) "Վարդան վարդապետի ասացեալ Առակք բարոյախօսք„, 65 կտոր բան՝ զոր ասկէ առած առանձինն հրատարակած է Հայագէտն իւր գործին յաւելուածներուն մէջ (Հտր. Գ, 97—110)։ Այս հաւաքումն կապ ունի նաեւ Գոշի,

---

[1] Թ. 146, Թղ. 107ա—240բ։ Տես նաեւ "Ցուցակ„, էջ 448։

[2] Ms. or. Minut. 273. Քարամեանցի Ցուցակի Թ. 80 (տես N. Karamianz, Verzeichnis der Arm. Hss. Berlin 1888, p. 62—63)։

Ողիմպիանու, Առակաց Իմաստասիրաց եւն հաւաքմանց հետ, ուստի բնական է որ մանրամասն քննութեան արժանի է. (տես § 149—153։)

Համառօտ խմբագրութեանց կարգէն են դարձեալ երկու ձեռագիրք, ընդհանրապէս 41 առակներով, զորոնք հայագէտը C եւ C² համառօտութեամբք կը նշանակէ։ Ասոնց առաջինն է Էջմիածնի Թ. 1684 ձեռագիրն, երկրորդը նոյն գրատան Թ. 1711, որուն մանրամասն ցուցակագրութիւնն ալ յօրինած է հայագէտն ուրիշ տեղ մը,[1] երկուքն ալ ունենալով "Խաւսք իմաստասիրաց„ խորագրով հաւաքում մը. (տես § 154—155։)

Թէ ասոնցմէ դուրս ալ կրնան գտնուիլ եւ կը գտնուին հաւաքումներ, մանաւանդ քաղուածոյքներ այլեւայլ առակներու, բնական է ենթադրել։ Այս կարգէն է՝ օրինակի համար՝ մեր Մատենադարանին Թ. 174 ձեռագրին[2] փոքրիկ քաղուածոյն 12 կտորով (Թղ. 180—181, 183—185), որ յայտնապէս քաղուած են ընդարձակ հաւաքմանց որեւէ անծանօթ խմբագրութենէ մը (§ 157)։ Էջմիածնի ուրիշ մէկ ձեռագիրը՝ Թ. 2189 ("Մայր Ցուցակ„ Թ. 2146) Նոտրգիր ձեռագիր մըն է 1617ին գրուած, որ ի միջի այլոց՝ ունի "Գիրք առակաց ասացեալ վարդապետին Վարդանայ ի պէտս հոգւոյ եւ մարմնոյ պիտանի„ եւն։ Այս հաւաքումը, զոր

---

[1] Տես Հար. Գ, 47–94։

[2] Ձեռագիրս գրուած է 1674էն շատ յառաջ. տես "Ցուցակ„ 489—492, յատկապէս՝ 491բ։

հայագէտն A կը նշանակէ, քաղուածք մըն է ընդարձակ եւ անագանագոյն հաւաքմանէ մը. (տես § 158։) Նոյնպէս հաւաքածոյ մըն է «Բանք առակաւորք» Վենետկոյ Թ. 1493 ձեռագրին մէջ, ուր կան Մխիթարայ առակներն ալ, եւ յիշատակարան մ'ուր կը խնդրուի յիշել «զանիմաստ ծառայս Ասար Սեբաստացի» (տես § 159։) Ուրիշ նման հաւաքածոյք յետոյ ալ յիշելու առիթ պիտի ըլլայ։

Այսչափ բազմատեսակ հաւաքմունք եւ պէսպէս խմբագրութիւնք բնականապէս ոչ մէկ անձի եւ ոչ մէկ ժամանակի գործ են։ Յատկապէս ընդարձակներուն կազմակերպութիւնն ու զարգանալն եղած է անշուշտ հետզհետէ։ Այս զարգացման ակնյայտնի նշան են ի միջի այլոց մի եւ նոյն առակաց կրկին թուով եւ ձեւով գտնուիլը (տես § 160)։ Զարգացման ընթացքն լուսաւորելու համար լաւագոյն եւ բաղձալի միջոցներէն մին է ցայժմ ծանօթ բոլոր օրինակներն ու խմբերը աշխարհագրական եւ ժամանակագրական կարգաւ դասաւորել եւ ձեռագրաց իրարու հետ ունեցած կապը ճշգրտել։ Ուղղագրութիւնն, ուղղագրական դրութիւնն ու վրիպակներն անգամ այս մասին յարմար միջոց մըն են՝ ձեռագրի մ'ուրիշին հետ ունեցած կապը որոշելու համար։ Այս կէտն շատ ընդարձակ կերպով քննութեան առած է հայագէտը, մի առ մի բոլոր ձեռագրաց ուղղագրութիւնն ուսումնասիրելով (մանրամասն տես § 162, էջ 164—170)։ Նոյն իսկ այլեւայլ հաւաքմանց պարու-

նակած առակներուն քանակութիւնն աննշան կէտ մը չէ՝ վարդացման ընթացքը ճանչնալու։ Օրինակի համար — 20—30 թուով առակներու հաւաքում մը (*Է) ճիշդ կրկնապատիկ աճելով՝ յառաջ կու գայ Ք խումբ մը 40—60 թուերով (C, C², *Ք, Br.) նոյնը դարձեալ կրկնապատիկ աճելով՝ կ'ունենանք Է խումբ մը 80—120 առակներով (B, *O), եւ դարձեալ վերջինս նոյնպէս կրկնապատիկ աճելով կ'ունենանք Ք խումբ մը 160—240 թուերով (I, V, ag, G, D, W). որմէ՝ ինչպէս կը տեսնուի՝ է նաեւ տպագրեալ “Աղուեսագիրքն„ (տես § 163)։ Այս ամէն տեսակներն ալ “Վարդանեան„ հաւաքմունք կը կոչուին, բայց ի հարկէ ոչ թէ ամէնն ալ Վարդանէն են։ Այս վերջին կէտը կը մնայ քննութեան յաջորդ գլուխներուն։ Աւելի եւս պէտք է զանազանել բազմաթիւ “հոգեշահ„, “խրատական„, “զուարճալի„ եւն հաւաքմունքներն որ կան (տես § 164—165)։

## 4.

“Վարդանեան Առակք„ նիւթ է չորրորդ գլխուն (§§ 166—249), որ կը պարունակէ յատկապէս բազմաթիւ առակներ ռուս թարգմանութեամբ եւ համեմատական դիտողութեամբք։ Միակ Վարդան, որ իրաւամբ առակագիր կը յորջորջուի, մեզի համար է Վարդան Այգեկցի խրատաբան-քարոզիչն, որ իւր ժամանակին մեծ ժողովրդականութիւն վայելած է։ Սակայն մեր հաւաքմանց մէջ որ Վարդանայ անուամբ են եւ

ընդհանրապէս համացեղ յիշատակարանաց մէջ գտնուող միայն այն առակները՝ կրնան Վարդանայ Այգեկցւոյ ըլլալ, որոնք հոգեշահ նկարագիր ունին, յարակից ունենալով խրատներ կամ այսպէս կոչուած բարոյական-յորդորականներ։ Շատ ուրիշներն որ Վարդանեան հաւաքմանց մէջ կը գտնուին, օտար տարրներով կ'երեւան, համահաւասար հետաքրքրական տարրներու հետ։ Այս եկամուտ տարերաց վրայ խօսուեցաւ նախընթացներու մէջ, եւ յատկապէս պիտի խօսուի յաջորդ հինգերորդ գլխով։ Հոս այս գլխուն նիւթ կը մնան մնացեալ առակներն, բաւական մեծ քանակութեամբ, զորոնք յառաջ բերուած կը գտնենք թարգմանութեամբ (§166)։

Իրաց այս վիճակին մէջ՝ անջատելով նաեւ բոլոր եկամուտ կտորները՝ պէտք է զանազանել հաւաքմանց մէջ հիմնական խումբ մը՝ որուն հետ Վարդանայ անունը կարենայ աւելի եւս իրաւամբ կապ մ'ունենալ, եւ յետագայ խաւերը, զարգացմունքն եւն. եւ կարեւոր կէտ մըն էր քննադատութեան ուսումնասիրել այս բաժինը, յատկապէս՝ եկամուտները դուրս հանելէն ետքը՝ մնացեալ կտորներուն քանակութիւնը։ Ահա այս է որ եղած է ներկայ գլխովս։ Յիշեալ մնացորդ կտորները ցրուած կը գտնուին այլեւայլ հաւաքմանց մէջ. սակայն անօգուտ բան էր հոս զանոնք յառաջ բերել փորձել իրենց խմբերով, նոյն իսկ այն պատճառաւ որ շատ կտորներ այլեւայլ խմբերու մէջ կը գըտնուին, ոմանց շատ մը հաւաքմանց մէջ ալ կը

հանդիպինք, ուրիշներու՝ քանի մը խմբերու մէջ, միւսները՝ միայն մէկ տեղ։ Աւելի կրնար թերեւս պատշաճիլ դասաւորել զանոնք իրենց խնդրական-յօրդորականներու նիւթոց կարգաւ, բայց այս ալ անգործադրելի էր։ Ուստի յառաջ բերուած են առակներն այբուբենական կարգաւ (կ'ենթադրուի ռուս թարգմանութեան համեմատ)։

Հոս քննութեան կ'առնուին առակներ թուով 83, ցրուած այլեւայլ Հաւաքմանց մէջ ամէն կողմ, ռուս թարգմանութեամբ յառաջ բերուած, եւ լուսաբանուած այլեւայլ դիտողութեամբք։ Այս ամէնը կը գրաւէ գլխուս գրեթէ բոլոր հատածները (§ 167—248), սկիզբը միայն մնալով ներածական հատածը, զոր տեսանք, եւ վերջն ալ հատ մը վերջաբանական, որ իբր եզրակացութիւն կրնայ նկատուիլ այս համեմատութեանց։

Յիշենք այստեղ քննուած առակները՝ ՄԽԳ.[1] "Անհոգ պարտական" (զոր ունի միայն D.) Ժ՝ "Դրացի եւ լեզուահատ եզն" (ունին V ag BD.) — ՂԸ՝ "Աղքատ եւ հնդկահաւ" (ունին VJ.) ՄԺԴ՝ "Այրի եւ Որդին" (ունին ag BD.) ԾԹ՝ "Ուղտ, Գայլ եւ Աղուէս" (VJ ag B, ուրիշ խմբագրութեամբ CC,[2] արաբերէն թարգմանութեան մէջ հոս "Թօր..." աղուեսու անուան տեղ "Տէմօնէ..." կը կարդանք.) ԺԸ՝

---

1 Առակաց այս թուերը՝ հոս եւ այլուր միշտ՝ կ'ենթադրուի՝ Հայագիտին հրատարակութեան համեմատ են. ուստի տես Հտր. Բ, 383 եւն եւն։

“կողեռն եւ յաւանակ եւ խոզք” (VJ, միւս ձեռագրաց մէջ կայ երեք տարբեր խմբագրութեամբք.) ԿԵ՝ “Զկնորս-գայլ եւ Աղուէս” (VJ ag BD), ՃԳ՝ “Ագռաւ եւ ձագքն” (VJ ag G), ԻԴ Ագռաւ պանիր ի կտուցն եւ Աղուէս” (VJ, եւ չորս ուրիշ խմբագրութիւնք, Ողիմպիանուքով եւն.) ՃԻԸ, ԻԸ, ԼԲ, ՄԲ, ՃԻԵ, ԺԹ, ՑԾԱ, ՃՂ, ԻՋ, ՄԾԸ, ՄԺ, ՁԱ, ՃՂԴ, ՁԲ, ՄԼԳ, ՄԵ, ՄԴ, ՄԽԱ, ԾԸ, ՃԸ, ՄՁԱ, ՄԽԲ (“Թագաւոր եւ ձկունք”, համեմատական “իշխան եւ ձկունք” Բարուախօսի ներմուծելոց մէջ՝ Հտր. Գ, 148—9, եւ Վարդանայ առակաց մէջ՝ ԻԹ, տես Հտր. Գ, 103.) ԼԱ, ՃԼ, ԼԴ, Գ, Ե, ՂՋ, ԼԹա, ՄԼԴ, ՀԸ, ԾԲ, ԿԸ, ՀԴ (“Աղուէս եւ զրեհ” VJ ag BD, ունի նաեւ Br. տես Հտր. Գ. 98 Թիւ՝ Թ.) ՀԳ (“Աղուէս եւ սառն” ըստ VJ agag BD, նոյնը Br. տես Հտ. Գ, 98. Թիւ՝ Ը.) ՃԻԳ, ՃԵ, ԿԲ, ՂԷ, ՂՋ, ԺԳ (երեք խմբագրութեամբ), ՀԹա, ԺԴ (“իմաստուն աւագէշ” ըստ VJ, նոյնը Br. տես Հտր. Գ, 104—5, Թիւ ԼԳ. եւ Բարուախօսի S կամ Սեւանայ ձեռագրին մէջ՝ Հտր. Գ, 148՝ Թ[5].) ՄԾՋ (“իմաստուն դատաւոր” ունի միայն D.) ՂԴ, ՄԳ (“Մկունք սպառազինեալք”՝ միայն D.) ԻԲ, ՃԼԲ, Կ, ՁԴ, ՁՋ (“Արամազդ եւ աւձ” ըստ VJ), ՃԻԴ, Ճ, ՃՁԳ, ՃՂԵ, ՄԼԲ, ՃՀԹ, ՁԵ, ԽԷ, ԽԱ, ՄՀԹ, Ի (“խնամեխաւս աքիս” VJ եւ Br. տես Հտր. Գ, 102 Թիւ ԻԴ,) ԾԴ, ՄԺԹ (“քահանայ եւ մսագործ” ըստ ag ABD), ԾՋ, ՃԷ (“փայտահատք եւ ծառք” ըստ VJ, եւ Br. տես Հտր. Գ,

99 Թիւ ԺԴ.) ՄՀԷ (*միայն* D.) ՃԴ („Եղէգն *եւ ծառք ըստ* VJCC[2]), ՄԿ („Սպանող՝„ *միայն* D.) ՀԷ, ՄՁԷ („Սուրխամահի„ *ձուկն = պարսկ.* سرخماهی *միայն* D.) ՁԷ, ԾԽ („Այր մարդասպան„) *եւ* ՄԼԳբ (*ըստ* Dի:)

*Պէտք չէ սակայն կարծել որ այս ամէն առակները, զոր յիշեցինք, ամբողջովին առնել՝ ներկայացընեն ոչքննական եւ համաժամանակեայ ժող-մոմճ խառն մը Հաւատման Վորքտանոյ. զասոնք ընտրելով Վարդանեան հաւաքմանց մեր օրինակներէն՝ կը ստանանք միայն ինքնական, համացեղ նկարագրական խառն մը, որ սակայն ըստ ամէնայն հաւանականութեան կազմուած է հետզհետէ գումարուելով կուտակուելով: Մեր ձեռքն եղած ատաղձով անհնար է այս հիմնականին զարգացման աստիճանները պարզել մանրամասնութեամբք. իսկ անօգուտ ենթադրութիւններ եւ կարծիքներ յառաջ բերելէն ըստ կարելւոյն հրաժարելու ենք: Մեր ձեռքն եղած նիւթերը հազիւ կը ներեն Վարդանեան հաւաքմանց հիմնական կազմութեան պատմութիւնը նշանակել ընդհանուր գծերով, եւ ասոր պիտի դառնանք.* (§ 249:)

## 5.

*Հինգերորդ գլուխը, որ բաւական ընդարձակ է* (§ 250—311,) *բնականապէս՝ քանի որ նախընթացը նուիրուած էր հիմնական խաւին ուսումնասիրութեան՝ ընծայուած է Մէջ խառներուն՝ եկամուտ տարբերաց հետազօտութեան: Ա-*

սոնք ալ սերտ կապ ունենալով այլեւայլ ինքնագիր ու թարգմանական բազմատեսակ առակաւոր, հոգեշահ, խրատական եւն հաւաքմանց հետ, վերջինքս ալ յատկապէս ուշադրութեան առնուած են։ Եւ որչափ պէսպէս հաւաքումներ, խմբեր ու խմբագրութիւններ կը ներկայացընեն նաեւ այս այլակերպ հաւաքումները, որոնց փոխադարձ յարաբերութիւնքը Վարդանեան հաւաքմանց հետ պարզաբանել կարեւոր կէտ մըն է։ Այս կարգի հաւաքմանց քննութեան նուիրուած է հինգերորդ գլխուն մեծագոյն մասն. (յատկապէս § 252—64։) Այսպիսի հաւաքում մը կայ՝ դժբախտաբար թերակատար՝ Էջմիածնի թ. 2189 ձեռագրին մէջ (թղ. 90ա—95բ) որ գրուած է 1617ին, ինչպէս արդէն վերն յիշուեցաւ։ Հայագէտն այս հաւաքածոյն կը նշանակէ E տառով. (տես § 252։) Նոյն հաւաքումն է նաեւ Էջմիածնի թ. 2281 ձեռագրինն (ըստ "Մայր Ցուցակի„ թ. 2237՝ ԺԶ.—ԺԷ. դարէն), զոր հայագէտը F տառով կընշանակէ, եւ որ նոյնն ունի "ի Բարուախօս գրոց„ խորագրով, (տես § 253։) Երրորդ մը կայ մեր Մատենադարանի թ. 398 ձեռագրին սկիզբը[1], 26 կտոր առակներ, որ մասամբ կան Աղուեսագրոց մէջ եւ մասամբ անոնց կարգէն են, զոր ունի նախընթաց F հաւաքումն. (տես § 254։) Ուրիշ հաւաքում մը 26 կտորով ունի մեր Մատենադարանի թ. 29 ձեռագիրն[2], որ ՌԾԴԵ (=

[1] Տես "Ցուցակ„, 850–51, թիւ 398, թղ. 3ա–18բ։

[2] Տես "Ցուցակ„ էջ 163–174, յատկապէս՝ 166բ։

1746) տարին գրուած՝ կը պարունակէ Բարուախօսի, Գոշի Առակներու հետ Ողիմպիանու առակները (թղ. 57ա եւն) եւ ասոնց կից յիշեալ կտորները (թղ. 61բ—72բ։) Դարձեալ ուրիշ նման հաւաքումն է զոր կը գտնենք մեր Մատենադարանի թ. 260 ձեռագրին մէջ[1] (թղ. 7ա—13բ) այս խորագրով՝ "Գիրք առակաց ասացեալ սուրբ Վարդապետին Վարդանայ ի պէտս հոգւոյ եւ մարմնոյ, զոր ժողովեալ գրեցի մեղաւոր Ներսէս Բաղիշեցի։ Ամենայն աստուածեղէն գիրք առակաւ„ եւն. ուստի սկիզբը համանման անոր զոր գտանք Վարդանեան G հաւաքման (հմմտ. § 125) մէջ, ինչպէս նոյն տեղ նշանակեցինք։ Հաւաքումն թերի է, սակայն կ'երեւայ "Վարդանեան„ հաւաքմանց կարգէն (δ խմբի տեսակէն), ուրոյն խմբագրութեամբ. (տես § 256։) Կ'ենթադրուի այս ամէնուն պարունակութիւնը մանրամասն համեմատած է հայագէտը, եւ այսպէս կը գտնենք ընդարձակ համեմատական տախտակներ պարունակութեան F խմբի (Տախտ. ԻԱ), մեր Մատ. թ. 398 (Տախտ. ԻԲ), թ. 29 (Տախտ. ԻԳ), թ. 260 ձեռագրաց (Տախտ. ԻԴ) եւ նմաններ։ Այս ամէն հաւաքմանց պատմութեան համար ԺԷ.—ԺԸ. դարերուն՝ նշանակութիւն ունի մեր Մատենադարանի թ. 31 ձեռագրին (— որ՝ ինչպէս վերը յիշեցինք, միակ ձեռագիրն է "Աղուեսագրոց„ —) այն հաւաքումն որ այսպիսի խորագիր մ'ունի (թղ. 21բ—107բ) "Առակաւոր

[1] Տես "Ցուցակ„, 663–6, յատկապէս՝ 664։ Ձեռագիրը բաւական հին է, գրուած ՊԿԹ (= 1420) տարին։

Բանք պիտանիք եւ խրատք օգտակարք իմաստնոց„, որ ընդհանուր խորագրին ներքեւ ամփոփուած են 192 "պիտանի„ նիւթեր, առակներ եւ պատմուածքներ։ Ցատկապէս սկզբան 52 կտորներու նիւթը մի առ մի կը ներկայացընէ համեմատական Տխտ. ԻԶ. (51 եւ 52 թուով պատմուածներու նիւթը Շահ-Աբբասի կեանքէն է, որ † 1627—28ին, ուստի ԺԷ. դարէն կանուխ չեն, տես § 259։) Երկու ուրիշ հաւաքմունք կան Բերլինի հայ ձեռագրաց մէջ, մին (Քարամեանցի Թ. 90) ԺԸ. դարէն ձեռագիր մը՝ որ ի միջի այլոց[1] ունի (Թղ. 145—197) "Առակք եւ պատմութիւնք զանազանք ի պէտս քարոզի առ ի դիւրահասութիւն ժողովրդեան„, բազմաթիւ մանր կտորներ, առակներ եւն, զորոնք՝ թուով 37՝ ընդարձակօրէն մի առ մի յառաջ կը բերէ հայագէտը (§ 261). Նոյնպէս երկրորդ հաւաքումն Բերլինի Թ. 95 ձեռագրին[2] մէջ՝ 28 կտորով. (մանրամասն տես § 262։) Վերջապէս նոյն կարգի պիտանեաց հաւաքում մ'ալ ունի Էջմիածնի Թ. 2282 ("Մայր Ցուցակի„ Թ. 2238) ձեռագիրն, այն Քարոզգիրքն զոր

---

[1] Բերլինի Ms. Or. Oct. 282, տես Քարամեանցին "Ցուցակ„ էջ 73։ Սկիզբը (Թղ. 1–140) կայ օրինակութիւն մը տպագրեալ գործոյս՝ "Գիրք պատասխանական սրբոյն Աթանասի Հարցմանց սրբոյն Կիւրղի Երուսաղեմացւոյ„ որուն ծայրը՝ կնիք մը Վարդան տիրացուի 1779 տարեթուով։ – Թղ. 140–4 "Գիրք որ կոչի օրհնութեանց,„ Թղ. 197–203 "Պատմ. Մարիամու Մագդաղենացւոյն„ եւն։

[2] Բերլինի Ms. or. oct. 341, տես Քարամեանց՝ "Ցուցակ„, էջ 77 (IV, 2–3) Թղ. 193–5 եւ 201–233, որմէ յառաջ ու ետքը կան Տաղեր։

վերը (տես § 59) յիշելու առիթ ունեցանք, այս խորագրով՝ "Թանք պիտանիք եւ ոգեշահք ժողովեալ ի սուրբ գրոց առ ի խրատ մարդկան"։ Այս հաւաքումը հայագէտը նշանակած է H տառով, եւ պարունակութիւնը համեմատած՝ հաղորդելով առակ մ'ալ ռուս թարգմանութեամբ. (տես § 263—64։)

Թէ այս ամէն պիտանի հաւաքմունք մեծ նշանակութիւն ունին առակաց հաւաքմանց զարգացման լուսաւորութեան համար, ինքնին կը հետեւի. այնու մանաւանդ որ այսպիսի "հոգեշահ" պատմութեանց եւ առակաց գրողներուն դիտումն էր ընդհանրացընել զանոնք ժողովրդեան մէջ՝ ազգային աշխարհական առասպելներն ու զրոյցները մոռցընել տալու համար։ Այսպէս՝ օրինակի համար՝ Կիրակոս Գանձակեցի կը գրէ[1] թէ "Ներսէս (Շնորհալի) արար եւ տաղս խորհրդաւորս (այլասացիկս) ի գրոց եւ հանելուկս, զի փոխանակ առասպելաց զայն ասասցեն ի գինարբուս եւ ի հարսանիս։" Այս կէտը (տես § 266) կարեւոր է. բայց ոչ նուազ նաեւ այն թէ ո՞րդեօք եւ ի՞նչ ազդեցութիւն եղած է ասոնց վրայ՝ ըլլայ հայ ժողովրդական ըլլայ արեւմտեան եւրոպական։ Ցատկապէս վերջինս տակաւին պարզաբանուած չի համարիր հայագէտը, որովհետեւ մթին կը մնայ թէ ինչ ճամբով եղած է ազդեցութիւնը։ Ուստի միայն պարզ տեղեկութեան համար կը յիշէ Jacobsի կարծիքը[2]

---

1 Տես Վենետ. 1865, էջ 69, տպ. Մոսկ. 1858, էջ 86։
2 Jacobs, the Fables of Aesop, I, 184 ff.

*որ Ռիքարդոսի Առիւծասրտի 1194ին արշաւանքէն դառնալուն պատմած "Մարդ, Առիւծ եւ Օձ" առակին առթիւ կ'ըսէ թէ հոս ըլլալու է թերեւս բանալին յարաբերութեան Բերախեաhի հաւաքման մէջ մէկ կողմանէ եւ "Երեմիա վարդապետի" (— որ թիւրիմացութիւն մըն է՝ ինչպէս ըսուեցաւ —) հայերէն հաւաքման միւս կողմանէ. քանի որ Կիպրոս՝ որ Ռիքարդի թագուհւոյն՝ Բերենգարիայի՝ հայրենիքն է, այն ժամանակ սերտ յարաբերութեան մէջ էր Հայաստանի հետ, եւ Իսահակ Կոմնենոս, Կիպրոսի արքայն՝ զոր Ռիքարդոս վար առաւ, մի եւ նոյն ժամանակ Հայաստանի ալ իշխող եղած էր եւն: Դժուար է մեկնել թէ երբ եւ ինչպէս անցան եւրոպական աղբիւրներէ առակներ Կիպրոսի ճամբով ի Հայս: Եւրոպական-արեւմտեան ազդեցութիւն ուղղակի կրնայ գտնուիլ եւ կը գտնուի այն հայ դրականութեան վրայ որ անմիջաբար Եւրոպա գրուած էր, Եւրոպիոյ հայ վանքերու մէջ, (օրինակի համար Սալեռնոյի Հայտունը գրուած ժողովածոյքն ՉԼԲ = 1283 թուին[1] եւ նմաններ.) բայց յատկապէս առակաց հաւաքմանց համար այս ազդեցութիւնն ուղղակի ըլլալու չէ, այլ խրատականաց եւն հայ թարգմանութիւններէն: Եւ այսպիսի թարգմանութիւններ բաւական կան. այսպէս Պետերբուրգի Ասիական թանգարանի Թ. 7 ձեռագրին մէջ կայ հաւաքում մը խրատականաց լատիններէնէ թարգմանուած. այսպէս երբ Առա-*

[1] Տես Հ. Գ. Գալէմքեարեան "Ցուցակ" Միւնխէնի ձեռագրաց, էջ 10:

քել Դուլրիժեցի (տպ. Էջմ. 1884, էջ 315—16) կը յիշէ Ստեփան Վարդապետի Թարգմանած "բանք առակաւորք„ եւ Նմաննները. (տես § 267։)

Ասկէ ետքը կը մնայ "Վարդանեան առակաց„ հաւաքմանց այս ամէն յետսամուտ խաւերուն բովանդակութեան վերլուծութիւն մ'ընել, զոր մանրամասն ըրած է հայագէտը՝ բազմաթիւ հատածներու մէջ (§ 268—296) դասաւորելով զանոնք աղբերաց, նիւթերու եւն կարգաւ։ Եւ որչափ բազմազան պատկեր մը կը ներկայանայ մեր առջեւ. նիւթեր առնուած Հին ու Նոր կտակարանէ (§ 268—69), վարդապետականք, մեկնողականք ու դպրոցականք, հոգեշահ-խրատականներ, զուարճալիք (§ 270—76), արեւելեան զրոյցներ՝ առակք "Գալիլակ եւ Դիմնակ„ առակագրքէն (§ 277), եսովպեանք (§ 278), "Յովասափու եւ Բարղաամու„ զրուցէն (§ 279), բաց ի այլեւայլ ուրիշ աղբիւրներէ՝ յատկապէս իսլամականներ ալ (§ 282[1]), զրոյցներ Աղեքսանդրի Մակեդոնացւոյ `կեանքէն (§ 285), վճիռներ իմաստնոց ու Ս. Հարց, առածներ ու ասացուածներ, նաեւ Հայ բժշկարաններէ նիւթեր (§ 290), առածներ հայկական կեանքէն եւ ժողովրդական առածներ (§ 292—93), առասպելներ ազգային ծագմամբ (§ 294) եւն եւն։ Այնպէս որ այս վերջին առակները կրնանք հա-

[1] Հայագէտը կը խօսի յատկապէս "Ճուհի„ միմոսի մասին, բազմաթիւ մատենախօսական տեղեկութիւններ ալ հաղորդելով՝ էջ 248 ծան.։

մարիլ կերպով մը նաեւ պատկերացումն միջին-դարեան Հայկական ընտանեկան կենաց. (§ 295։) Ուսումնասիրութեան այս մասը կ'աւարտի "բանք վասն խաբող աղուեսուն եւ չարութեան նորա" ընդարձակ հետաքրքրական առակին[1] յիշատակութեամբն. (§ 296։)

Թէ այս բազմատեսակ նիւթերով մեծաքանակ խմբերը, զորոնք համառօտիւ յիշեցինք (տես Հայագէտին § 270—294,) Վարդանայ չեն վերաբերիր, խնդրոյ տակ չի կրնար ըլլալ. ուստի ասոնք յետսամուտ եւ զարգացմունք են, առակաց հաւաքմանց ճոխացմունք եւն։ Վարդան Այգեկցի, ԺԳ. դարու նշանաւոր քարոզաբանն ու խրատաբանն, իւր առակներն գրած է որոշ ուղղութեամբ եւ բոլորովին ուրիշ աղբիւրներէ քաղելով անոնց նիւթերը. (տես § 298։) Բաց աստի այն բազմաթիւ կտորներուն, որոնք այսօր "Վարդանեան" հաւաքմանց մէջ մտած կուտակուած են, Վարդանայ չըլլալուն այլ օտարամուտ՝ ունինք նաեւ արտաքին նշաններ։ Այս կէտին նկատմամբ ընդարձակ կը խօսի Հայագէտը բազմաթիւ հատածներով (§ 299—310), անջա-

---

[1] Հայագէտը հրատարակած է զայս՝ ռուս թարգմանութեամբ մ'ալ՝ Հտր. Գ, 177–192։ Նախ հրատարակած էր «Բազմավէպ» 1881, էջ 193–8. իտալերէն՝ հանդերձ ներածութեամբ եւ ծանօթութեամբք հայագէտ Է. Տեզայէն ի պարբերականին La Cultura 1882, Nr. 9–10 (հմմտ. "Բզմ." 1882, էջ 308–311։) Ընդարձակ քաղուածք՝ Հ. Ղ. Յովհաննեան "Հետազօտութիւնք" Բ, 323–331. (տես "Հանդէս" 1891, էջ 329–31։)

տելով եւ որոշելով բազմաթիւ խմբեր այսպիսի օտար նիւթերու։ Նախ որ շատերն հաւաքմանց մէջ ալ պահած են իրենց օտարութեան յայտնի նշանն՝ սկսելով այսպիսի բանաձեւերով՝ “տաէ յառաջոյ„, “տաէ է պատմութեանց„ եւ նմաններ, ոմանք յայտնապէս “ասի ի Վարս Հարանց„ եւն (տես մանրամասն § 299—300,) ուրիշները յառաջ կը բերուին վկայութեամբ իմաստնոց, բժշկաց եւն (տես § 301։) Վարդանայ Այգեկցւոյ խրատաբան-քարոզաբանի չըլլալու բացորոշ նշան է նաեւ այն՝ որ շատ առակներու ծայրը կը պակսի յորդորակ-խրատն՝ որ նկարագրական կէտ մըն է Վարդանայ ուղղութեան համար, ուստի ասոնք ալ օտար են. (երկար ցանկ մը՝ տես § 302։) Դոյզն փորձաքար մը չէ նաեւ լեզուի նկարագիրը, զոր կը տեսնենք շատ առակաց վրայ. ոմանք չափազանց ռամկաբան, ուրիշները չափազանց մերձաւոր դասական գրաւոր լեզուի, երկու ծայրեր՝ որոնք ի հարկէ մէկ հեղինակէ մը չեն կրնար ըլլալ։ Ընդարձակօրէն քննութեան առած է հայագէտն ի մասնաւորի առակաց այս լեզուի եւ գրութեան ոճին խնդիրը (§ 303—8,) ճոխ քաղուածք մ՚ալ դնելով օրինակներու ռամկաբանութեանց “Վարդանեան„ առակաց թէ Սովորականին (V) եւ թէ միւս խմբերուն, յատկապէս երկու երկար հատած նուիրելով ռամկաբանութեանց օրինակներ յառաջ բերելու (§ 304—5, էջ 267—78։) Ոճոյ այն մեծ զանազանութիւնն որ կը տեսնուի՝ ըլլայ Սովորականին, ըլլայ միւս խմբերուն

առակաց մէջ, զարմանալի չէ, նկատելով որ այն ամէն հաւաքմունք բազմախուռն նիւթերու անտաշ բաղադրութիւն են միայն. (տես § 306 եւն։) Միւս կողմանէ նաեւ այն ատեն երբ առակի մը կամ առակներու վրայ տեսնենք որ զերծ են որ եւ է ռամկաբանութենէ եւ բոլորովին անպարսաւ գրաւոր լեզուաւ յօրինուած, չենք կրնար այնպէս դիւրաւ ապացոյց համարիլ թէ անոնք ստուգիւ Վարդանայ են. (տես § 309։) Բնականապէս երբ կը գտնենք առակներ ալ, որոնք ժողովրդական ձեւով են (տես Հտր. Բ, 20 եւն), Վարդանայ հետ ամենեւին կապ չեն կրնար ունենալ. (տես § 309։) Միւս կողմանէ թէ անագան հաւաքմունք, եւ թէ հիմնական մասն Վարդանայ՝ միաբան են յայնմ որ կրկին գլխաւոր աղբիւր ունին՝ “Բարոյախօսն„ ու “Եսովպեան„ առակները, (տես § 311։)

## 6.

Վարդան Այգեկցի է վերնագիր վեցերորդ գլխուն, որ ամբողջովին (§ 312—327) նուիրուած է նոյն անձին կենաց եւ գրաւոր գործունէութեան։ Թէ “Վարդան„ մը յօրինող եղած ըլլայ առակաց, այս սովորական էր ընթեռնուլ քիչ շատ ամէն տեղ. բայց թէ ո՞ր Վարդանն է, այս կէտը կը մնար քիչ շատ խնդրական։ ԺԲ. եւ ԺԳ. դարերու ծաղկած են այլեւայլ Վարդաններ, որոնց գրութիւնքն եւ նաեւ կենաց հանգամանքները յաճախ դիւրաւ կը շփո-

թուին իրարու հետ[1]։ Այսու հանդերձ սովորաբար Առակներն ալ կը տրուէին Վարդանայ Մեծի կամ Արեւելցւոյ (այնպէս նաեւ Սէն-Մարտէն։) Հ. Ալիշան՝ Վարդանայ Պատմութեան յառաջաբանին մէջ կը նշանակէ որ զատ է Վարդան Բարձրբերդցի եւ ըստ Ղազարայ Ջահկեցւոյ՝ զատ նաեւ այն "Երկրորդ" Վարդան, որ Առակներ գրած է[2]։ Հ. Ղ. Յովնանեան[3] շեշտած է յատկապէս այն կէտն որ նախ Առակներս մէկ գրչէ չեն, եւ երկրորդ՝ սխալմամբ Վարդանայ կ'ընծայուին, գոնէ Արեւելցին չէ ա-

---

1 Հմմտ. օրինակի համար մեր "Ցուցակ" 1155—56, ուր կը յիշուին "Վարդաններու" բազմաթիւ գործեր, շատերն անորոշ թէ որո՛ւն են. մաս մ'այժմ Հայագէտը կ'որոշէ Այգեկցւոյ տալով։

2 Պատմ. Վարդանայ, տպ. Վենետ. 1862, Յառաջբ. էջ Ա—Բ. "Բայց այս ամենայն կոչմունք պատուականք չեղեն բաւական առ անխառն պահել զգործս եւ զգրուածս նորին ընդ այլոցն. եւ յոլովից յարանուանց վաստակք պիտանի եւ անպէտ՝ միոյս այսմ վերընծայեցան։ Եւ ոչ միայն յիրս եւ ի գիրս, այլ ինձ թուի եւ ի հայրենեացն կոչումն սխալեալ որոց Բարձրբերդցի զնա ասեն. քանզի ոչ ոք ի նախնեաց անտի կոչէ զնա այսպէս. այլ մանաւանդ բանք նոցին ցուցանեն յարեւելից Մեծաց Հայոց լինել զնա, եւ ամս ինչ պանդխտութեամբ կեցեալ ի Հռոմկլայ եւ ո՛չ ի Բարձրբերդ. զայլ ոմն Վարդան Բարձրբերդցի ցուցանելով ժամանակակից նորին կրտսեր, որպէս յիշէ մատենագիծ ոմն յամի 1286, որ է իբր վեշտասան ամաւ յետոյ քան զմահ Մեծիս այսորիկ Վարդանայ († 1271)։ Իսկ զմիւսն զայն զկրսեր՝ Երկրորդ Վարդան կոչէ Ղազար Ջահկեցի կաթուղիկոս, եւ նմա ընծայէ զՀամառօտ Մեկնութիւն չորից աւետարանաց, զԱռակսն, զՀամառօտ Աշխարհագրութիւն, զՄեկնութիւն քերականի, որոց յետինքդ կարծին Երկրորդի ուրումն կրսերագունի Վարդանայ գործք"։

3 "Հետազօտութիւնք", Բ., 286—95։

նոնց հեղինակը: Այժմ Հայազգէտը կու գայ ապացուցանելու որ Վարդան մը ստուգիւ եղած է հեղինակ առակաց հաւաքման մը, կ'ենթադրուի նախնական խաւին. բայց այս Վարդանն է Վարդան Այգեկցի՝ կամ որ նոյն է՝ Մարաղացի, առաջին անգամ այսպէս որոշ գծերով յերեւան հանելով այս Վարդանն եւ իւր գործերն՝ որ յաճախ ընծայուած են ուրիշ Վարդաններու: Այս մասն այնպէս ընդարձակ եւ ճոխ է կենսագրական ու մատենախօսական տեղեկութիւններով Այգեկցւոյ Վարդանայ մասին, որ ստիպուած ենք, միայն կարեւորագոյնները կարելւոյն չափ համառօտիւ յիշելով ալ, աւելի ընդարձակ բռնել:

Ներածութենէ մ'ետքն ուր յառաջ կը բերուին առակախօս "Վարդանայ" եւ "Վարդաններու" մասին եղած կարծիքները (§ 312,) համառօտիւ յիշելով նաեւ այն մեծ համբաւն[1] զոր ունէր Վարդան (§ 313,) կ'անցնի նկարագրել այն ձեռագիր աղբիւրները, որոնք տեղեկութիւններ կը մատակարարեն Վարդանայ Այ-

[1] Հայազգէտը կը յիշէ յիշատակագրի մը սա խօսքը՝ "Ընդ որս մեծ րաբին Վարդան կոչեալ: Այն երջանիկն աստուածարեալ, Որ ի մարմնի հրեշտակացեալ, Եւ աշխարհի քարոզ եղեալ" եւն (ձռգր. Մունխէնի թ. 6, տես Հ. Գ. Գալեմքեարեան՝ "Ցուցակ", էջ 20 ա): Ձեռագիրս գրուած է ՊՀԶ—ՊՁԱ (= 1427—32) թուին յՈւրծայ վանս, սակայն յիշեալ յիշատակարանն գաղափարին ըլլալով աւելի հին է՝ գրուած ըլլալով նախնաբար ի Կիլիկիա Թորոս երիցուէ 1289ին, ինչպէս ուրիշ տեղ մը նշանակեցինք. (տես "Սրբազան Պատարագամատոյցք" եւն, Վիեննա 1898, էջ 85—87):

գեկցւոյ կենաց եւ գրուածոց մասին (§ 314։) Այս ձեռագիր աղբերքն՝ որոնցմէ այնչափ առատ տեղեկութիւններ հաւաքած է հայագէտը, հինգ հատ են։ Նախ Էջմիածնի Թ. 1767 բոլորգիր ձեռագիրն ԺԵ—ԺԶ. դարէ, զոր գործածած է հայագէտն Այգեկցւոյն գրութեանց հրատարակութեան համար (Հտր. Գ, 67 եւն.) ձեռագիրը դժբախտաբար թերցթններ ունի, բայց ուշագրաւ է իւր պարունակածն “Վարդանայ Վարդապետի ասացեալ։„ Հայագէտն այս ձեռագիրը կը նշանակէ O համառօտութեամբ։ Երկրորդն է Էջմիածնի Թ. 1631 (“Մայր Ցուցակ„ Թ. 1593,) զոր այլուր ընդարձակ նկարագրած է հայագէտը (Հտր. Գ, 20—31։) ՋՁԸ (= 1539) թուի գրուած ձեռագիրս ունի ճիշդ սկիզբն (Թղ. 3ա—44բ) “Վարդանայ վարդապետի Այգեկցւոյն՝ յաւրինեալ պարզ բանիւ վասն խորհրդոյ տասն վաճառականաց„, ինչպէս նաեւ Առակներն (հրտ. Հտր. Գ, 67—93։) Վասն զի բացի այն “Ժ. վաճառականաց„ տասն առակներէն՝ կը յայտարարէ Վարդան որ առակներով պիտի ցուցընէ թէ “Ը. մեղքս են արմատ ամենայն անաւրէնութեան, որ են այսոքիկ. Հպարտութիւն, Ոխակալութիւն, Լեզուանութիւն, Որովայնամոլութիւն, Ջրկանք, Շնութիւն, Կախարդութիւն, Անզղջութիւն.„ եւ արդեամբք ասոնց մասին առակներ ալ կրցած է գտնել հայագէտը յիշեալ ձեռագրին եւ ուրիշ ձեռագրաց մէջ։ Երրորդն է Էջմիածնի Թ. 719, որ ըստ “Մայր Ցուցակի„ 1771ին գրուած է,

սակայն արդեւամբք անկէ յառաջ[1]։ “Վարդանգիրք„ մըն է, ինչպէս կը կոչուի յիշատակարանի մէջ, եւ կը ներկայացընէ ԻԳ գլուխ բանից Վարդանայ (Այգեկցւոյ) որոնց առաջինը “Ա. Վասն աղօթից ի պէտս աշխարհի„[2]։ Չորրորդն է Պետերբուրգի Ասիական Թանգարանի մէկ ձեռագիրն (As. Mus., Marr Nr. 5,) զոր ձեռք ձգած էր Հայագէտն յՄրագած կատարած հնախօսական հետախուզութեանց ժամանակ, գրուած 1320ին, եւ կը պարունակէ՝ ի մէջ բազմաթիւ այլոց, զորոնք մի առ մի նկարագրուած կը գտնենք հոս՝[3] նաեւ Վարդանայ երկերը (Թղ. 1ա—33ա

[1] Տես էջ 287 Ծան., ուր Հայագէտը կը նշանակէ թէ ութածալ 89 թղթէ երկսիւն նոտրգիր գրչութեամբ ձեռագիրս յիշատակարան մ'ունի որուն համեմատ գրուած է ի Կ. Պ. անանուն Դպրէ (ձեռ. “Թպիր„) մը “ընդ հովանեաւ„ Ս. Գէորգայ “Հէքիմ Թորոս„ ստացչին համար։ “Մայր Ցուցակ„ կը նշանակէ՝ Թ. 705 “Վարդան վարդապետի՝ խրատական հոգեշահ գիրք նոտրագիր գրեալ ի թղթի ի Բիւզանդեայ ի դպիր գրչէ ի թուին Հայոց ՌՄԹ, 1771, ունի զյիշատակարան։„ Սակայն այս թիւն կազմի թուական կ'երեւայ, ինչպէս կը տեսնուի յաջորդ քիչ մը մթին յիշատակարանէն, որ է բառ առ բառ այսպէս՝ “Գիրք քարոզութեան որ կոչէ զթուականս Հայոց ՌԲՃԻին (= 1771) ի սեպտեմբերի մէկ օրէ սիլիւանու յերկիրն որ ի Որի քաւարս ի խարաքիլիսէ Գիւղս որ է կազմեցաւ ամէն։„

[2] Մանրամասն ցանկը յառաջ բերած է Հայագէտը՝ էջ 287—88։

[3] Ընդարձակ տես էջ 288—90 բաց ի Վարդանայ երկերէն ունի ձեռագիրը 24 կտոր ուրիշ բաներ, ի միջի այլոց “Անանիայի հոգենուագ իմաստասիրի խրատք ոգեշահք զղջման եւ արտասուաց„ (Թղ. 33ա—58բ) Հարցումն Աշոտոյ եւ պատ. Եզնկայ (Թղ. 66–70,) Տեսիլ Ներսէսի (Թղ. 70–80,) Տեսիլ Կողբան (Թղ. 80–93,) “Պատմութիւն Ս. Գրիգորի Հայոց Լուսաւորչի զոր եհարց զհրեշ-

եւ 109բ—177բ, որոնց մասին տես յետոյ,) երկեր այն ժամանակի՝ երբ Վարդան տարագիր ի Տլքոյ՝ անապատ քաշուած էր։ Վերջապէս հինգերորդն է Լազարեան ճեմարանի մէկ ձեռագիրը ԺԵ—ԺԶ. դարէն (թ. 1192 ընդհանուր ցուցակին, ձեռագրաց ցուցակին՝ թ. 83,) որ ունի բազմաթիւ կտորներ (թղ. 22ա—78բ) "Վարդան վարդապետի ասացեալ։„ Հայագէտը մանրամասն յառաջ բերած է դասնք[1]։

---

տակն Տեռան մինչեւ ի յայրին Մանեայ„ (թղ. 194—200,) "Տեսիլ Աթանասի Աղեքսանդրու Հայրապետին զոր եանես ի սուրբ խորհուրդն„ եւն (թղ. 235—40,) Կիւրղի "վասն պատարագաց որ մատուցանեն վասն ննջեցելոց„ (թղ. 192—93,) Ոսկեբերանի "վասն աղաւթից եւ պատարագաց ննջեցելոց„ (թղ. 193—94,) "վասն ողորմութեան„ եւն (218—220,) Եղիշէի "ի յարութիւն Քրիստոսի„ (թղ. 200—213,) Պրոկղէ Կ.Պոլսոյ "ի Ս. Կոյսն Մարիամ. Աստուածածին„ (թղ. 213—18,) վկայաբանութիւն Կիւրղի Երուսաղեմացւոյ (թղ. 223—35,) "Գէորգեա վարդապետի ասացեալ վասն սուրբ հաղորդութեան ի խնդրոյ Յոհաննիսի քահանայի„ (թղ. 240—46,) եւ ուրիշներ։

[1] Մանրամասն՝ տես էջ 290—91։ Վարդանայ բանքն են՝ 1. (թղ. 22ա—28բ) անխորագիր՝ "Մի աստուածութիւն անհասանելի„ եւն. — 2. (թղ. 29ա—31բ) "Նորին Վարդան վարդապետի ասացեալ վասն Զրկանաց որ զրկեն զորբս եւ զայրիս։ Դարձեալ պատրաստ եղերուք„ եւն. — 3. (թղ. 32ա—32բ) "Նորին դարձեալ վասն ողորմ.։ Պատմի յառաջնոց„ եւն։ — 4. (թղ. 32բ—33բ) "Նորին Վարդան Վարդապետի ասացեալ վասն Հպարտութեան եւ ոխակալութեան։ Յետ այսորիկ փախերուք ի Հպարտութենէ„ եւն. — 5. (թղ. 33բ—35ա) "Դարձեալ վասն Սիրոյ ասացեալ։ Յետ այսորիկ զսէրն կալարուք„ եւն. — 6. (թղ. 35ա—37ա) "Նորին Վարդան վարդապետի ասացեալն վասն Կախարդացն . . . Յետ այսորիկ փախերուք ի կախարդութենէ„ եւն. — 7. (թղ. 37ա—38ա) "Նորին Վարդան վարդապետի ասացեալ Յաղագս լեզուանութեան եւ անզգամութեան։

Ինչ որ այս աղբիւրներէն կրնար քաղուիլ Վարդանայ Այգեկցւոյ կենսագրութեան մասին, անոր ծննդեան, հայրենեաց, կրթութեան եւ եկեղեցական աստիճանին, պանդխտական կենաց եւ այլ հանգամանաց մասին մինչեւ անոր Այգեկ հաստատուիլը, ամփոփած է հայագէտն ընդարձակ հատածի մը մէջ. (§ 315։) Վարդանայ ծննդեան որոշ տարին յայտնի չէ, սակայն իւր մանկութիւնը կ'իյնայ հաւանականօրէն ԺԲ. դարու երկրորդ կիսուն։ Իւր հայրենիքն էր Ասորիք,

Ցետ այսօրիկ տանձել կապեցէք» եւն. — 8. (Թղ. 38ա–38բ) «Նորին վասն Հպարտութեան։ Ահայ գիտակք եղբարք» եւն. — 9. (Թղ. 38բ–42ա) «Նորին խրատ վասն քահանայից եւ ժողովրդեան։ Դարձեալ գիտացիք զայս» եւն։ — 10. (Թղ. 42ա–46ա) «Նորին Վարդան վարդապետի ասացեալ է վասն Ցիշոցաց խրատ։ Դարձեալ յայլ աւրէնքս» եւն. — 11. (Թղ. 46ա–55բ) «Այլ խրատ վարուց առաքինութեանց։ Աստուած բարի եւ լոյս» եւն։ — 12. (Թղ. 56ա–62ա) «Պատմ. վասն անքուն որդանց եւ խաւարութեան նոցա եւ չարութեան, թէ զինչ են կամ ուստի իցեն ծնունդ նոցա։ Եւ արդ եկայք ժողովեցարուք» եւն. — 13. (Թղ. 62ա–73ա) «Պատմ. վասն Դժոխոցն, թէ այս եւ ստոյգ եւ չէ լոկ սպառնալիք։ Եւ արդ եկեայք այսաւր» եւն. — 14. (Թղ. 73ա–75բ) «Խրատք վասն հոգեւորացն աւուրն, յորժամ քակի աստուածաշէն տաճարն հոգոյն, որ է մարմինն . . .։ Արդ պարտ է» եւն. — 15. (Թղ. 75բ–78բ) «Խոստովանութիւն ճշմարիտ հաւատոյ, խաւսք ի խորոց սրտէ առ Աստուած եւ կարգ սահմանաւոր զոր տեղեկացեալ է ծառայն Քրիստոսի Վարդան վարդապ.։ Մեղայ մեղայ մեղայ Աստուծոյ» եւն։ — Հայագէտը կը նշանակէ որ Վարդանայ անուամբ «խրատական հոգեշահ գրոց» երեք օրինակներէն յիշեմ. (Թիւք 719, 720, 721 = «Մայր Ցուցակ» Թ. 705–707) երկուքը միայն քննել կրցած է, յատկապէս Թ. 721 ձեռագիրն 1409ին գրուած։ Նման ձեռագիրներ չեն պակսիր ուրիշ հաւաքմանց մէջ ալ. տես մեր «Ցուցակ» 1155, եւն այլուր։

Հալէպի շրջակայքն՝ այն բազմաթիւ գիւղերու միոյն մէջ՝ Մարաթա[1] անուն, ուր Հայ գաղութ մը կար, ծնած կ'երեւայ, ինչպէս ինք զինք յաճախ կը կոչէ "ի Մարաթայոյ„ (տես քիչ մ'ետքն) ուստի ըստ ամենայն երեւութի նոյն է Վարդանայ Մարաթացւոյ հետ՝ որուն անուամբք Աղօթքներ հասած են մեզի[2]: Իւր կրթութիւնն անշուշտ հայրենիքն առած էր նախնաբար, սակայն յետոյ կը գտնենք զինքն ուսման պարապած յԱրքայա-

---

1 Հայագէտը (էջ 292, ծան. 4) տեղեկութիւններ կու տայ այս տեղւոյ մասին, յիշելով նաեւ արաբական աղբիւրները՝ Եակուտի աշխարհագրական բառգիրքն եւն: Արաբացիք կը գրեն مراثا, իսկ Սմբատ Պատմիչ (տպ. Մոսկ. էջ 133, տպ. Փարիզ 131) պատմելով 778 (= 1329) տարւոյ դէպքերը կը գրէ թէ Լեւոնի զօրքը Ադանայ սահմանները հանդիպելով Կռիկոսի Գունդին՝ "բանեցին զնոքն եւ դարձուցին յետ եւ դրին յարգելք ի յեկեղեցին սուրբ Մարաթա ի մօտ Ադանայ:„

2 Վարդան Մարաթացւոյ կ'ընծայեն ձեռագիրք Աղօթագիրք մը կամ "Աղերսք„ բաց ի Վենետիկոյ ձեռագրէն կայ նաեւ մեր Մատենադարանը՝ յարակից խորաններով (տես Թ. 144, "Ցուցակ„ էջ 444—445) սկիզբը յիշատակարանաւ մ'ալ թէ "Ձեզաստոր Վարդանս յարմարեալ գրեցի յերուսաղէմ ի սուրբ Յակոբ, ի խնդրոյ աստուածասէր քահանայի„ եւն: Յիշեցինք ուրիշ տեղ մը ("Ցուցակ„ 1156) որ Աղօթագրքիս առաջին տպագրութիւնը (Կ. Պ. 1734) Մարաթացւոյ, երկրորդը (Կ. Պ. 1841) Վարդանայ Բաղիշեցւոյ անուամբ է: — Իբրեւ նշան թէ Այգեկցի Հայակիլիկեան շրջանի կը վերաբերի, կը յիշէ Հայագէտը (էջ 292, ծան. 2) անոր մէկ խօսքը (ձռգր. Լազ. Ճեմ. 83, Թղ. 60բ) "կուտեցէք զհասս մանանխոյ ի չափ եւ ի կշիռս բերէք լերինն Տիրոսի, որ է յորեւելից կողմանէ ի Տարսոն քաղաքի, եւ թէ լինի հնար, դուք բերէք զնա ի թիւ եւ ի համար„ եւն: Բնականապէս այսպիսի դէպքի մէջ՝ Մեծ Հայոց աշխարհէն հայ մատենագիր մ'աւելի Մասիս, Արագած եւն կը յիշէր:

կաղին¹, ինչպէս ինքն իսկ տեղ մը (Ճուգր. Ասիական Թանգարանի Marr Nr. 5, Թղ. 132ա) պատմելով տեսիլ մը՝ կը գրէ թէ «Այս յաւամանն է ժամանակն եղեւ ի սուրբ ուխտն յԱրքակաղնին: Եւ տուրք իշխանին էր կէս դահեկան, զոր ետ Հասարակաց եղբայրութեանն» (տես էջ 294:) կան որ զինքն Ամթեցի ալ կը կոչեն. այսպէս երբ թերթ մը քանի մ'առակներ հրատարակեց սա խորագրով՝ «Նախնեաց առակներ Ամթեցի Վարդան երէցէ գրուած:»² Ասոր պատճառն այն է որ Վարդան իւր եկեղեցական պաշտաման համար ասպարէզ ունեցաւ նախ Ամիթ, յետոյ ի Դղուկ (Տլուք)՝ Եփրատայ արեւմտակողմն: Սակայն ինքն իսկ յաճախ կը յիշէ որ ստիպուած էր պանդխտիլ, հեռանալ իւր այն «բնիկ ժառանգութենէն». այսպէս երբ կը գրէ թէ «Բուռն է կարիք մարմնոյ յորժամ պակասէ, զի հալածական եղաք ի բնիկ ժառանգութենէ մերմէ յերկրէն Կիւրխոյ, եւ ի գաւառէն Տելույ (Տլքոյ) եւ եկաք յԱյգեկս» եւն:³ Թէ երբ եղած է այս

---

1 Արքայակաղնի հռչակաւոր ուխտի մասին տես «Սիսուան», էջ 8, 229, 253—255, 517, 546: Մեծ երկրաշարժովն 1269ին (տես «Սիս.» 8, 253) շատ վնասուեցաւ մենաստանը: Ալիշան կը յիշէ թէ 1266էն առջը հոն ապրած է «Վարդան կողեան եւ շարմող» (անդ՝ 253:) Հոն գրուած է գեղեցիկ բոլորգիր Մանրուսմանց պատկեր տես անդ՝ 254:

2 Հայագէտը կը յիշէ թերթս «Ազատութիւն» (Նիւ-Եորք, 189[illegible]) Թ. 46, էջ 3:

3 Հայագէտը մի առ մի եւ ընդարձակ կը խօսի (էջ 294–295 Ծան.) թէ «բնիկ ժառանգութեան» իմաստին, եւ թէ Դղուկ եւ Կիւրխս քաղաքաց վրայ: Դղուկ (Տլուք, Δουλίχια) քաղաք մըն է յԱսորիս (տես Ritter,

*հալածուիլն եւ մերժուիլն ի Տլքոյ, յայտնի չէ։ Այնուհետեւ պանդխտութեամբ թափառած է Վարդան, .ինչպէս ինքն ալ յաճախ կը յիշէ. այսպէս երբ տեղ մը կը գրէ՝ "Նոյնպէս եւ ես որդեակք, է մանկութենէ մինչեւ է ծերութիւն շրջե-ցայ է մէջ աշխարհի. եւ տեսի բաղում զմեղս մեծամեծս. եւ անչափ լուայ ծածկաբար ի գործողացն զչարս, նա եւ ուսա յաստուածեղէն գրոց որոց ոչ գոյ թիւ„ (տես էջ 297։) Միանձ-նական կեանք ալ վարած կ'երեւայ, քաշուած անապատաշատ Սեաւ լերին մէկ անկիւնը, ինչ-պէս ինքն իսկ հոն կը գրէ՝ "Յաստուածային սուրբ գրոց Խրատք վարուց առաքինութեան կարճ ի կարճոյ եւ համառաւտ միայն զբանիցն գրել՝ ողորմելոյս Վարդանայ որ է Մարաթաւ, եւ այժմ ի նոր Սուրբ լերինս միանձանց՝ առ մանկագոյնս կրաւնաւորս որ գան ի նորգս կրաւնաւորութեան եւ միանձնութեան ի ծերոց վիմոց„ (ձռգր. Աս. Թանգ.* Ms. arm. Marr Nr. 5, *Թղ.* 109*բ*—110*ա*։) *Սակայն այս միանձնական եւ ճգնաւորական կեանքէն ետքն ալ՝ Վարդան չդադրեցաւ պան-*

---

Die Erdkunde *եւն*, X, 1843, *էջ* 1034—1035), *զոր կը յիշէ նաեւ Բարհեբրէոս (Ժամկգր., Պարիս* 1890, *էջ* 183), *եւ Մատթ. Ուռհայեցի կը յիշէ Տլքոյ սովը* 1077*ին եւ ի Տաճկաց նեղուիլն* 1079*ին (տես ձռգր. Ասիակ. Թանգ.* Nr. 9, *էջ* 341, 343, *տպ. Երուսաղէմ, էջ* 261)։ — *Կիւրիոս* (*Κύῤῥος*) *քաղաք նոյնպէս յԱսորիս (տես* Ritter, *էջ* 1035), *զոր կը յիշեն նաեւ Մատթ. Ուռհայեցի (ձռգր. Աս. Թանգ.* Nr. 9, *էջ* 91—92 . . . "*. . . արար զնա տէր ամենայն գաւա-ռաց Կուռիսոյ„ եւն), Սմբատ Պատմիչ "Կիրիօս„ եւ "Կի-րոս„ ձեւերով (տպ. Մոսկ.* 1856, *էջ* 33, 87, 125, *տպ. Պարիս, էջ* 50—51, 99, 133)։ *Տես նաեւ "Սիսուան„*, 451։

դրխտուԹեամբ շրջելէն, յատկապէս մերձաւոր իշխանաց կենաց ալ անծանօԹ չմնալով, ինչպէս ինքն ալ կը գրէ՝ "Եւ զայս ասելով ոչ եԹէ բամբասեմ զիշխանսն ... քանզի վայ է զնա զոր իշխան կամ առաջնորդ կացուցանեն յայս չար եւ ի դառն ժամանակիս։ Զի Թէ մեք որ սակաւ ունիմք զկարիքն եւ իշխանուԹիւն եւ կարողուԹիւն ոչ ունիմք, բայց փոքր ի շատէ առանց զրկանաց ոչ կարեմք մնալ, ապա վասն նոցա զի՞նչ ասացից որ ունին զիշխանուԹիւնն եւ զկարողուԹիւն եւ զբազում կարիքն եւ զաւելորդն եւ զբազում ծախքն, զոր բազում անգամ դեռս չմեռեալ է ի մէջ նոցա„ եւն (տես էջ 299—300, նոյն ձեռագրէ՝ Թղ. 133ա—բ։) Այս իշխանաց մէջ յատկապէս միոյն հովանաւորուԹիւնը վայելած է Վարդան, այն է "Թագաւորազն„ Պաղտին։[1] Այն ժամանակ Սեաւ լեառն՝ Անտիոքայ մօտ՝ ծաղկած էր բազմաԹիւ վանքերով ու մենաստաններով։ Վարդան ալ՝ վայելելով նոյն իշխանին հովանաւորուԹիւնը՝ երկամեայ վտարանդի կեանքէ մ'ետքն եկաւ հաստատուիլ յԱյգեկ կամ Այգեկի Անապատը, եԹէ

[1] Հայագէտը (էջ 300 ծան. 1) չի կրնար որոշել Թէ ով էր ճշդիւ այս իշխան Պաղտուին. Թերեւս այն երկուքէն մին որ 1198ի ներկայ էին Թագադրութեան հանդիսին "իշխան Ընկուզտին՝ Պաղտինն„ եւ "իշխան Անդաւշծին եւ Կուպային՝ Պաղտինն„ (տես "Սիսուան„ 471, դարձեալ 195, 328 եւն, բազմաԹիւ Պաղտիններ՝ տես անդ 583)։ Նոյն հանդիսին՝ բաց ի Արքայակաղնի առաջնորդ Տէր ԴաւիԹ արքեպիսկոպոսէն՝ ներկայ էր նաեւ Վարդան մը, բայց "Տէր Վարդան արքեպ. Լամբրունին, եւ առաջնորդ Սկեւռային։„

*ոչ նոյն իսկ Սեաւ լերան վրայ, գոնէ մօտերը։*[1] *Անկէ մնացած է իր "Այգեկցի" յորջորջումը։*

*Վարդան իր առ միանձունս Սեաւ լերին ուղղած խրատական թղթին մէջ բաւական տեղեկութիւններ կու տայ ի մասին իր բնակութեան յԱյգեկ* (*տես* § 316։) *Այսպէս կը գրէ տեղ մը* (*ձռգր. Ազ. Թանգ.* Marr Nr. 5, *Թղ.* 118*ա—բ*) *"Ցորժամ եկաք ի սուրբ*

---

1 *Ընդարձակ կը խօսի Հայագէտը* (*էջ* 300, *ծան.* 2) *Այգեկի վրայ, որ է Այգեակ ("այգի" բառէն), ուստի նոյն անուանակոչութեամբ է անուանս անոր հետ զոր "Գիրք Աստուծոյ" կը կոչէ Մատթէոս՝ Վկայասէրի աշակերտն ու գործակիցն,* 1102*ին գրելով՝ "Հասաք ի Սուրբ լեառն զոր Սեաւ կոչեն, ի մեր սեպհական պարգեւական եկեղեցիքն,* (*Ա*) *Ուխտն սուրբ զոր ըստ ասորի բարբառոյ Գառ-լունոյ կոչի. որ թարգմանի Գիրք Աստուծոյ, եւն* (*տես "Սիսուան"* 406։) *Ինքն Վարդան ուրիշ տեղ մը* (*տես էջ* 309) *կը գրէ Այգեկի վրայ՝ "կամ ես յԱնապատի աստ՝ հեռի ի գրենաց եւ ի մեկնչաց"։ Արդ Լանգլուա Կիլիկիոյ իր քարտէսին վրայ* (V. Langlois, Voyage dans la Cilicie, Paris 1861) *կը նշանակէ* Anabad (= *Անապատ*) *տեղ մը, Ջահան գետի աջ կողմը՝* (*Ախուր*) *լերանց հարաւակողմն այն տեղն ուր կը կցուին անոնք Դուրդուն կամ Կեաւուր-տաղի շղթային։ Նոյն կէտին համար կ'ըսէ Ալիշան ("Սիսուան",* 203) *"Ցարեւելեան անկեան սորին եւ Ջահանայ՝ նշանակի հայանուն տեղին Անապատ, եւ փափաքելի առնէ խնդրել անդէն զմի ի վանօրէից մենակեցաց մերոց, գուցէ եւ զմի ի Նշանաւորացն", հաւանօրէն Այգեակը՝ կը յաւելու Հայագէտը։ Բայց Այգեկի անապատը շատ հին չէ. Վարդան ինքը կը վկայէ* (*տես* § 323) *որ ԺԲ. դարուն, իր գալէն իբր* 40 *տարի յառաջ հիմնուած է։ Հայագէտը կը մերժէ բոլորովին այն կէտը որ Այգեկ համեմատուի Կիլիկիոյ հին քաղաքին հետ "Եգէա" կամ "Այգէա"* (*Αἰγαί, Αἰγαῖαι, Αἴγεαι,* Aegeae), *որ բազմաթիւ ձեւեր առած է յետոյ, Հայոց քով՝ Այաս* (*տես* Langlois, Voyage, p. 428. *"Սիսուան"* 356—395 *եւն*)։

ուխտն յԱյգեկն ի գաւառէն ողէոյ (կարդալու է՝ Տղէոյ), յետ Գ ամի պատահեցաւ, զի ահա ես եւ երկու եղբարք նստեալ բամբասեցաք զհայր վանիցն եւ զայլ ոմն բարեկամ նորա„ եւն: Աւելի տեղեկութիւններ կու տայ ուրիշ երկար յիշատակագրութիւն մը (Նոյն ձռգր. Թղ. 164ա —165ա,) ուր կ՚ըսէ Վարդան՝ "Ո՜վ գերապատուեալ հարք իմ եղբարք եւ որդիք ... որք բազկատարած մաղթանաւք ճգնեալ նահատակիք յաստուածայինակ ուխտն որ կոչի Խորէն կամէ եւ Խորհուրդ Աստուծոյ,[1] եւ որ ի շուրջակա լերինս ի ծերպս վիմաց հրեշտակերամ միանձունք: Կամիմ աստանաւր եւ ուրախ եմ հոգով՝ գրել առ ձեզ եւ այլ ճառս իմաստութեան շնորհաւք եւ ողորմութեամբ սուրբ Հոգոյն, առ ի սբաղումն մտաց ձերոց եւ ի ցնծութիւն անձանց ձերոց ...: Յաւուր շաբաթու մեծի բարեկենդանին, վասն փառն հոմարոյ որ է թիւ կատարեալ եւ լցեալ աստուածեղէն իմաստութեամբ, խառնեալ ընդ սմա եւ հրաշալի աստուածաբանութիւն եւ ուղիղ դաւանութիւն հաւատոյ որ ի Հայր եւ յՈրդի եւ ի սուրբ Հոգին, եւ ի ճշմարիտ մարդեղութիւն բանին Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի: Որ է ընդդէմ Սիմոնի կախարդի, եւ Արիոսի ... Նստորի, Եւնէմիոսի եւ այլոց աստուածամարտ հերձուածողացն

---

[1] Խորէն-վանէ„ կամ "Խորէն-անապատ„ ծանօթ եւ յաճախ յիշատակուած մենաստաններէն է (տես "Սիսուան„ 66, 151—152, 231, 534—535.) սակայն կրնայ թերեւս խնդիր յարուցուիլ թէ նո՞յն է անոր հետ "Խորէն-կամէ„ եւ "Խորհուրդ Աստուծոյ„ անուանակոչուածս այս տեղ:

... զոր ողորմութեամբն Աստուծոյ յորմարեալ շինեցի ողորմելիս Վարդան, ի չորրորդ ամի գալստեան Տէրոյ ի Մարաթոս ի Սաւրբ Լերինս յԱյգեկս եւ եդի ի գիրս զոր գրեցի ճառս ԻԲ, ի խնդրոյ Թագաւորազն իշխանին որ կոչի Պաղտին։„ (Ընդարձակ տես § 316, էջ 301—302։)

Այս Պաղտինի հետ Վարդանայ ունեցած մէկ թղթակցութիւնն ալ (տես § 317) պահած է Էջմիածնի Թ. 719 ձեռագիրը։ Պարոն Պաղտին իւր թղթին մէջ առ Վարդան իւր ուրախութիւնը կը յայտնէ որ այն "բարի եւ հոգեշահ խրատս„ գրած խաւրած էր իրեն։ Հայագէտն այս նամակն ամբողջ,[1] իսկ Վարդանայ պատասխանն առ Պաղտին (խորագրով՝ "Գոհութիւն

---

1 Տես էջ 303—304, որ կը սկսի այսպէս՝ "Թուղթս պարոն Պաղտին թագաւորազն եւ քրիստոսասէր մեծ իշխանին ի քրիստոսակիր անձին զսուրբ եւ զարդիւնական վարդապետին Վարդանա եւ յետ Քրիստոսի յուսոյդ մերոյ եւ զպատուական եւ զողջոյնաբեր զնամակս ընդերձա եղբայրս Պաղտինս եւ յոյժ ուրախացաք ընդ ձեր բարի եւ հոգեշահ խրատս զոր գրեալ էք առ մեզ վասն գործոց բարեաց, եւ օժարութեամբ ընկալաք իբրեւ զհրամանս Աստուծոյ, եւ այնպէս ուրախացաք որպէս թէ զննջեցեալն մեր տեսաք կենդանի՝ զհարազատն մեր զսուրբ քահանայն Բարսեղ եւ մեծ իշխանն Սմբատ եւ զպանծալի Նախնէ մեր զաստուածահաճոյ զեպիսկոպոսն մեր Բարսեղ։ Եւ եւս առաւել ուրախացաք վասն գրոցս զոր առաքեցեր մեր ...։ Եւ զայս գիտացիր որ Աստուծոյ մեծ հարկ կայ ի վերայ որ ձեր պիտի, ընտրեալ գիտնականն, յամենայն ժամ յիշեցուցանէ մեզ զպատուիրանս Աստուծոյ ...։ Եւ աղաչեմ զքեզ որ յամենայն ժամ զմեզ եւ զննջեցեալսն մեր անմոռաց պահէք ի մաքրափայլ աղաւթս ձեր, եւ զձեր բարի եւ հոգեշահ խրատն ի մէնջ անպակաս առնէք, նա եւ գրով տայք մեզ զօրէնս Աստուծոյ„ եւն։

վամն խոնարհութեան իշխանին„) քաղուածնե-րով հաղորդած է, կ՚ենթադրուի՝ ինչպէս բոլոր միւս նման դէպքերու մէջ՝ հանդերձ ռուս թարգմանութեամբ։[1] Սակայն մեզի համար կա-րեւորագոյն է Վարդանայ յիշատակութիւնն իւր խրատներու վերջիշեալ ԻԲ գլխով, ուր կը գրէ՝

> "Ես ողորմելիս Վարդան տգէտս ի գիտնականս եւ աննմանս եւ կարգաւորս գրեցի զայս աստուա-ծաբան տառս ի խնդրոյ աստուածասէր իշխանին պարոն Պաղտին որ է ազգ Թագաւորին. եւ ա-ղաչեմ անմեղադիր լինել գիրս տխմարութեան, զի այս էր կարն մեր եւ որոյ չափ հասու եղեւ միտք մեր ողորմութեամբ Աստուծոյ ժողովեցաք յօրինացն Աստուծոյ եւ եդեալ ի սմա. եւ այլ յայժ ծանօր եղեւ մեզ, զի Բ. ամ է՝ զերագոյնս («ի զբաղմունս„) աշխարհի եւս եւ ոչ ընթերցման (ընթերցումն) գրոյ. քանզի բուռն է կարիք մար-մնոյ յորժամ պակասէ. զի հալածական լեալ է բնէ ժառանգութենէ մերմէ յերկրէն Կէտրէսոյ [եւ է գաւառէն Տփլոյ (Տլքոյ)] եւ եկեալ յԱյգեկս եւ Աստուած ի բարի աջողեաց զամենայն զգործս մեր եւ զպէտս մարմնոյ. իսկ ի հին ուսմանէ յիշեալ հաւաքեցի զսա, եւ յորժամ սկսա կիսա (այսպէս) եւ կատարեցաք զսա աստուածաբանակ

---

1 Տես էջ 305–306, որ կը սկսի՝ "Ով վսեմական մեծագահ եւ Թագաւորազն յԱստուած յուսայ մեզ ինծի-ղեալ (ընծիւղեալ) բողբոջ բանծալի աստուածազօր իշ-խան Պաղտին. Հողս Վարդան լցայ անճառ ցնծութեամբ եւ Աստուծոյ. գոհութիւն վեր առաքեցի որ շնորհեաց քեզ հոգի հեզ եւ խոնարհ ուրախանալ առ ի լսել զօրէնս Աստուծոյ եւ հասանիլ բարձրագոյն հրամանաց Նորա զոր ոտնարս մի յիշեցուցէ յեզ, եւ ի Թղտիս քո ծանեայ եւ հե-զութիւն քո . . . ։ Հոգեւոր աստուածական գանձիւ փար-թամացոյց զիս աստուածային խնդիրս քո զոր հրամայեցեր մեզ տալ յեզ գրով զօրէնս Աստուծոյ . . . բայց դարձեալ յԱստուած վստահացայ եւ ի խնամս Նորա ապաւինեցայ գրել զօրէնս Աստուծոյ եւ տալ մեծագահ իշխանութեան ձերոյ„ եւն։

*ցանկալի-ն-ղ-փ- Այծէկ-՝ ընդհ-վ-նե-- սատուած-
ընկալ եւ հրաշազան սրբոց Ս. Սէ-նէ ե- Ս.
Կ-ր-ղեփ, եւ առաջնորդութեամբ սուրբ ուխ-
տիս փեր Կոսոփ-նդն- սրբազան եպիսկոպոսին մա-
տաղ հասակաւն. որն ծագելով աստիճան ժա-
մանեալ առաքելական, էր տէրունականին հայոց
ՌԿԱ (ուղղելի՝ ՌԿԱ = 1212) եւ էր թագաւոր
Հայոց Լեւոն Ռուբ[ինե]անց ի [Կ]իլիկիայ եւ
քրիստոսապատ եւ ահարկու ի վերայ անօրինաց,
եւ է ԻԴ ամս գրեալ (գրաւեալ) է անօրինաց
Յերուսաղէմ եւ [բ]արձաւ թագաւորութիւն
[Յ]ունաց եւ ազգն արիական առ զԿոստանդի-
նուպոլիս, ե- ուշոմ ովփ ֆոխեյ-- Թ-ւ-իոո (Դ-ւ-էի)
-ր ֆ-լ-- ղէ-ն-ղէֆ----նի-ն սակաւ ամս (1206–8)
ի Արքակաղնին։ Եւ արդ աղաչեմ զամենեսեանդ
որք ընդեռնուք զսա, աղօթս արարէք աստուա-
ծասէր իշխանին պարոն Պաղտին, որպէս զի
Աստուած խաղաղութեան պահեսցէ զնա հարա-
զատ եղբայրովքն իւրովք. եւ թողութիւն շնոր-
հեսցէք ամենայն ննջեցելոց նոցա, զի թողցէ զաս-
տուած (ալ-ոփե-) զանձանս նոցա։ Յիշեցէք եւ
ողորմելիս Վարդան զոր արմարեցայ զսա՝ եւ
զծնօղս իմ եւ եղբայր եւ զայսկայկանս (զազգա-
կանս.) եւ որք յիշէք զմեզ որ աստ գրեցան,
յիշէ Աստուած եւ զննջեցեալսն ի բարի. եւ նմա
փառք.։ — Դժբախտաբար շատ սխալաշատ է
օրինակը, ինչպէս կը տեսնուի. (տես էջ 306—7։)*

*Ըստ այժմ՝ որոշ թուով խօսելու համար՝
1212ին Վարդան յԱյգեկ էր, ուր էր՝ ինչպէս
ինքը կը յիշէ Տլքէն ելլելէն 2 տարի տարի վերջը,
եւ 4 տարի հոն բնակած՝ որ տարին գրած է իւր
“Իբ Ճառերը„ կամ խրատքն ի խնդրոյ Պաղ-
տինի։ Յամենայն դէպս Այգեկէն ալ գրած է
իւր թղթերն առ Միքայէլ Անտիոքայ, ինչպէս
պիտի յիշենք։ Այս ամէնէն ետքը, նկատելով
ալ որ Վարդան տրտունջ կ'ընէ իւր կրած հալա-
ծանաց եւ գոհութիւն կը յայտնէ գտած ապաս-
տանարանին մասին յԱյգեկ, կրնար մտածուիլ
որ երկար տարիներ հոն մնացած ըլլայ։ Սակայն*

այնպէս չէ եղած: Քիչ մ'ետքը զինքը կը գտնենք Դրազարկի հռչակաւոր ուխտը՝ Սսոյ արքեպիսկոպոսաց նիստը[1], եւ հոն սկսած մշակել իւր առակախօս-խրատաբանութեան մէկ նիւթը, "Ճ վաճառականաց" առակ-խրատները, ինչպէս կ'իմանանք իւր յիշատակարանէն (տես վարը § 325:) Թէ ո՛ր տարին Դրազարկ անցած է Վարդան, յայտնի չէ, բայց հայագէտը կը կարծէ որ 1220էն ետքը չէ: Ճիշդ այս 1220 տարին կը յիշուի ի Դրազարկ "Վարդան ոմն"՝ ինչպէս կ'ըսէ Ալիշան[2], որ թերեւս է նոյն իսկ մեր մատենագիրը Վարդան Մարաթացի-Այգեկցի: (Տես § 318, 318a.)

Վարդանայ գրաւոր գործունէութեան ուրիշ մէկ ճիւղն է՝ խրատական թղթեր առ Միքայէլ եպ. Անտիոքայ (§ 319:) Այսպէս ձեռագիրք կը ներկայացընեն մեզ թուղթ մը սա վերնագրով՝ "Հարցումն Տեառն Միքայէլի Անտիոքայ Եպիսկոպոսին թէ որպիսի՛ աւրինակաւ է մարդս պատկեր Աստուծոյ: Եւ Պատասխանի Վարդանայ

---

1 Դրազարկի մասին, որ նաեւ "Փոքր անապատ" կը կոչուի, օրագնացք մը հեռի Սսէն, ընդարձակ տես "Սիսուան", 230–36:

2 Տես "Սիսուան" 233: Յիշատակողն է Արեւիկ յիշատակագիր այն ձեռագրին, որուն մի մասը 1220ին գրած է նոյն իսկ Բարսեղ եպիսկոպոս առաջնորդ ուխտին: Նոյն տեղը կը յիշէ Ալիշան նաեւ "Վարդան վարդապետ թարգմանիչ պատմութեան Միխայելի Ասորւոյ", երբ 1241ին: Ծանօթ է որ յիշեալ թարգմանութեան տարին կ'աւանդուի ՈՂԷ (= 1248) եւ թարգմանիչը՝ բաց ի այլոց՝ Վարդան Մեծն: Սակայն խնդիրը տակաւին շատ մթին կէտեր ունի եւ արժանի հետազօտութեան:

Վարդապետի Այգեկցւոյն„, որուն սկիզբն ալ է՝ “Ո՛վ իմաստուն եւ բարեսէր հոգեւոր որդեակ իմ Տէր Մխիթարէ, խնդիր քո աստուածեղէն է եւ պիտանացու„ եւն. (Ձեռագր. M, Թղ. 154բ եւն։[1]) Ապահովապէս 1212ին գրուած “ԻԲ„ խրատներու գրքէն ետքը գրուած է այս, եւ այն՝ նոյնպէս յԱյգեկ. վասն զի հոս ալ նոյնպէս կը տրտնջէ հեղինակն որ ստիպուած էր “ի հին յիշատակաց եւ յուսմանց„ գրել, որովհետեւ կ'ըսէ (M Թղ. 154բ—155ա) “կամ ես յանապատի աստ՝ հեռի ի գրենաց եւ ի մեկնչաց։„[2] Այս Թղթին Վարդանէն ըլլալու մասին խնդիր չի կրնար ըլլալ. բայց կան ուրիշ խրատներ ալ, որոնք ձեռագրաց մէջ (տես Ա. Թանգ. Marr Nr. 5) անանուն են, եւ սակայն դարձեալ Վարդանայ են, եւ այն՝ նոյնպէս յիշեալ Միքայէլի ուղղուած (տես § 321։) Այսպէս է խրատս (Ձեռագր. Marr Nr. 5, Թղ. 6բ—22բ) “Եթէ

---

1 Այսինքն Ձեռագր. Լազ. Ճեմ. Թ. 63։ Նոյնը կայ նաեւ Էջմիածնի Թ. 1631 ձեռագրին մէջ (Թղ. 45ա–53բ,) տես Հար. Գ, 20։

2 Կարնոյ Սանասարեան մատենադարանի ձեռագիրն այսպէս ունի այստեղը՝ “Եւ առաջի Աստուծոյ անսուտ ասեմ, որ չունիմ յանապատ տեղ բազում գրեանս եւ կամ զմեկնութեան հինգ բանիցս, զի ետից օրինակ եւ գրեցից։ Ապա վերահայցեալ յԱստուած Հայր . . . սկսայց կատարել զհրամանս քո, զոր տայ Ս. Հոգին, ի հին յիշատակաց եւ յուսմանց. բայց եւ ամենայն շնորհաց որ լինի եւ ոչ ի մեր ջանաց. քանզի խաւարեցաւ միտք իմ յաշխարհիս եւ նուաղեցաւ լոյս աչաց եւ փխրեցաւ ծերութեամբս։ Ապա սէրն քո մոռանալ տայ ինձ զամենայն, նաեւ զի մնասցէ սա ի ձեռս քո ինձ յիշատակ որպէս զի յետ մահու յիշատակեսցես զիս առաջի անմահի գառինն„ եւն։

զի՞նչ են աղաւթքն եւ կամ ո՞րչափ է սահման նորա եւ զի՞նչ շահ առնէ մեզ„, որ ուղղուած է "աստուածարեալ առաջնորդի„ Միքայէլի (Թղ. 6բ) եւ անհրաժեշտ կապ ունի Նախընթացին եւ յաջորդներուն հետ[1]։ Նոյնպիսի է միւս խրատը (անդ՝ Թղ. 22բ—33բ) "Եթէ ո՞ր է մահու չափ մեղքն, եւ կամ ընդէ՞ր Քրիստոս երկնչէր ի մահուանէ, եւ թէ զի՞նչ է դժոխքն եւ ո՞ւր է„, որ նոյն հեղինակէն է եւ նոյն անձին ուղղուած, թէեւ որոշ խորագիր մը պակսի։ Նշանաւոր է աստ մէջ տեղ մը, որ բաց ի յիշեալ կէտերը հաստատելէն՝ կարեւոր է ժամանակագրական տեսակէտով ալ, եւ է հետեւեալը. (Թղ. 23ա —24բ.)․

"Աղաչեմ որ զայս գիրս եւ զեկեղեցւոյ ներբո-ղեանն եւ զխորհրդոյն գիրսն շրջեցուցանես ի սուրբ եւ յուղղափառ եկեղեցին Անտիոքու, զի հօրն քո է եւ պարտական ես նմա. եւ առ եւ տուր եւ խնամեա որ չկորնչի, եւ որ կարէ գրել ի տոցանէ զի աճեսցեն, գրեսցէ Աստուած անջնջելի զանուն նոցա ի գիրն կենաց։ Նա եւ մեծ բա-նադրանք եւ կապանք կայ գրեալ յեկեղեցւոյն ներբողեանն, որ թէ ես ոչ ժամանեմ սահմանն Երուս-աղէմի, նա ի ձեռն ող եւ մնացէ կենդանի՝ տարցէ զնա քրիստոնէից, եւ չինի սուրբ Յակոբ տուն Հայոց. եւ առցէ զաւրհնութիւն Աստուծոյ։ Ապա գիտացիր, աստուածասէր ժողովուրդ, զի

---

[1] Այսպէս նշանաւոր է սա խօսքը (Թղ. 7բ—8ա) "յառաւտ գանձարանէ քումմէ փարթամացոյ զաղքատու-թիւնս իմ, որպէս զի կարացից ուղիղ համառաւտել եւ տալ զմեկնութեան խորհրդական հինգ բանիցն (Համմ. Նախ-ընթաց Ծան.), զոր հայցեաց սրբամիտ եւ լուսաթեւ աղաւնին ի խաւարասէր եւ ի գիշակեր թռչնոյս։„ Աղաւնին է ի հարկէ յիշեալ Միքայէլ եպ. Անտիոքայ՝ Վարդանայ սանը։

ամենայն բանիւ զոր խնդրեցեր փառաւորք են եւ հրաշալիք. իսկ վերջին հարցումս կարի փառաւորագոյն խորհրդովք լցեալ է„: — (Թղ. 24ա) "Աստուածութիւնն Երրորդութիւն է համագոյ եւ անքաժանելի, որ էստեղծ զքեզ ի պատկեր իւր Երրորդութիւն, որ ես հոգի եւ մարմին եւ միտք, որպէս եւ գրեցի ի ճառս Պատկերակցութեան. Աստուծոյ որ ես մարդս է:„

Թողլով այն կէտն ալ՝ որ երկրորդ տեղն (Թղ. 24ա) բացորոշ ապացոյց է Վարդանայ հեղինակութեան, քանի որ կը յիշէ իւր միւս գործն՝ "Պատկերակցութեան„ ճառն, կարեւոր է այս տեղն՝ որ կը ցուցընէ թէ ասոնք գրուած են ԻԲ գլխով խրատէն (1212էն) ետքը, տակաւին յԱյգեկ, այնպիսի ժամանակ մ՚որ յոյս կար Երուսաղեմայ ազատութեան: Ուստի խաչակրաց աշաւանքն է որ կ՚ակնարկուի հոս. եւ այս պարագայքն կրնային ըլլալ միայն խաչակրաց երրորդ արշաւանքէն (1188) ետքը, կամ չորրորդին (1203ին) կամ նաեւ հինգերորդին (1228ին.) եւ արդէն աւարտը կը գտնենք (Թղ. 33ա) նշանակուած՝ "Ես եր Բէա Հայ. ՈՀԸ = 1229), յորժամ ստացայ սա:„ Վերջապէս այս ամենուն Վարդանէն ըլլալուն արտաքին ապացոյց ալ կայ, կարնոյ Սանասարեան Վարժարանին մէկ ձեռագիրը, որ ընդհանուր խորագրիս ներքեւ՝ "Խնդիրք եւ Հարցմունք Միքայէլի Անտիոքայ եպիսկոպոսին ի մեծաւորէս Վարդանայ„ հինգ կտորներն ալ ունի, այսինքն՝ ա: "Եթէ որպիսի՞ օրինակաւ է մարդ սուրբ պատկեր Աստուծոյ.„ — բ. "Եթէ հոգիք մարդկան այժմ ո՞րպէս կան եւ ո՞ւր են կայեանք նոցա:„ — գ. "Եթէ զի՞նչ են

աղաւթքն եւ ո՞րչափ է սահման նորա եւ զի՞նչ օգուտ է մեզ․„ — Դ․ “Եթէ զի՞որդ երեւին սուրբքն եւ թէ կարե՞ն գալ առ մեզ․„ — Ե․ “Եթէ ո՞ր է մահու չափ մեղքն, եւ ընդէ՞ր Քրիստոս երկնչէր ի մահուանէն, եւ զի՞նչ է դժոխքն եւ սատան եւ ո՞ւր է։„ Հինգն ալ ամբողջութիւն մը կը կազմեն, ուղղուած նոյն Միքայէլի՝ անոր հարցմանց պատասխան, այսպէս ալ սկսելով՝ “Ո՛վ գերապատուեալդ յԱստուծոյ եւ ի մարդկանէ հրեշտականուն եպիսկոպոս տէր Միքայէլ մեծին․ Անտիոքայ եւ սուրբ ուխտին որ կոչի Ցեռոնց,[1] յԱստուծոյ Հօրէ շնորհք ընդ քեզ եւ ընդ հրեշտակերամ սուրբ մանկունս քո. եւ ի մեղաւորէս Վարդանայ ծունր եւ ողջոյն օրհնութեան հոգեւոր սիրոյ կապակցութեան ժամանեսցէ„։ Ցետոյ կ՚ըսուի՝ “Եւ արդ այս հինգ հարցումս ցուցանեն զերկիւղն Աստուծոյ որ կայ ի սիրտ քո„ եւ այլն։

Աւխտ ունեցանք յիշելու Վարդանայ ուրիշ թղթակցութիւնն Սուրբ լեռան միանձանց հետ, եւ յիշեցինք յատկապէս իւր գրածն առ ուխտն “Խորին-կամք՝„ իւր Տլքէն ելլելէն

---

1 Այսինքն՝ Ցեռուանց ուխտն, որուն առաջնորդն էր եւ միանգամայն եպ. Հայոց Անտիոքայ։ Անտիոքայ Հայոց ուրիշ եպիսկոպոս ալ կը յիշուի. այսպէս Կիպրիանոս եպ. որ 1099ին ինկաւ Պեմունդի Դանիշմանաց դէմ տուած ճակատին մէջ (Մատթ. Ուռհայեցի, տպ. Երուս. 1869, էջ 334, ձռգր. Ա. Թանդ. Nr. 9, էջ 436 եւն)։ Այլուստ ուրիշ տեղեկութիւն չունինք այս Միքայէլ եպիսկոպոսի մասին, որ Վարդանայ “հոգեւոր որդի„ ու սանն էր։

(1212) չորս տարի ետքը (1216ին) յԱյգեկ (տես վերը՝ § 316։) Առ միանձունս Սեաւ լերին գրած խրատականն երկու կտոր է, մին (անդ՝ Թղ. 165ա—171ա) կը խօսի “վասն տասն Համարոյ” եւ Ս. Երրորդութեան անձանց մասին. երկրորդը (անդ՝ Թղ. 171ա—177բ) “Վասն մարդեղութեան բանին Աստուծոյ” եւն, ուստի աւելի վարդապետական[1]. (տես § 322։)

Անցնինք իւր թղթոց առ կրօնաւորս. (տես § 323։) Առիթ ունեցանք յիշելու նաեւ Վարդանայ խրատական գրութիւնս Նորատի միանձանց, կամ “Յաստուածային սուրբ գրոց խրատք վասն վարուց առաքինութեան կարճ ի կարճոյ եւ համառաւտ միայն զբանիցն գրել ողորմելոյս Վարդանայ որ ի Մարաթառ, եւ այժմ ի ձորս Սուրբ լերինս միանձանց՝ առ մանկաբոյնս կրօնաւորս որ կան ի կարգս կրաւնաւորութեան եւ կամ միանձնութեան ի ծերպս վիմաց” եւն։ Այս

---

[1] Առաջինը կը սկսի (Թղ. 165ա) “Ո՜վ սրբազան առաջնորդք եւ քրիստոսընկալ քահանայք եւ կրաւնաւորք մաքրեցէք զսիրտս ձեր յաւելորդ սպաղմանց աշխարհի . . . եւ մաքրափայլ աղաւթիւք ձերովք աւգնական եղերուք ողորմելի ծերունոյս իմոյ եւ մտաց իմոց. որպէս զի կարացից իջանել ի խորս աստուածեղէն գրոց . . . եւ քննել վասն տասն Համարոյս” եւն։ Երկրորդը (Թղ. 171ա) կը սկսի՝ “Եւ ի վերջին աւուրս Բան Աստուած մինն յերից անձնաւորութենէն” եւն, վերջն ալ ունենալով Վարդանայ աղերսս՝ “Եւ աղաչեմ զամենսեան, կարդացէք զճառս զայս յորժամ լսէք զաւր մահուան իմոյ, եւ յիշատակեցէք զողորմելի անձն իմ աղաւթիւք եւ ի սուրբ պատարագին։ Եւ եղիցի գիրքս այս վարձ թաղման իմոյ ի ձեռս ձեր ամենեցուն։”

ալ երեք կտոր կամ ճառ է[1] (անդ՝ Թղ. 110ա—145բ), ինչպէս կը նշանակէ ինքն ալ (Թղ. 143բ) "Ես նուաստս յամենայնի յերիս ճառս կարգեցի զքանս խորհրդոց նորամուտ կրօնաւորաց մանկագունից եւ ոչ ծերոց"։ Ասոր մէջ Վարդան կը յիշէ տեղ մը Տիրան եւ Սահակ վարդապետները[2]։ Վարդան ուրիշ գործ մ'ալ ունի կրօնաւորութեան երէց կարգերու մասին (անդ՝ Թղ. 145բ—164ա,) որ հետաքրքրական գրուածք մըն է, եւ ուր Վարդան կը յիշէ նաեւ Սարկաւագի մէկ գործը[3]։ Ասկէ կ'իմանանք մեր այն ժամանակի անապատներուն ներքին կեանքը,

---

1 Առաջինը (անդ՝ Թղ. 110ա—126ա) կը սկսի՝ "Հայր անսկիզբն լոյս անստուերին" ևն. երկրորդը (Թղ. 126բ—141բ) "Դարձեալ ի նոյն խորհուրդ յաստուածաշունչ գրոց. խրատք ոգեշահք կարճ եւ համառաւտ առ մանկագոյն կրաւնաւորս որ գան ի կարգս յայս։ Ծագումն եւ ճառագայթ անճառ" ևն. երրորդն ալ (Թղ. 141բ—145բ) "Դարձեալ ի նոյն բան խրատուց" ևն։

2 Այսպէս (Թղ. 131ա—բ) "Եհարց զայս ոմն բարեպաշտ իշխան ի տանէն Հայոց ընդ իմաստուն վարդապետն Հայոց Սահակ եւ ընդ Տիրանայ, եւ նոքա գրեցին առ նա ասելով. Թէ ով բարեպաշտ իշխան, ոչ է հնար թէ կարէ տուն իշխանի մնալ առանց զրկանաց եւ կամ տուն թագաւորի կամ առաջնորդի, եր որ կամաւ զի հարկն պահանջէ, եւ է որ ակամա զի ոչ կարէ իմանալ զիրաւունսն, եւ է որ ի գործաւորացն խստութենէ եւ չարութենէ, եւ է որ յաւարէ եւ յափշտակութենէ եւ եր որ ի գողութենէ եւ եր որ բռնութեամբ եւ քինով։" Տիրան վարդապետի մասին գրեթէ ոչինչ գիտենք, տես Հ. Զարբհ., Հայկ. Հին Դպր. Պատմ., Վենետ. 1897, էջ 793—794։

3 Տես Թղ. 162բ—163ա "Որպէս իմաստուն վարդապետն Հայոց կոչեցեալն Սարգաւագ գրեաց ի խրատական ճառս երից եղբարցն, որ եկեալ հարցին զնա վասն բարի վարուց եւ կրաւնից եւ կարգաց։"

յատկապէս այգեգործութեան եւ պարտիզպա-նութեան ծաղկիլն այն տեղերն, որով յաճախ կռուի ու վէճի առիթ կը տրուէր։ Այսպիսի վէճի մ՚առթիւ տեղեկութիւններ կու տայ Այգեկի անապատին մասին, վերջերն ալ աւար-տաբանական յիշատակագրութիւն մ՚աւելցընե-լով, որ յայտարարէ խոնարհական բարուց Վար-դանայ։ Կ՚արժէ որ զասոնք համառօտիւ յառաջ բերենք։

(Թղ. 162ա – բ) "Ասա ինձ, որդեակ, թէ ընդէ՞ր ելեր աշխարհէ կամ ի [illegible], յոր-ժամ պիտոյ էր քեզ [illegible]։ Ահա խաբեցեր զմարդիկ եւ զԱստուած, խաբեցար եւ դու. զի չես [illegible]. զի ուր [illegible] աւելի քան զպէտսն եւ այգի եւ դրախտն տնգի եւ բուծանի վաստակով եւ ջրով եւ [illegible] եւ ի տուընջեան զուչէ [illegible] առ ի պահպա-նութիւն մրգոցն եւ ոգկուզացն. Եւ ի վերայ այսոցիկ այլ մեծագոյն կորուստ, զի [illegible]. [illegible] ոչ է այնպիսի վարքն միայնակեցի, այլ աշխար-հականի։" — (Թղ. 153ա - 154ա.) "Ով որդեակ իմ, եղեւ այսպիսի խռովութիւն եւ վէճ եւ մա-խանք ի [illegible]։ Քանզի բազում [illegible] գեղեցիկ [illegible] որ բացին եւ սրբեցին զանապատս, որ ի [illegible] է [illegible]։ Եւ այս [illegible] է զի տնգեաց սատանա մախանք ի միջի մերում եւ նախանձ ի վերա մրգաբեր ծառոց եւ վէճ եւ աղաղակ, եւ մեծ պատերազմ ունէր զմեզ եւ տրտմութիւն զայս երկու ամս, եւ ելք ոչ կարէաք գտանել ...։ Եւ եկեալ եղբարքն յեկեղեցի ի մատս կիւրա-կէին եւ խորհեցաք թէ շահ ինչ ոչ կայ մեզ ի

---

[1] Ըստ այսմ, քանի որ Վարդան կը գրէ 1216էն ետքը, Այգեկի հիմնարկութիւնն ըլլալու է՝ ամէնէն կանուխ 1176ին։

մխիթարերաց. որդ խաղաղութիւն էր ի մեզ...։
Եւ զայս առաջեալ եղբարցն եւ գիտեալ իւրա-
քանչիւր ի տապար իւր եւ սուր ի վերա եդեալ
[illegible]
[illegible] Թ. [illegible]
[illegible]
[illegible]։ Եւ ես մեղաւորս քաջալերէի զեղբարսն
թէ մի երկնչիք. զի այս վարձք է եւ ոչ դատա-
պարտութիւն. պարծանք է անապատիս եւ ոչ
նախատինք։ Եւ զայս արարաք եւ [illegible]
[illegible]. եւ եղեւ խաղաղութիւն յայժ
ողորմութեամբն Աստուծոյ։„ — (Թղ. 159բ—
160բ.) "Եւս առաւել առ իս ողորմելիս քան
զամենայն կարգաւորս։ Զի [illegible]
զօք ցուցի եւ աւտար գտա ի բարեացն որ գործի
յերեք սահմանս մեր...։ Բայց ով մանկունք
Նորոյ Սիոնի ... գիտեմ որ ի միտս ձեր ունչս
առնէք եւ քամահէք զբանս իմ ասելով թէ
Դու [illegible] ... եւ չես
ժամանեալ ի կարգ աշակերտի եւ դարձեալ վար-
դապետես մեզ պաւրէնս Աստուծոյ, զոր դու ոչ
պահեցեր. ժամ է քեզ լռել եւ պապանձել, զի
ձանձրացան լսելիք մեր եւ տաղտկացան սիրտք
մեր ի քո ընդվայր շատաբանութենէդ։ Նաեւ ոչ
այլ ինչ խորինս եւ անծանաւթս պատմես մեզ,
բայց միայն զոր քաջ գիտեմք ի մանգութենէ
մերմէ։ Իսկ ես հաւանիմ եւ արդարացուցանեմ
զմտածութիւն ձեր զոր կարծէք վասն իմ։ [illegible]
[illegible] ի մէջ
աշխարհի խոստովանելով մինչեւ ի լրումն ժա-
մանակաց թէ տգէտ եմ եւ բազմամեղ։ Եւ զի
լցաւ երկիր գիտութեամբն Աստուծոյ ըստ բան-
սացութեանն Սողոմոնի եւ Եսայեայ, եւ արդ
ես ուստի՞ կարացից նորագոյս ինչ պատմել ձեզ...։
(Թ. 160բ—161ա) Նա եւ շունք պահեն զհաւտս
ոչխարաց եւ զդրունս յաւազակաց, եւ չար փշաւք
զայգի եւ զդրախտ ամրացուցանեն. եւ չար ծառայք
շուրջ զքաղաքաւ փոսս հատանեն, որպէս զի ան-
վնաս մնասցեն բնակեալքն ի նմա։ Նաեւ զսուրբ
ղաւակ քահանայի սնուցանէ դայեակ պոռնիկ.
եւ անկերպ յեսանն զսուր հատանող առնէ ի
պէտս մեր. եւ զազրատեսակ ճրագն լոյս արձակէ
եւ զխաւարն հալածէ. անպէտ գայլախազն եւ
փոքր երկաթն հուր պարգեւեն ի սպասաւորու-
թիւն կենաց մերոց։ Այսպէս համարեցարուք

*եւ դուք զիս եւ զբանս իմ, ով որդեակք, եւ Աստուծոյ լերուք շնորհակալ„ եւն։*

Վարդանայ մահուան տարին (տես § 324) ճիշդ չենք գիտեր։ Մինչեւ հիմայ յառաջ բերուած տեղերուն մէջ յաճախ տեսանք որ Վարդան կը յիշէ իր ծերօ–Ըփ–նն, աչաց լուսոյ նուազիլն, իր "զառանցեալ ալեւոր„ ըլլալն եւն, եւ այսպիսի խօսքեր կը գտնենք ուրիշ տեղեր ալ։[1] Միւս կողմանէ ինքը կ՚ապրէր տակաւին Մոնկոլաց յԱսորիս՝ արշաւանաց ժամանակ, որուն համար կը գրէ իր Խրատուց մէջ (անդ՝ Թղ. 168բ—169) "Ապա յիշրաւի բարկացաւ Աստուած աշխարհիս եւ ընջեաց զազգս մարդկան ի ձեռն անծանօթ էւ խօ–ժաղ–ուժ ողէպոյն զոր էհան յուրե–էւլէյ, իսկ որ ջանայ եւ յայս դառն ժամանակս բարի գործէ, նայ շատ ուրախանայ Աստուած եւ մեծ վարձք տայ նմա, որպէս պատուական է ծաղիկն եւ ցանկալի զորն ի սիրտ ձմերանն գտանեն ի մէջ սառնացեալ ձիւնի„ եւն։ Մոնկոլաց ի Հայս արշաւելն էր 1220ին եւ երկրորդ անգամ աւելի սաստկութեամբ 1222ին. սակայն Վարդան հոս կ՚ակնարկէ ոչ թէ իրեն համար հեռաւոր այն արշաւանքն ի Հայս, այլ յԱսորիս՝ որ եղաւ 1235ին (որուն

---

[1] Այսպէս ձռգր. Բերլինի (Քարամեանց Թ. 80, Թղ. 176բ) "Ապա քահանայք եւ ժողովուրդք Աստուծոյ, այս ձեզ սակաւ մի բանք ի պատուիրանացն Աստուծոյ մերոյ . . . վասն որոյ կարճ եւ համառօտ գրեցի, որ կարէ իմանալ տխմարն եւ տգէտն. եւ մի մեղադրէք, զի չէ բանքս զերդ որ պատեհն է, զի ծերօ–Ըփ–նօ էւ յէրէյոր ցու–փօ կուրացոյց զմիտս եւ զաչս իմ„ եւն։

մասին հմմտ. Գրիգոր Աբուլփարաջ, Պտմ. Հարստ. էջ 318, 333). ուստի այս տարին կը գրէր տակաւին։ Մանաւանդ թէ շատ ուշ թուական մ'ալ կու տայ իւր վասն Շնութեան ճառին Դրազարկեան խմբագրութիւնն (ձոգր. Էջմ. Թ. 1767, Թղ. 1ա), ուր կ'ըսուի՝ "Ապա ստոյգ վայ մեզ զի այս ՌՄՀԵ (= 1275) ամ է ի խաչելութենէն Տեառն մինչեւ ի մեզ. որ զօրհանապազ քարոզեն մեզ ամենայն սուրբքն եւ ընտրեալ արդարքն Աստուծոյ եւ ասեն թէ ողորմեցարուք անձանց ձերոց եւ ելէք ի մեղաց, զի հուրն անշէջ է եւ որդն անքուն. իսկ մեք ոչ լսեմք ձայնի քարոզողացն եւ ոչ ելանեմք ի չար գործոց մերոց։" Սակայն ստուգիւ 1275ին կ'ապրէր Վարդան։ Շատ անհաւանական է, այնու մանաւանդ որ յիշեալ թուականը յայտնապէս մուծուած է որ եւ է գրչէ մը. միւս օրինակն՝ բուն Վարդանայ խմբագրածն՝ որ եւ է թուական չունի հոս։[1] Նկատենք որ ըստ Գոշի (Դատաստանագիրք, տպ. Էջմ. 1880, Ա, կ, էջ 160—161) ձեռնադրութեան տարիքն էր 30 տարին, որ եթէ պահուած համարինք Վար-

[1] Միւս խմբագրութիւնն (Էջմ. Թ. 1631) այսպէս ունի՝ "Ապա վայ մեզ, ով որդեակք, զանզի զանէ՞ ամ է ի խաչելութենէն Տեառն մինչեւ ի մեզ. եւ հանապազ լսեմք զհրամանս Աստուծոյ մերոյ, այլ եւ զամենայն սրբոց նորին, որ եւ սպառնալեաւքն քարոզեն զդժոխքն, եւ մեք ոչ դառնամք ի չար գործոց։" Բաց աստի այն ՌՄՀԵ թուականը չէ ի ծննդենէն Քրիստոսի, այլ "ի խաչելութենէն", որով կ'ունենանք (1275+33) ԺԴ. դարու սկզբէն 1308 թուականն, որ մեր Վարդանայ համար անհնար է։

դանայ վրայ ալ, այս տարիքն անցած ըլլալու էր՝ երբ տարիներ հոգւոց հոգ ունէր յԱմիթ եւ յետոյ Դլուկ, ուստի հալածուելով երկու տարի թափառելէն ետքը՝ 1212ին ապաստանեցաւ յԱյգեկ։ Բայց արդ ինքն արդէն ծեր էր երբ յԱյգէկ կը գրէր իւր խրատական թղթերն, այսպէս երբ անկէ Սուրբ լերան միանձանց կը գրէր թէ "աղաւթիւք ձերովք աւգնական եղերուք ողորմելի ծերունեան ինձ„ . Նոյնպիսի խօսքեր իւր թղթերուն մէջ առ Մխքայէլ դարձեալ Այգեկէն. դարձեալ մահուան ճառին մէջ (ձուգր. Լազ. ձեռ. Թ. 63, Թղ. 73ա—75բ) նոյնպէս Այգեկ գրուած, ուր կ՚ըսուի "ես ծերացեալ ալեւորս„ եւ նմաններ, ինչպէս յիշեցինք։ Վարդանայ մահուան ժամանակին տեսակէտով կարեւոր է Յովհաննու Երզնկացւոյ մէկ խօսքն իւր "վասն Յիշոցնատուաց„ ճառին մէջ (ձեռ. Էջմ. Թ. 1631, Թղ. 133) ուր կ՚ըսէ՝ "Ես սուրբ Հայրն մեր մեծ վարդապետն Վարդան յետ կենդանութեանն բազում անգամ ժողովք արար եւ զնոյն կանոնք հաստատեաց որ՝ կաթողիկոս կամ եպիսկոպոս կամ վարդապետ կամ երէց՝ չունին իշխանութիւնն զյիշոցատուն կամ աւրհնել կամ հաղորդել կամ թաղել կամ զտղայսն կնքել կամ պսակել. որ չտան զուրբութիւն շանց՝ եւ ինքեանք նոցա մեղացն եւ նզովիցն կցորդ լինին։„[1] Յովհ. Եզնկացի որ իբր 1250ին

---

[1] Տես Հայագիտուխ գործոյն՝ Հտր. Գ. 22։ Վարդան նոյն նիւթոյ մասին խօսած է ի ճառին վասն յիշոցաց

ծնած կը համարուի, հոս մեր Վարդանայ մասին կը խօսի, եւ անհնար չէ որ Եզնկացի աշակերտած ըլլայ Վարդանայ, ինչպէս կ'աւանդուի, որ իւր վերջին տարիները քաշուած առանձնացած էր ըստ Սոմալի (էջ 115) Սեպուհ անապատը, ըստ Ջարբհանելեանի[1] “Հաղբատ եւ Սանահին վանաց մէջտեղ Կայենոյ ձոր ըսուած տեղը, եւ հոն եղող պզտի վանքին մէջ քաշուելով՝ քովը յաճախող աշակերտաց դաս կու տար: Ցովհ. ալ գնաց, ու հաւանական կը կարծուի թէ ինչուան Վարդան վարդապետին մահը անոր քով կեցաւ:„ Եթէ ճիշդ է այս աւանդութիւնը կամ ստուգիւ Դբ Վարդանն է յիշուածը[2], այն ատեն Վարդան կ'ապրէր 1250էն ետքն ալ: Ցամենայն դէպս երբ Եզնկացի կը գրէր իւր յիշեալ “վասն յիշոցնատուաց„ ճառը՝ շատոնց մեռած էր (հմմտ. “յիւր կենդանութիւնն„ եւն.) սակայն ե՞րբ գրած է Եզնկացի (ծն. 1250, † 1326ին) յիշեալ ճառը. որոշ չի գիտցուիր:

Վարդանայ գրաւոր գործունէութիւնը շատ արգասաբեր եղած կ'երեւայ (տես § 325):

---

(Ձռգր. Լազ. Ճեմ. 63, թղ. 42բ–43ա), ի խրատուն առ եկեղեցականս եւ աշխարհականս (անդ՝ թղ. 41ա) եւն։

[1] Տես “Հայկ. Հին Դպր. Պատմ.„ տպ. Բ, 733, տպ. Գ, 755:

[2] Որ կ'երեւայ թէ անհաւանական է. վասն զի յիշեալ Վարդան վարդապետն ուսուցիչ Եզնկացւոյ կը համարուի Վարդան Մեծ († 1271), եւ այս կը յարմարի Եզնկացւոյ մասին միւս աւանդուածներուն ալ. (հմմտ. նաեւ Ջամչեան Գ, 271–73 եւն):

Բաց ի իւր վերոյիշեալ գործերէն՝ կրնան տակաւին շատ ուրիշներ գտնուիլ,[1] յատկապէս խրատականներ եւ առակախօսականներ. սակայն ցայսօր ծանօթ ձեռագիրքն ի հարկէ շատ պակասաւոր կերպով կը պարունակեն իւր գործերը, մանաւանդ որ ասոնք գրուած են ի Հայս, մինչդեռ Վարդանայ գործունէութեան շրջանէն դուրս են ըստ ինքեան ոչ միայն բուն Հայք, այլ մասամբ նաեւ հայկական Կիլիկիա, ինքն ծնած ու ապրած ըլլալով Ասորիք ու Սեաւ լեառն, յետոյ ի Կիլիկիա: Այն տեղեաց ձեռագիրներէն կրնայ տակաւին շատ բան յերեւան գալ:[2] Վարդանայ խրատական գլխաւոր գործն է ԻԲ ճառով կամ գլխով գրութիւնն, զոր

---

[1] Այսպէս Բերլինի մէկ ձեռագրին մէջ (Ms. or. Petermann I, 141, Քարամեանցի "Ցուց." թ. 88, էջ 71) կայ ա. (թղ. 165–68բ) "Վարդան Վարդապետի Այգեկցւոյ Խրատ ամենայն քահանայից եւ ժողովրդոց: Արարիչն Աստուած ոչ ետ բաժինս" եւն: — բ. (թղ. 168բ–76բ) "Վարդան վարդապետի ասացեալ խրատ աստուածաշունչ գրոց: Ո՛վ որդեակ, վերջին է ժամանակս" եւն. — գ. (թղ. 194–96) "Վարդան վարդապետի ասացեալ վասն քաւութեան", եւ նմաններ: Շատ բան "Վարդան" անուամբ տես մեր Մատենադարանն ալ. այսպէս թ. 352 եւն ("Ցուցակ" 804–805. եւ ընդհանրապէս 1155:)

[2] Շատ կարելի է որ Վարդանայ Այգեկցւոյ գործերէն նորանոր բաներ գտնուին Սսոյ Կաթուղիկոսական մատենադարանին բազմաթիւ ձեռագրաց հաւաքման մէջ (տես V. Langlois, Voyage à Sis, ի թերթին Journ. As. 1855, V, 291–96, թիւք 19, 22, 24, 29, 46, 103, 106, 108 եւ 125:) Յատկապէս հետաքրքրական է ԺԶ. դարու ձեռագիր մ'որ ունի Un recueil de Fables (անդ՝ էջ 291, թիւ 27) եւ ուրիշ մ'անթուական, որ է Recueil d'histoires diverses (անդ՝ էջ 296, թիւ 127:)

*Այգեկէն ուղղած էր Պաղտուինի, ինչպէս յիշեցինք։ Ցետոյ Դրազարկ եղած ժամանակ Երկրորդ անգամ խմբագրած է զայն Վարդան. եւ այս խմբագրութեան սկիզբն իբրներածութիւնը կցած է վասն "Ժ վաճառականաց" խրատական առակները։ Հետաքրքրական յիշատակագրութիւն մ'ալ պահուած է (ձեռ. Էջմ. 1767), ուր կը նկարագրէ Վարդան թէ ինչ դժուարութեամբք միայն յաջողած է այն առակները գրելը։ Ահա ասոր կարեւոր կէտերը։*

> *"Ողորմելիս Վարդան, որ է Մարաբայ, է միայնաւոր եղէ՝ ի սահմանս աստուածաբնակ ուխտիս որ կոչի Դրազարկ, [կամեցայ] յետ այսոցանիւ ժամանակաւոր բանիւ վաճառականաց (վաճառականս) եւ զմի որոգայթս առաջի նոցա եւ գտանել Ը մեղս նման յորոգայթսն եւ այն Ը մեղաւքն խաւսել առ ձեզ, ով քահանայք Աստուծոյ եւ բարեպաշտ իշխանք եւ հաւատացեալ ժողովուրդք Քրիստոսի Աստուծոյ մերոյ, եւ յայն ութ մեղք ժողովել զամենայն մեղս եւ զամենայն բարեգործութիւնս։ Եւ յոլով աւուրս աշխատեցայ եւ բազում անգամ ասէի ես ոչ յաջողեցաւ բանն. եւ տրտմեալ վարանեցայ, եւ իմացայ ստոյգ որ անբաւ անաւրէնութիւնք իմ խաւարեցոյց զմիտս իմ, եւ փակեալ կապեաց զլեզու եւ զշրթունս իմ։ Իսկ անոխակալն Աստուած ոչ արար ըստ մեղաց իմոց, այլ հայեցաւ յաւգուտն։ Եւ տեսի ի քուն գիշերոյ, եւ ահա բերան իմ լցաւ ոսկւ այծի մազով...։ Եւ ահա զարթեա յանկարծակի, եւ աւրհնաբանեալ փառաւորեցի զԱստուած որ ...եցոյց զձրի շնորհս իւր առ անարժանս. քանզի սովոր է մարդասէրն Աստուած ի ձեռն մեղաւորաց առնել զփրկութիւն բազմաց. որպէս այն որ յոտս լերինն Սինէական Ցաւղդատ եւ Մովդատ մարգարէացան... Նաեւ Սաւուղ մարգարէացաւ, եւ զայս վասն այնր առնէ Աստուած զի ճանաչիցեն մարդիկ թէ [է] Աստուծոյ շնորհն, եւ զնա պարտ է աւրհնաբանել եւ փառաւորել եւ ոչ զմարդ։ Եւ ապա սկսայ եւ անաշխատ յար-*

մարեցի եւ գրեցի կարգաւ ժ վաճառականս եւ Ը առակաւոր արարայիս առակի նոցա, եւ Ը ծղա եւ ղարառակս Ըն ձ առ ձ, ընդ ծղան խորհրդառոր հածմարեցի եւ պարթանիս առընթեր ծղաց եդի, այս Գ կարգեւաւն ։ (Տես Հայագիտին՝ էջ 325—7։)

Ըստ այսմ, իրեն իսկ Վարդանայ խոստովանութեան համեմատ, երկու անգամ երկասիրած է յիշեալ գործը, մէյ մը Պաղտունին համար, երկրորդ անգամ ի Դրազարկ՝ աւելցընելով առակները կամ „ժ վաճառականքն„ ։ Վերջին խմբագրութիւնս ալ երկու կերպով կը գտնուի ձեռագրաց մէջ, միոյն մէջ (N) պակաս է ներածական բաժնին մեծ մասը (տես Հար. Գ., 67—70, ռուս Թրգմ. Հոս Ա, 329—32), միւսը (O) չ'աւարտեր չի լմնցներ քանի մ'առակներ ։ Ընդհանրապէս կրնայ ըսուիլ որ Վարդանայ սիրական գրական ճիւղն եղած է խրատական գրութիւններ համեմուած առակներով, զրոյցներով եւն, որոնցմէ բարոյական խրատներ կը հանէ. Թէպէտ եւ կան խրատներ նաեւ առանց զրոյցներու եւն, եւ այս ամէնը պէսպէս ձեւերով յաճախ ։[1] Ըստ երեւութին ասոնց շատերն այնպէս են որ կրնան շատ լաւ քարոզ ըլլալ՝ արտասանուած եկեղեցւոյ բեմէն, զորոնք յետոյ

---

1 Այսպէս „վասն անիրուն որդանց„ ճառը կայ երկու խմբագրութեամբ, համառօտ (ձռգր. Լազ. ճեմ. Թ. 1172, Թղ. 210բ—222ա) եւ ընդարձակ (ձռգր. Լազ. ճեմ. Թ. 1192, Թղ. 56ա—62ա)։ Ասոր մէջ բաց ի Ներսէսի, Եսայեայ, Եզրայ տեսիլներէն կը յիշուի Բենիկ ալ (Թղ. 57ա) „Բենիկ վարդապետն ասէ թէ տեսանէի եւ ահա ծով հրեղէն գայր եւ ծածկէր զաշխարհս„ եւն։ Տես նաեւ մեր „Ցուցակ„ էջ 17, եւ նմաններ։

գրոց վերածած է եւ ջանացած տարածել։ Այս վերջին պարագայս տեսանք արդէն ի Թղթին առ Միքայէլ, ուր անոր վրայ պարտք կը դնէ իւր գրուածներն "շրջեցուցանել„ Անտիոքայ եկեղեցին (տես § 321), նոյնը կը կրկնէ ուրիշ տեղեր ալ, այսպէս երբ կ'օրհնէ զանոնք "որք տանէին եւ բերէին զգիրս ի Հեռաւորս, որք լսէին եւ աւանդէին, անուն եւ դնէին աւրինակ եւ փոխէին ի գաւառէ ի գաւառ, յաշխարհէ յաշխարհ„ եւն (տես § 326)։

Ահա Վարդանայ անձին եւ գրաւոր գործունէութեան մասին մեր բոլոր գիտցածը։ Եթէ առակաց բազմազան հաւաքումները Վարդան մը կը յիշեն իբրեւ առակագիր, այն է միայն մեր Վարդան Այգեկցի։ Կը մնայ ուրեմն այժմ քննել սոր առակաւոր գրուածքները՝ համեմատելով առակներուն հաւաքմանց հետ եւն, եւ այս է նիւթ յաջորդ գլխուն (տես § 327)։

7.

"Առակք Վարդանայ Այգեկցւոյ„ նիւթ է եօթներորդ գլխուն (§ 328—380։) Վարդանայ Այգեկցւոյն վարուց եւ գրուածոց վրայ խօսելէն ետքը կը մնար անոր առակաւոր խրատները տեսնել, ընդհանրապէս այն ամէնը՝ զոր Հայագէտն հրատարակած է երրորդ հատորին մէջ՝ խորագրով "Առակք Վարդանայ Այգեկցւոյն„ (Գ, 67—93;) բնականապէս ճոխացընելով ատաղձն նաեւ ուրիշ կողմանէ ալ որչափ կարելի էր։ Ուստի մի առ մի բոլոր նոյն առակները

յառաջ բերուած են ռուս թարգմանութեամբ, համեմատուած համապատասխանութիւններու հետ յատկապէս առակաց միւս Հաւաքմանց մէջ, պարունակութիւնը լուսաբանուած, աղբերքը նշանակուած, եւն։ Նախ այսպէս ուսումնասիրուած են “Ժ. Վաճառականաց„ առակաւոր գրուածն եւ յարակից միւսները՝ “Կրեայք եւ Խեցգետինք„, “Քրիստոս եւ ԺԲ բեւեռքն„, “Ո՞վ է բոլորագոյն„, “Մեծատուն եւ Մշակք„, “Երեք խեւ եւ աղուաշ արք„, “Արծաթասէր եւ գանձք„, “Թէ որպէս երեւցաւ ախտ շնութեան„, “Մեծատուն եւ քեռորդին„ եւ “Գորտ որ գիտէր զբժշկութեան արուեստ„. ուստի հատածքն Ա—ԺԱ (բնագիր՝ Հտր. Գ. 67—83 քննութիւն՝ § 328—339։) Սակայն հայագէտը կցած է տակաւին հինգ ուրիշ առակներ ալ՝ բնականաբար քաղելով Վարդանայ այլեայլ խրատական գրուածներէն, յատկապէս յաճախ յիշուած Աս. Թանգ. ձեռագրէն զոր հայագէտն 1893ի ուսումնական ուղեւորութենէն հետը բերած էր։ Այսպէս “Առակ երկրորդ„ կամ առակն Այծերու թզթոյն առ գայլս, Թագուհի եւ թագաւոր, Քարադր, Մեղք, Մրջմունք եւն, որոնց հայերէն բնագիրներն ալ հաղորդուած են (§ 340—345, առակաց թիւք ԺԲ—ԺԶ)։

Կայ սակայն երկրորդ կարգ մ'ալ համառօտ հաւաքման առակաց Վարդանայ, աւելի մանր կտորներ, զորոնք նոյնպէս յարակից առաջնոյն հրատարակած է հայագէտը (Հտր. Գ,

83—93) մի եւ նոյն (M եւ N) ձեռագիրներէն։ Ասոնք տասնեւեօթ հատ են, այսինքն՝ Իշառիւծ, Առիւծ սուտ հիւանդացեալ, Արջ եւ խաղող, Ձմեռնանինջ երէ, Սակաւաջուր գորտունք, Մրջիմնառիւծ, Անուշահոտ բերան գազանի որ ի ծով, Թագաւոր եւ խոզ, Թագաւոր եւ շուն, Թագաւոր եւ շուն եւ շուքն, Որդի Թագաւորի եւ կուռք, Երկու Իմաստասէր, Կատու եւ մկունք, Մայր եւ գող տղայն, Հողագործ, Իշխան եւ արագիլ, Մրջմունք եւ փայտք, Ճիճի եւ մեղու (Ա—ԺԶ)։ Բնական էր որ ասոնք ուսումնասիրուէին նախընթացներու պէս, յառաջ բերուելով ռուս թարգմանութեամբ, համեմատութեամբ նիւթին ուրիշ հաւաքմանց, եւ աղբիւրները նշանակելով (տես § 346—363։) Խորհրդածութիւններով համառօտ հաւաքմանց խմբերու մասին (յատկապէս ա եւ բ), ի մասնաւորի նշանակելով Վենետկոյ Թ. 1108 ձեռագրին՝ որ 1318ին գրուած է՝ հաւաքումն խորագրովս "Առակք զոր ասեն իմաստունքն", կը փակուի այս մասն (§ 364—366)։

Ցատկապէս յիշեալ "բ" հաւաքման համար այն եզրակացութիւնը կ'ելլէ որ նախ այն՝ Էֆրեւ Հաստատածն՝ Վարդանայ վերաբերելուն ուրիշ ապացոյց չկայ, բայց այն միայն որ կը գտնուի նոյնը մի եւ նոյն ձեռագրին մէջ հեղինակին վաւերական միւս գրուածոց հետ։ Սակայն երկրորդ՝ նոյն հաւաքման առակներն առանձին առեալ՝ ամէն կողմանէ, նաեւ խմբագրութեան եւ լեզուի տեսակէտով, ստուգիւ Վարդանայ կը պատկանին։

կը մնայ խնդիր մը, որ կարեւոր կէտ մըն է մեր գրականութեան պատմութեան համար, այսինքն այն որ՝ Վարդանէն յառաջ չե՞ն եղած հայ մատենագիրներ, որոնք նպաստած ըլլան առակագրութեան եւ նոյն ճիւղի զարգացման։ Ահա այս խնդիրը մանրամասն կ'ուսումնասիրէ հայագէտն երկար հատածով մը. (§ 367։) Մինչեւ Վարդան հայկական ուրիշ խրատաբան-առակախօս հեղինակ մը չի գտներ քննիչը, մի առ մի աչքէ անցընելով այլ նշանաւոր խրատաբանները։ Նման նիւթեր անշուշտ անծանօթ չէին, մանաւանդ թարգմանականք ("Բարուախօս" եւ նմաններ, Բարսղի "Վեցօրեայ" իւր "բարուախօսական տեղեկութեամբք"), նոյնպէս առանձին առակներ, մանաւանդ նմանութիւնք եւն։ Այսպէս Յովհ. Մանդակունի ըստ երեւութին առակ մը մեր առջեւ կը դնէ[1], որ սակայն յատկապէս առակ մը կրնայ չըլլալ։ Թերեւս Յովհաննու Օձնեցւոյ խրատականաց մէջ կրնան առակներ գտնուիլ, որուն մասին Թ. դարու պատմագիրն Յովհաննէս Կթղ. (†925) մեծ գովութեամբ կը գրէ (տպ. Երուս. 1867, էջ 128—9) թէ "այլ եւ ճառս եւս քննախօսս բանա-

---

1 Տես Մանդակունւոյ ճառք, տպ. Վենետ. 1860, էջ 125—126։ "Այսպիսի ինչ է զոր ասեմս. որպէս թէ դիպեսցին երկու աւձք չարաթոյնք եւ զմինն թունաւոր կարծիցէ եւ փախչիցի ի նմանէ եւ ի միւսն աներկիւղ մերձենայցէ որ զնոյն չարութիւն մահաբեր թունիցն ունիցի եւ չարամահ սպանանիցէ. նոյնպիսիք են որ զմի ի պատուիրանացն լսեն եւ պահեն երկիւղիւ եւ զհաւասարն նորուն արհամարհեալ անարգեն եւ նովին չարաչար կորնչին։"

«փէղծ» յարդարեալ զղջացուցիչս չար գործոց եւ յորդորականս ի պէտս ապաշխարողական սակի„, եւ որ “տեղեակ գոլով բոլոր քերթողական շարագծաց„, յատկապէս “կրթական վարժից Թէոնականաց„[1] եւն։ Սակայն եթէ Օձնեցի խրատականաց մէջ առակներ ալ խառնած ըլլայ, հաւանօրէն սահմանափակ չափով ըլլալու է եւ ոչ ալ յօրինուածաբար. եւ արդէն ոչ այն ժամանակ եւ ոչ յաջորդներուն քով մինչեւ ԺԲ. դար կը տեսնուի նոյնը։ Ս. Թանգարանի մէկ ձեռագիրն (Marr Nr. 5) հետաքրքրական “Խրատ„ մ'ունի Խոսրովու անուամբ (Թղ. 93ա—98բ) հաւանօրէն Խոսրով Անձեւացի.[2] դարձեալ խրատ մը Մովսէսի (Թղ. 98բ—101բ)՝ լեզուէն դատելով գործ ԺԳ—ԺԴ. դարուց, այնպէս ինչպէս ձեռագիրն ալ գրուած է 1320ին։ Նոյն Մովսիսի անուամբ ուրիշ կտոր մ'ալ կայ հոն (Թղ. 101ա—109բ). եւ թէեւ երկուքին մէջ ալ առակներ կը պակսին, գոնէ Մովսէս կը գործածէ “առակ„ բառը յատուկ կերպով մը[3]։ Նոյն ձեռագրին մէջ (Թղ. 33ա—58ա) կը գտնենք

---

1 Այսինքն Թէոնի “նախակրթութիւնքն„ (προγυμνάσματα). տես Baumgartnerի քննութիւնն “Պիտոյից„ գրոց՝ ի ZDMG 1886, էջ 465։

2 Թերեւս այս խրատը գտնուի այն “Բանք երանելւոյն Խոսրովայ„ խորագրով բովանդակութեան մէջ, զոր ունի ձեռագիր մը Բարձրահայեաց Ս. Աստուածածին վանաց՝ Թ. 229. (տես Ջարբհ., “Հին Դպր.„ Ա. 519, երրորդ տպ. 537)։

3 Տես Հայագիտին քով էջ 376 (ձռգր. Թղ. 104ա,) սակայն ձեռագրին “էր բան առակին„ կարդալու է “երբ անառակին„, ինչպէս ուղղած է Հայագէտն ալ։

“Անանիայի Հոգէնուագ իմաստասիրի Խրատք ոգէշահ զղջման եւ արտասուաց[1]„, որ լեզուէն դատելով Ժ. դարու գործ կ'երեւայ։ Ասոր մէջ Անանիա յաճախ Վարդանայ խրատներու նմանութիւն մը կը ցուցընէ. յատկապէս աղօթքի ձեւով հատած մը (Թղ. 44ա—45ա, բնագիրը տես էջ 377) նիւթոյ կողմանէ նոյն է Վարդանեան “Ձմեռն եւ գարուն„ առակին հետ (տես § 189.) ուրիշ նմանաբանական հատած մը կարեւոր է այնու որ իւր համեմատականն ունի քիչ մ'ետքն յիշելու Մեսրոպայ խրատաբանի քով[2]։ Նշանաւոր է Ժ. դարու “Սրբոյն Գրիգորի Նարեկացւոյն ասացեալ„ մէկ խրատն (Լազ. Ճեմ. Թ. 1192, Թղ. 248բ—271ա) իւր մէկ տեղովն որ “Բարուախօսի„ պատկերները կը պարունակէ համառօտիւ[3]։ Յովհաննու Սարկաւագի “վասն քահանայութեան„ խրատներուն մէջ, որ 1343ին

1 Զարբհ. “Հին Դպր.„ եւն, էջ 516, Գ. տպ. 538 երեք տեսակ խորագիր կը յիշէ ճառընտիրներէն, մին Անանիայի Նարեկացւոյ անուամբ (Ժ. դար)։ Համմ. նաեւ մեր “Ցուցակ„, 1057։

2 Այս կտորն է (Թղ. 42բ) “Զոր աւրինակ աման ինչ որ կեղտեալ եւ աղտեղեալ լինի. թէպէտ եւ ցանկալի կերակուր արկանեն, ոչ ոք կարէ ճաշակել։ Իսկ յորժամ ամանն մաքուր եւ սուրբ լինի, անդ թէպէտ եւ դոյզն կերակուր արկանեն, ախորժելով ընդունին։ Այսպէս եւ քո աղաւթքն եւ արտասուքն կերակուր է Աստուծոյ. զի զհոգիդ յախտից մաքրես յայնժամ։„

3 Անդ՝ Թղ. 259բ “Թէ ցանկասէր եւ իգամոլ ես՝ արջառոյ, ձիոյ եւ իշոյ ես պատկեր եւ ոչ Աստուծոյ. թէ հպարտ ես՝ առիւծոյ. թէ ոխակալ՝ ուղտոյ. թէ որկորեաւ ես՝ խոզի. թէ նենգաւոր՝ աւձի եւ աղուեսու. թէ գող՝ մկան եւ գայլոց։„

գրուած ձեռագրէն հրատարակուած են[1], Զ. գլխուն վերջը կ'ըսուի՝ "Արդ առ այս գլուխ բազումք են առակ բանից, բայց շատ առ այժմ այսքան"։ սակայն Սարկաւագ առակներ չի գործածեր, եւ նաեւ "առակ" բառս հոս ուրիշ կերպ մեկնելու է։ Ուրիշ խրատաքան մատենագիր մ'ալ կը գտնենք՝ Մեսրոպ վարդապետ, հաւանականօրէն ԺԲ. դարուն[2], որուն բազմաթիւ գրուածները պահած է Լազ. ճեմարանի յիշեալ ձեռագիրը[3]։ Հոս ի միջի այլոց "միայ-

---

1 Հրատ. ի "Սոփերք Հայկականք", Գ. (տպ. Վենետ. 1853.) տես անդ՝ էջ 30։ Ձեռագիրն յԵրզնկա գրուած ընտիր գրչութիւն մըն է ՉՂԲ — 1343) թուին. (տես անդ Յուշք։)

2 Հայագէտը (էջ 378) յառաջ կը բերէ սա խօսքը. (Թղ. 90ա) "Ցացէ Տէր Աստուած հաւատացելոց թագաւորացն զյաղթութիւն ի պատերազմունս եւ խնամակալութիւն առ ամենեսեան, զահ եւ զերկիւղ նոցայ ի սիրտս հակառակորդաց, եւ զաւրացուսցէ զսուսերս նոցա ի վերայ թիկանց թշնամեաց նոցա, եւ իշխանաց ձերոց փոյե Տէր Աօփօօօծ պէօղօօթէօն էօ ղօրէօօթէօն էօ պճօյրօյօն գօօթն էօ ղօէր օօ էօրէօնց էլխօնօօթէօն էօ էլխեցէօւր" եւն։ Ասկէ կը հետեւցընէ որ հեղինակն այն ժամանակ կ'ապրէր՝ երբ ի Հայս արքայութիւն չկար, այլ քաղաքուն իշխանաց վրայ էր պաշտպանութեան յոյսը, ուստի իբր Զաքարէ իշխանաց ժամանակ (ԺԲ. դար) մինչեւ Կիլիկիոյ արքայութեան սկզբնաւորութիւնքն։ Ի. խրատուն մէջ Մեսրոպ կը յիշէ "ժամահար" եւն, որմէ սակայն դժուար է հեղինակին գրելու ժամանակը ճշգրտել։

3 Ձեռագիրը (Լազ. ճեմ. Nr. 1192) իբր ԺԵ—ԺԶ. դարէն, ունի սա կտորները. (տես Հայագիտին քով՝ էջ 379–380). 1. (Թղ. 78բ—79բ.) "Նորին Մեսրաւպա վարդապետի ասացեալ յՂ. զղջման եւ արտասուաց։ Ո՜վ որ անեղդ ես" եւն. — 2. (Թղ. 80ա—90ա) "Նորին իմաստութիւն Սողովմոնի եւ շինութիւն տաճարին եւ այլ խրատ հոգեշահ բանից։ Եւ խաւսեցաւ Տէր ընդ Դաւթի," եւն.

նակեցաց„ մասին խօսելով կը գտնենք սա նմա-
նաբանականները (Թղ. 95ա) “այնպիսիքն ճրա-
գունք են առանց լուսոյ, աչք են առանց տեսա-
նելոյ, աղբերք են առանց ջրոյ, ծառք են
գաւսացեալ առանց պտղոյ, որք զանուանս ունին
եւ ոչ զաւգտակարութիւն.„ ուրիշ տեղ մը
(Թղ. 117բ—118ա) մեծ նմանութիւն ունի
Անանիայի իմաստասիրի վերը յիշուած տեղ-
ւոյն. (բնագիրը տես էջ 380—1։) ԺԲ. դարու
նշանաւոր խրատաբան-քարոզիչ մըն էր Յովհ.
Տարօնեցի՝ ժամանակակից Գոշի, որուն մասին
Կիրակոս Գանձակեցի (տպ. Վենետ. 1865,
էջ 106) կը գրէ թէ “եւ էր վարդապետն
Յովհաննէս շրջագայ տեղւոջէ ի տեղի շրջելով,
քարոզելով զբանն Աստուծոյ եւ ուսուցանելով
զբարի վարս մարդկան։„ ԺԳ—ԺԴ. դարէն նշա-
նաւոր խրատաբան մըն է Յովհ. Երզնկացի, զոր
յիշելու առիթ ունեցանք, եւ որուն եկեղեցա-
կան-վարդապետական “Խրատ հասարակաց„ը
նմանութիւններ ունի Վարդանայ խրատներուն

---

— 3. (Թղ. 90բ—95բ) “Նորին դարձեալ վասն ողորմու-
թեան որ առնեն աղքատին եւ տնանկին։ Դասք առաքե-
լոց„ եւն. — 4. (Թղ. 95բ—107բ) “Նորին վասն մահուն եւ
աւուրն դատաստանին եւ հատուցման գործոց բարեաց եւ
չարեաց։ Եւ արդ պարտ է յիշել զաւր մահուանն„ եւն. —
5. (Թղ. 107բ—109բ) “Պատճառք վասն այնորիկ որ զեկե-
ղեցին փակեն։ Քանզի եւ է այլ պատճառք վասն այնորիկ
փակեն զդրունս եկեղեցւոյ յաւուրս քառասնորդացն„ եւն։
— 6. (Թղ. 109բ—122ա) “Դարձեալ վասն պահոց եւ
աղաւթից եւ ճգնութեանց։ Ի հարկիւր եւ ի տասն սաղ-
մոսէն„ եւն. — 7. (Թղ. 122բ—124բ) “Նորին վասն սիրոյ
եւ խնամելով զմիմեանս ի կամս Աստուծոյ։ Դարձեալ
լուարուք զսիրոյ զաւրութիւն„ եւն։

հետ, բայց առանց առակի։ Բնականապէս չեն պակսիր նմանաբանութիւններ, ինչպէս հետեւեալ առակամերձ օրինակը (ձոգր. Էջմ. Թ. 1631, Թղ. 119ա.) "Զոր աւրինակ լոյս եւ շող յարեգակնէ իջանէ եւ մտանէ ընդ ամենայն երդս եւ լուսամուտս՝ եւ ըստ չափոյ մեծութեանն եւ փոքրկութեանն ձեւանայ՝ եւ զորս ի տունն են լուսաւորէ. Նոյնպէս եւ հաւատն յԱստուծոյ ի մարդիկ իջանէ ի սիրտս եւ ի հոգիս նոցա բնակէ եւ ըստ մեծութեան եւ փոքրկութեան ընդունողացն տարեալ լինի։" Ի հարկէ այս կարգիններ չեն պակսիր ուրիշ տեղեր ալ, նաեւ ԺԷ—ԺԸ. դարերէն։[1]

Այս ամենէն ետքը պէտք էր եզրակացընել բոլոր նախընթաց ուսումնասիրութեանց արդիւնքները, սակայն կշռելով նախ այն կէտը թէ ինչ մաս ունի Վարդան յիշեալ առակաց հաւաքմանց մէջ։ Ինքնին կը հետեւի նախընթացներէն որ մինչեւ Վարդան Այգեկցի չենք գտներ հայ մատենագիր մ'որ փորձած ըլլայ յօրինուածաբար առակներ խառնել խրատներու, եւ ասով առակագրութեան զբաղիլ։ Միւս կողմանէ տեսանք իրմէ՝ վաւերական "առակաւոր" խրատներ, ընդհանրապէս առակներ։ Ուստի "Վարդանեան" առակաց հաւաքմանց Էջմիածնական խումբը ստուգիւ ամբողջովին եւ միակ կապուած է Վարդանայ անուան հետ (տես § 368։) Վար-

---

[1] Այսպէս Հայագէտը (էջ 382) յառաջ կը բերէ կտոր մը "վկան ողջութից հարցման" գրուածքէն՝ ի ձեռագրին Աստ. Թանգ. Nr. 3 (Թերթ ԻԷ, Թղ. 6ա—6բ։)

դանայ գլխաւոր նպատակն եղած է ի Հարկէ գլխաւորաբար "Հոգեշահ„ նիւթեր, եւ խրատական վերջաբանութեամբ կամ յորդորակով աւարտած է միշտ իւրաքանչիւրը։ Իր գլխաւոր նիւթերն ալ են, ինչպէս արդէն վերը նշանակեցինք, մոլութիւնքն եւ անոնց դէմ՝ առաքինութիւնքն պատկերացընել, այնպէս որ իւր գլխաւոր բնաբանները առնուած են աւետարանէ (յատկապէս Մարկ. Է, 21—22։) Այս առթիւ յառաջ կը բերէ Հայագէտը՝ համեմատութեան համար "Ցաճախապատում„ գրոց մէկ տեղը՝ երկար ցուցակ բարութեանց եւ չարութեանց (տպ. Վենետ. 1838, էջ 43)։ Ուստի իւր առակաւորաց նիւթը եկեղեցական-կրօնական է. ուրիշ կարգիներ՝ յատկապէս զուտ աշխարհական նիւթերով առակներ՝ դժուարաւ կրնան Վարդանայ վերագրուիլ (տես § 368։) Ի Հարկէ Հոգեշահ յորդորակներ, զորոնք արտայայտուած ալ կը գտնենք Վարդանայ ուրիշ խրատականներուն մէջ, ապահով երաշխաւորութիւն մըն են նոյն առակաց վաւերականութեան։ Այս մասին կայ դէպք ալ որ առակի մը յորդորակը կը գտնենք Վարդանայ խրատներուն մէջ. օրինակի համար երբ համեմատենք "Վէմ եւ կաթ„ առակը Վարդանայ "Եթէ զի՞նչ է աղաւթքն„ եւն խրատուն մէկ տեղւոյն հետ, ինչպէս կը տեսնուի յաջորդովս։

ՃԸ. Վէմ եւ կաթ
(Հոր. Բ, 124)
Ի բարձր վիմէ կաթէր
ջուր բազում ժամանակս ի

Խրատ ողջնէց
(Ձռ. Marr Nr. 5, Թղ. 6բ
—7ա)
...գրասէրն աստուածա-

վերայ ապառաժի միոյ եւ փոս առնէր զվէմն։

Ցուցանէ առակս թէ զաւրէնքն Աստուծոյ պարտ է լսել մեղաւորաց անդադար եւ բնաւ ոչ ձանձրանալ. եւ զի յորժամ լսէ անդադար, նայ սակաւ սակաւ տեղի առնէ եւ կակղացնէ զսիրտն. զի բազումք ապրեցան ի լսելոյն, եւ շատք կորեան զի ոչ լսեցին. զի որ լսէ եւ ոչ առնէ, մէկ մեղք է. եւ որ ոչ կամի լսել անբաւ կորուստ է. զի ոչ կամի լսել զաւրէնս արարչին իւրոյ։

սէր կոչի։ Քանզի բազումք ապրեցան զի լուան զհրամանս Աստուծոյ. եւ յոլովք կորեան զի ոչ լուան եւ ոչ գիտացին զաւրէնս Աստուծոյ։ Լաւագոյն այն է որ լսէ եւ ոչ առնէ, քան զայն որ բնաւ ոչ կամի լսել զհրամանս Աստուծոյ. զի որ լսէ սիրով եւ ոչ առնէ միականի է. եւ որ չախորժէ լսել երկու աչաւքն է կոյր։

Այս կէտիս (տես § 370) եւ ընդհանրապէս յորդորակներու նշանակութեան մասին խնդիր ընելու ժամանակ՝ (տես § 371) պէտք չէ աչքէ փախցընել որ ալ շատ անգամ այսպիսի “հոգեշահ„ խրատ-յորդորակները կրնան կեղծ ըլլալ. եւ ընդհանրապէս առակի մը յայտարարած բարոյականն մտադրութեան արժանի է։ Այս տեսակէտով բաւական անյարմար բաներ կը գտնուին հաւաքմանց մէջ (տես § 372։)

Տեսանք Վարդան առակախօսն եւ իւր առակները։ Այսուհետեւ դժուար չէ որոշել այն խնդիրն ալ թէ որչափ կապ ունի Վարդանայ անունն այն “Վարդանեան„ առակաց բազմախուռն հաւաքմանց հետ։ Ի հարկէ այնչափ միայն՝ որ ինքն եղաւ այս ճիւղին ռահվիրայն, իրմէ ըլլալով նաեւ շարք մ’առակներ, որոնք ապագայ հաւաքմանց հիմնական խաւը կազմեցին։ Անկէ աւելիին, նոյնպիսի հաւաքմանց կազ-

մուելուն, ճոխանալուն եւ զարգանալուն սկզբնապատճառը չէ ինքն. եւ ընդհանրապէս տօոր մեկնութիւնը փնտռելու է ոչ այնչափ մատենագրի մը գործունէութեան մէջ, որչափ նոյն ժամանակի՝ ԺԲ—ԺԳ. դարերու՝ հոգւոյն մէջ, որ այնչափ կաթոգին սէր մը ցուցուցած է առակներու, զրոյցներու եւ նմաններ, եւ այս՝ ոչ միայն ի Հայս (տես § 373։) Այսպիսի զարգացմանց գլխաւոր գործօններէն են նաեւ այն պարագայքն որ այսպիսի հաւաքմունք մէկ կողմանէ սիրելի առաջ կը մատակարարէին խրատաբան-քարոզախօսներու, միւս կողմանէ կը գործածուէին դպրոցներու մէջ ալ. որով բնական էր անոնց աճիլն ու ճոխանալն եւ նոր հաւաքմանց ծագիլն։ Ուստի Վարդան այն դերն ունեցաւ Հայոց մէջ, ինչ դեր որ ունեցած է Հռոմուլոս յԵւրոպա։[1] Արդէն ուրիշ ազգային երեւոյթներ ալ չեն պակսիր. այսպէս "Բարուախօս"՝ ընծայուած ստութեամբ "Փիլատոս" հեղինակի. այսպէս "Ողիմպիան" հե-

---

1 Հռոմուլոսի (Romulus) մասին յառաջ կը բերէ Հերվիէօի մէկ խօսքը (Hervieux, Les fabulistes latins, I, 277) թէ "Իւր գործն այնպիսի յաջողութիւն ունեցաւ որ մոռցընել տուաւ Փէդրոսը, եւ եղաւ իբր միակ հաւաքումն իւր կարգին, այնպէս որ Հռոմուլոսի անունն ի վերջոյ եղաւ սովորական բացատրութիւն մը՝ որ կը գործածուէր յայտարարելու ոչ թէ մարդու մ'անունը, այլ մանաւանդ գրականութեան մէկ տեսակը. եւ այս բանս կը ցուցընէ այն պարագան որ ձեռագրաց մէջ կը գտնենք նոյն տիտղոսը գործածուած ոչ միայն այն հաւաքմանց համար որոնք նախնական բնագրին այլափոխեալ օրինակներն միայն էին, այլ նաեւ այնպիսիներու համար՝ որոնց առակները մասամբ ուրիշ աղբիւրներէ առնուած էին։"

ղինակ Հաւաքման մը եսովպեան առակաց, եւն (տես § 374—376։)

Այսուհետեւ կը մնար խօսիլ միայն այն յատկանիշներու վրայ ալ, որ Վարդանեան Հաւաքմանց հիմնական խաւին կը վերաբերին եւ անոնց աղբերաց մասին (§ 377—380), յատկապէս քննութեան առնելով յորդորականաց սկսելու ձեւն մէկ կողմանէ Վարդանայ խրատներուն եւ միւս կողմանէ Հաւաքմանց մէջ (§ 377,) շեշտելով այն կէտն որ լեզուական պարագաներն անպէտ են որոշելու Վարդանայ իսկական առակները Հաւաքմանց կեղծ կամ յետսամուտ առակներէն։ Վասն զի Վարդան որչափ ալ գրաւոր լեզու գործածէ՝ նուազ ռամկաբան ալ չէ, հեղինակ մ'որ կը գրէ օրինակի համար "անփոշիման ... կանկնի ... ըղուղն" եւն[1] (տես § 378։) Վարդանայ առակաց նիւթերն երեք դասակարգի կրնան բաժնուիլ, կախում ունենալով իւր երեք գլխաւոր աղբիւրներէն, այսինքն՝ Ս. Գիրք, "Բարոյախօս" իւր Ընդարձակ ձեւին մէջ, եւ "Եսովպեան" առակներ, որոնց համեմատական տեղերը նշանակուած ալ կը գտնենք (տես § 380։) Ասկէ ետքը կը մնայ այս աղբիւրները տեսնել։

---

1 Այսպէս Հայագէտը (էջ 392) օրինակ կը բերէ սա նախադասութիւնն (անդ՝ Թղ. 37բ). "Վասն որոյ դառնայ (նզովքն) եւ գայ կանկնի ի վերայ գլխոյ նորա, որ ի զուր եհան զնա եւ ծծէ զըղուղն, զի նորին ծնունդ է եւ նովաւ պիտի սնանի" եւն։ Լեզուի վրայ քիչ ազդած չէ անշուշտ այն պարագան որ Վարդան՝ Ասորիք ծնած, ուստի բնիկ աշխարհէն դուրս, յետոյ իւր գրական գործունէութեան ատեն ենթարկուած է Հայ կիլիկեան շրջանի ազդեցութեան։

## 8.

“Բարուախօս„ է նիւթ ութերորդ գլխուն (§ 381—428) իբրեւ մին այն աղբիւրներուն որ նշանակութիւն ունին Վարդանայ եւ Վարդանեան հաւաքմանց համար։ Ի հարկէ՝ ինչպէս վերն ըսինք, բաց ի Բարուախօսէ եւ եսովպեան առակներէ՝ աղբիւրներու կարգը դասելու է նաեւ Ս. Գիրքն։ Անոր համար այս գլխուս առաջին հատածները՝ Ս. Գրոց ազդեցութեան քննութեան նուիրուած են. (§ 381—84։) Այսպիսի ազդեցութիւն մը բնական էր մեր մատենագրին եւ անոր յաջորդաց քով. ուստի պէտք չէ զարմանալ որ օրինակի համար՝ Ծառերու թագաւոր ընտրելու առակը (Դատ. Թ, 7—15, ասկէ առ Ցովսեպոսի եւն) կը գտնենք հայկականաց մէջ մտած (“Թագաւոր ծառոց„, տես Հտր. Բ, 104, ՁԷ.) բայց արդէն նոյնը կը գտնուի դոյզն փոփոխութեամբ առակաց յունական հաւաքմանց մէջ ալ։ Դարձեալ կը գտնենք Ս. Գրոց վճռական խօսքեր եւ նմաններ ընդարձակուած եւ առակի վերածուած. այսպէս առակն ՃՀԴ՝ “Թագաւոր եւ խոզ„ (Հտր. Բ, 210,) որուն հիմնական գաղափարն է սա առակաւորն “Խոզ լուացեալ՝ ընդ տիղմ թաթաւեալ[1]„ (Բ. Պետր., Բ, 22, հմմտ. Առակք, ԺԱ, 22 “իբրեւ գինդ ոսկի ի քիթ խոզի, այնպէս կնոջ չարաբարոյի գեղեցկութիւն) եւ ուրիշ նմաններ (տես § 381—82։) Բաց ի Ս. Գրքէն կ'ենթադրուի

[1] Այս առակին մասին, որ Խիկարայ առածներէն է, այլուր առիթ կ'ունենանք խօսելու։

որ համեմատութեան կը տեսներ գտնուիլն Ս. Հարց կամ Նման գրութեանց վճիռներուն հետ: Օրինակի համար Ձկան մասին երկու կարճ առակ կը գտնենք (ՄԸ եւ ՄԹ, տես Հտր. Բ, 236,) որոնց մին է՝ "Ձուկն յորժամ ի ջրոյն դուրս ելանէ՝ նա մեռանի,, եւն: Արդ այս առակը կը գտնենք "Հարանց Վարուց,, մէջ, Անտոնի աբբահօր կենսագրութեան մէջ[1], ուր կը պատմուի՝ (էջ 74) "Եւ նա ասէ ցնոսա... եւ զուարթալից եւ ուրախարար առակօք հաւանեցուցանէր զնա եւ ասէր թէ Զոր օրինակ յիջանէ յերկարեալ է ցամաքէ յերկրաւոր ճանապարհէն առաքելին, նոյնպէս եւ միայնակեացք,, եւն[2] (տես § 383): Սակայն այս ամէնքն իբրեւ աղբիւր ոչինչ են ազդեցութեան տեսակէտով՝ Բարուախօսի ազդեցութեան բաղդատմամբ. (§ 384:)

"Բարոյախօս,, (Physiologus) հնութեան տարածուած գրքերէն է, որուն հայերէն թարգմանութիւնն ալ բանասիրաց ուշադրութիւնը գրաւած էր: Արդէն ծիրանաւորն Պիտրա, որ չափազանց մեծ նշանակութիւն տուած էր իւր հայերէն բնագրին, հրատարակած է զայն Վենետկոյ կրկին եւ Պարիսի մէկ օրինակին համեմատ[3]: Անծանօթ հայազգւոյ մ'օգնութեամբ

---

[1] "Վարք Հարանց,, տպ. Վենետ. 1855, Հտ. Ա 17—80՝ Ս. Աթանասի գրուած:

[2] Նոյնը կը գտնուի Ասորւոց քով ալ. այսպէս Բարհեբրէոսի եւ այլոց, զորոնք յառաջ կը բերէ Հայագէտը. (էջ 397:)

[3] J. B. Pitra, Spicilegium Solesmense, III (Պարիս 1855), 374—390:

նոյնը գաղղիերէն լեզուաւ ալ լոյս տեսաւ՝ կահիէի աշխատասիրութեամբ եւ քննութեամբք[1]։ "Բարուախօսի" մասին միւս գործերէն կը յիշուին միայն գլխաւորքն՝ աշխատասիրութիւնք Լանդի, Հոմմէլի, Լաուխերդի եւ Աղեքսանդրի Կարնիեյէվ[2]։ Առաջինն եւ վերջինքս թողլով այն անհիմն աւանդութիւնն, զոր կը յիշէ Պիտրա յենլով իւր թարգմանչին (Հ. Գաբր. Այվազեան) կարծեաց վրայ, իբր թէ հայ թարգմանութիւնն արդէն Ե. դարուն ըլլայ, կ'ընդունին ընդհանրապէս որ հայերէն թարգմանութիւնը "Բարուախօսի" խմբագրութեանց երկրորդ խմբին կը պատկանի եւն։ Կարնիեյէվ չորս տարի ետքը հրատարակելով "Բարուախօսի" յոյն բնագիրը Մոսկուայի Սիւնհոդական Մատենադարանին՝ ըստ ենթադրութեան Թ. դարու ձեռագրէ մը, շատ մերձաւոր կը գտնէր զայն հայ թարգմանութեան[3]։ Հայագէտը յիշելով այս ամէն կարծիքները հայ թարգմանութեան մասին (§ 385)

---

1 Cahier, Du Bestiaire et de plusieurs questions qui s'y rattachent, ի գիրս Nouveaux Mélanges d'archéologie, d'histoire et de littérature du moyen âge, Paris 1874, p. 117—138.

2 J. P. N. Land, Otia Syriaca (Հատ. Դ՝ Anecdota syriaca հաւաքման, 1875, էջ 132։) — Fritz Hommel, Die aethiopische Uebersetzung des Physiologus, Leipzig 1877. — Fr. Lauchert, Geschichte des Physiologus, Strassburg 1889. — Александръ Карнѣевъ, Физіологъ, Петерб. 1890 (յատկապէս էջ 84—85 եւն), եւ ուրիշներ։

3 Ի թերթին Byzantinische Zeitschrift, 1894 էջ 32—63.

կը գտնէ որ վերաքննութեան կարօտ են. վասն զի այս ամէնը հաստատուած էր Պիտրայի հրատարակած յոռի բնագրին վրայ: Այսու հանդերձ նաեւ նոյն բնագրին համեմատ Հոմէլի կազմած այն կարծիքն (անդ՝ էջ ԼԸ, ծան. 16) թէ հայերէնն երկու խմբագրական խմբերու միջին կամուրջ մ'ըլլայ՝ աւելի մերձաւոր առաջնոյն քան երկրորդ խմբին, կրնայ նաեւ ցայսօր՝ ընդհանրապէս խօսելով՝ ընդունուիլ:

Քննութեանց հիմնականութեան համար պէտք էր ուրեմն հայ բնագիրն ուսումնասիրել հիմնովին. եւ ահա այս եղած կը գտնենք ներկայ գլխովս, թէեւ ի հարկէ՝ ինչպէս կը յայտարարէ հայագէտը, "Բարուախօսի„ լիակատար քննութիւն չէր կրնար իր նպատակն ըլլալ, այլ այնչափ միայն՝ որչափ կապ ունի ներկայ գործիս նպատակին հետ: Բարուախօսի հայ բնագիրը հրատարակուած է երրորդ հատորին մէջ[1] համեմատութեամբ վեց ձեռագրաց եւ Պիտրայի հրատարակութեան: Սակայն վերջնոյս երեք ձեռագրաց ընթերցուածները չէ առած համեմատութեանց մէջ՝ շատանալով միայն իւրաքանչիւր գլխուն նշանակել յիշեալ հրատարակութեան համապատասխանող էջերը. վասն զի ինքը նպատակ ունեցած չէ լիակատար "քննադատական հրատարակութիւն„ մ'ընել բնագրին, այլ միայն իւր ծրագրին մէջ մնալով՝ նոր նիւթեր մատակարարել "ապագայ քննադատական հրատարակութեան„ համար: Սակայն իւր բնա-

1 Տես Հոր. Գ, 131—175 "Բարոյախօս:„

գիրը համեմատութեամբ վեց ձեռագրաց՝ այս “ապագայ„ քննադատականին պաշտաման մեծագոյն մասն արդէն կատարած է. եւ ներկայ ուսումնասիրութիւնս ալ կարծենք շատ բան պիտի չթողու ընելու ապագայ քննադատին։

Ըսինք վեց ձեռագիրներու համեմատութեամբ եղած է հրատարակութիւնն։ Այս ձեռագիրները կը նշանակէ հայագէտը BCC$^{2}$RSP համառօտութեամբք. այսինքն՝ Էջմիածնի թ. 453 (= B որուն մասին տես գ., 17—19.) — Էջմիածնի թ. 1684 (= C, տես վերը § 154.) — Էջմիածնի թ. 1711 (= C$^{2}$, տես գ., 47—54.) — Էջմիածնի թ. 23 (= R, պակասաւոր, ձեռագիրն իբր ԺԶ—ԺԷ. դարէ.) — Սեւանայ գրատան մէկ ձեռագիրն (= S, տես Հայագիտին նոյն հաւաքման ռուսերէն “Ցուցակն„, Մոսկ. 1892, էջ 35.) — Ուրիշ մը Պետերբուրգի կայսերական Հրապարակական մատենադարանի (= P, տես Dorn, Catalogue des Mss. etc., Պետրբ. 1852, էջ 571, թիւ 640.) — Վերջապէս Պիտրայի հրատարակութիւնը (PA։) — Ասոնցմէ միայն երկուքը թուական ունին, երկուքն ալ ԺԷ. դարէն, մին (C$^{2}$) գրուած 1601ին, միւսը (B) 1628ին. միւսներն անթուական են, ընդհանրապէս ԺԶ—ԺԷ. դարէն. Սեւանայ ձեռագիրը կարելի է որ ԺԵ. դարուն ալ ըլլայ։

Այս բոլոր ձեռագիրները միեւնոյն բնագիրը չունին, այլ պէսպէս ձեւերով, գլխաւորաբար երկու, զորոնք պէտք է որոշել իրարմէ.

(§ 386։) Առաջին ընդարձակ ցեղը կը ներկայացնէ B ձեռագիրը, որուն կարգէն է նաեւ $B^2$, այսինքն մեր մատենադարանին Թ. 29 ձեռագիրը[1]։ Երկրորդ՝ պակասաւոր ցեղն երկու ձեւով կը գտնուի, մին պարզ կամ անխառն (C եւ $C^2$) եւ միւսը խառն, ուր մուտք գտած են առակներ ալ։ Վերջնոյս կը վերաբերին մնացեալներէն յատկապէս P եւ S օրինակները, որոնք այն յատկութիւնն ունին հաւասարապէս՝ որ այս ներմուծեալ կտորները դասաւորուած են հոն ի միասին մէկ տեղ մը. այսպէս P ներմուծած է Ողիմպիանու ինն առակները՝ "Բարուախօսի" երրորդ "վասն Թոլոփու" գլխէն ետքը, (հտր. տես Հտր. Գ, 136—139, Գ,$^{3-11}$) ուստի իբր Գ—ԺԲ գլուխ նշանակուած։ Նոյնպէս S ձեռագրին մէջ մուծուած են հինգ առակներ, այսպէս անուանակոչուած "Առակք իմաստնոց" (տես § 364,) Բարուախօսի իններորդ "Փիւնիկ" Թռչնոյ գլխէն ետքը (հտր. տես Հտր. Գ, 147—148, Թ.$^{2-6}$) յիշեալ օրինակին մէջ իբր գլուխ Ը—ԺԲ։ Այս ամէն ձեռագիրները՝ ինչպէս կը տեսնուի, ուշ ժամանակի եւ նոյնպիսի նկարագրաւ գրչութիւնք են. սակայն այսու հանդերձ մեծապէս կը նպաստեն վերակազմելու Բարուախօսի մեզի հասած բնագիրը՝ հրատարակութեամբ Պիտրայի, որուն հիմն առ-

---

[1] Տես "Ցուցակ", էջ 163—165։ Այս առթիւ նշանակենք որ համամիտ ենք հայագիտին դիտողութեան (էջ 400, Ծն.) որ մեր ձեռագրին ԼԷ համածին ծայրը կցած վերջաբանական գարձուածէն պէտք չէ հետեւցընել որ հոն կը լմնայ բուն Բարուախօսն։

նուած է ձեռագիր մը, որ իբր թէ ԺԴ. դարուն գրուած է[1]։ Ցատուկ տախտակ մը (Տխտ. ԻԸ, էջ 402—403) մեր առջեւը կը դնէ Բարուախօսի բոլորնիւթերը համեմատութեամբ յիշեալ ձեռագրաց եւ Պիտրայի հրատարակութեան, որմէ պայծառ կը տեսնուի թէ ո՛ր ձեռագիրն այս կամ այն գլուխն եւ ինչ կարգաւ ունի. (§ 386։)

Հայերէն "Բարուախօսն" կրնայ հայ գրականութեան բաւական հին շրջանին վերաբերիլ, յատկապէս Զ—Է. դարերուն։ Ցետագայ տեսութիւնն կենդանական զրոյցներու ծաւալման հին հայ գրականութեան մէջ, որ կը վկայէ միանգամայն թէ անոնցմէ ոմանք ժողովրդականութիւն ստացած էին, հաւանական կ'ընէ նաեւ այն կէտը թէ Բարուախօսն թերեւս ծանօթ էր Հայոց արդէն հայ գրականութեան դասական շրջանին։ Եզնիկ Կողբացի՝ Բագրեւանդայ եպիսկոպոսն եւ "Ընդդէմ Աղանդոց" գրքին հեղինակն իւր ապացուցմանց մէջ յաճախ կը դիմէ այսպիսի զրոյցներու, եւ կարելի է որ այս տեղերուն մէջ երբեմն կախումն ունենայ Բարուախօսէն։ Այսպէս ըստ երեւութին Բարուախօսի "վասն Մրջման" (գլ. ԺԴ) կտորէն օգտուած է Եզնիկ, երբ մրջման բարուց նկարագրութիւնը կ'ընէ (տպ. Վենետ. 1826, էջ 174—75) այսպէս խմբագրելով. "Որպէս մրջեան յամարայնոյն

---

[1] Պիտրայի գործածած երեք օրինակներէն միայն մին՝ Պարիսեան օրինակը՝ "կ'երեւայ ըլլալ ԺԴ. դարու", միւսներն աւելի ուշ ժամանակի են, տես Pitra, p. 374։

պատրաստելոյ զկերակուր, եւ ընդ երկու զհատն կտրելոյ՝ զի մի բուսանիցի, եւ ի ջեր ժամանակս հանելոյ զկտիկն յորջէ անտի եւ ցամաքեցուցանելոյ։„ — Աֆոլոնֆեղոսէ ալ վարդապետական մասին մէջ Բարուախօսի նիւթեր կը գտնենք։ Այսպէս կը կարդանք հետեւեալը[1]. "Եւ եղերուք դուք, ասէ, խորագէտք իբրեւ զաւձ։ Եւ զի՞նչ իցէ խորագիտութիւն աւձին, եթէ ոչ՝ իբրեւ ծերասցի նա եւ տեսանէ ապականեալ զմարմինն իւր, զխորհուրդս խորագիտութեանն իւրոյ ի մէջ բերէ։ Զի դիմէ նա ընդ տեղի ինչ նեղածերպ վայրաց եւ ընդ կրթելն կեղեւէ զապականեալ մորթն ծերացեալ մարմնոյն ի բաց մերկանայ եւ միւսանգամ ի մանկութիւն դառնայ, եւ նորոգեալ զծերութիւն իւր զարդարէ։ Սոյնպէս արդարացեալքն զանցաւոր մարմնոյս խտղտմունս ի յանձանց ի բաց մերկանան, զի մտցեն ընդ նեղ դուռնն, զի ըմբռնեսցեն զանմահ թագաւորութիւնն։„ Հոս կը գտնենք Բարուախօսի "վասն Օձի„ (գլ. ԺԳ) հատածին տարերքն. նոյն կենդանւոյն առաջին բարոյքն է հոս բացատրուած։ Շատ հետաքրքրական է նաեւ հետեւեալը զոր նոյնտեղը կը գտնենք Ագաթանգեղոսի քով (անդ, տպ. Վենետ. 449, տպ. Տփղ. 348—49.) "Եղերուք, ասէ, միամիտք իբրեւ զաղաւնիս։ Մի՝ վասն զի մարդասէր է եւ մարդընտել եւ ի մարդամօտի եւեթ կամի կեալ աղաւնի, որպէս զի Աստուած մարդասէր

---

1 Ագաթ. Հած. ՀԸ, տպ. Վենետ. 1862, էջ 448. տպ. Տփղ. 1882, էջ 347—348։

է եւ կամի հանապազ ի մէջ սրբոց իւրոց բնակել։ Եւ միւս՝ թէ բազում անգամ բարձցէ ոք զձուս կամ զձագս աղաւնւոյ, ոչ երբէք երկմտեալ թողու զտեղի բունին իւրոյ։ Սոյն օրինակ թէպէտ բազում եւ անսպառ իցեն չարիք մարդկան հանապազ առ արարչութիւնն, ուստի խնամք դարմանոցն մատակարարին որք զնա ոչ ճանաչեն, սակայն ոչ թողու եւ հեռանայ յարարածոց իւրոց, այլ հանապազ յայց ելեալ՝ խնդրէ զկորուսեալս զի գտցէ։„ Այս հատածին մէջ եթէ նաեւ չենք գտներ Բարուախօսի նկարագրական մէկ նիւթին յատուկ խմբագրութիւն մը[1], սակայն գոնէ կը ներկայացընէ Բարուախօսի վերաբերեալ նիւթ մը, որ յետոյ ժամանակաւ կրնար մուծուած ըլլալ Հայ “Բարուախօսին„ ընդարձակ օրինակաց մէջ։ — Դաւթի Անյաղթի՝ որ Հայ գրականութեան հելլենասիրական շրջանին (Զ—Է. դար) մէկ հեղինակն է, գրութեանց մէջ կը գտնենք արձագանգ Բարուախօսի եւ ընդհանրապէս անասնոց մասին զրուցաց, օրինակի համար (Գրակք Ժ, տպ. Վենետ. 174) “Որպէս յորժամ ասեմք զտատրակ ի բնութենէ ողջախոհ եւ զուղտ խոհեմ եւ զառիւծ արի եւ զարագիլ արդար, վասն զի զծերացեալ հայրն կերակրէ։„ — Եղիշէի Պատմութեան ութերորդ՝ յետոյ աւելցուած՝ յեղա-

---

1 Տես Հայագիտին գործոյն § 410, ուր կը նշանակուի որ “Աղաւնոյ„ այս նիւթը չի գտնուիր Բարուախօսի արդի Հայ օրինակաց մէջ, բայց աստ վերջին մասին նման կը գտնենք Վարդանեան առակ մը՝ “Աղաւնի„ (ՃԼԱ, տես Հտր. Բ, 153) եւն։

նակին մէջ կը կարդանք թէ կանայք կայծըլոց նախարարաց "անարիւն ճիպուանց նմանեցին, որ երգոյն քաղցրութեամբ առանց կերակրանաց կեան, եւ կենդանի են զօդ միայն ծծելով, զանմարմնոցն բերեն զնմանութիւն[1]:„ Սակայն, թէպէտ եւ համանման զրոյց մը կը գտնուի Բարուախօսին մէջ[2], Եղիշէի պատմութեան շարունակողը կրնայ այս նիւթը փոխ առած ըլլալ նաեւ ուրիշ աղբիւրներէ, օրինակի համար Փիլոնի "Յղ. վարուց կենաց տեսականի„ գրքէն, ուր կը կարդանք "իբր ասեն զճպուանցդ ազգք աւդով կերակրիլ„ եւն[3], կամ Բարսղի Վեց-

---

1 Տես Եղիշէ հրտ. (ըստ Անձեւացեաց օրինակին) Խ. Յովհաննիսեանի, Մոսկ. 1892, էջ 181:

2 Այսպէս Լայդէնի ասորի օրինակը՝ ԾԶ. (Land, p. 77—78, թրգմ. p. 74—75.)

3 Տես Fr. Conybeare, Philo about the contemplative life. Oxford 1895, p. 73, Հայ բնագիր՝ անդ 165: Հայագէտը հոս կը նշանակէ (էջ 405 ծան. 1) որ Կոնիբէրի հաստատելը թէ Փիլոնի հայ թարգմանութիւնը 450էն ետքը չէ (անդ՝ էջ 155), կամ նոյն իսկ ոչ 420էն ետքը (անդ՝ 331), հաստատուն հիմ մը չունի: Այն պարագան որ թարգմանութիւնս կը գործածեն Եղիշէ եւ Մ. Խորենացի, աւելի կարեւոր է վերջնոցս ժամանակը որոշելու քան ընդհակառակն: Նոյնպէս մեծ նշանակութիւն չի կրնար տրուիլ այն կէտին ալ որ հայերէն Աստուածաշնչի սովորական բնագիրը՝ որուն պատմութիւնը տակաւին ամենեւին լուսաբանուած չէ, Փիլոնի թարգմանչին անծանօթ մնացած է: Վերջապէս հայ բնագրին լեզուն ու ոճը մեր կարծեօք ամենեւին անսխալ նշան մը չէ այն թարգմանութեան հայ գրականութեան ոսկեդարուն վերաբերելուն: Ընդհակառակն յիշեալ թարգմանութեան նոյն իսկ լեզուն եւ ստրկական հետեւողութիւնն յունական խօսից կազմութեան կը ցուցընէ որ կը վերաբերի հելլենասիրական շրջանին, մերձաւորապէս Զ—Է. դարերուն:

օրէէն[1]։ Հայերէնին "ճեպխոռն" = ճպուռն ըն-
թերցումն Փիլոնի բնագրովը կը մեկնուի[2]։ —
Թովմաս Արծրունի (Թ—Ժ· դար) խօսելով Ցաճ-
կաց "Ցովսէփ" զօրավարին վրայ որ ի Տարօն
"բնակեալ բայանայր" կը նմանցընէ արջոյ բա-
րոյից որ ձմեռը կը բայանայ եւ գարունը կ'ելլէ
բայոցէն[3]։ Թէպէտ եւ կրնայ հայ պատմագիրը
արջոյն բարոյքն անկախաբար ճանչցած ըլլալ
նաեւ կեանքէն, սակայն կարելի է որ գրած ըլլայ
Բարուախօսի ԽԳ· հատածին ազդեցութեաններ-
քեւ, ինչպէս որ Արծրունւոյ քով կարելի է նոյն
ազդեցութիւնը նշմարել ուրիշ տեղ ալ, այս-
պէս երբ Վասպուրականի Դերենիկ արքայի
կնոջ՝ Սոփիա տիկնոջ՝ մասին կը գրէ՝ "Անհա-

---

1 Ճառ Ը Բարսղի, տես Migne, Patr., Ser. Gr. XXIX, 184 A. Հայ բնագիրը (տպ. Վենետ. 1830) էջ 173–75։ Ընդհանրապէս նշանակենք հոս որ Վեցօրէին հայ թարգմանութիւնը զգալի կերպով կը շեղի յունարէն հրատարակուած բնագրէն։

2 Ուշ-հայ խմբագրութեանց մէջ խօսքն է "զնձոյլ" վրայ (ܕܒܘܪܐ, σφήξ, իսկ Բարսղի Վեցօրէի յունարէնն երկու բառ ունի հոս μελίσσας καὶ σφῆκας.) Փիլոնի քով (տես Conybeare, p. 73 եւ 217 ուր յառաջ կը բերուի Պղատոնի Phaedr. 259 իբր աղբիւր) կը գտնենք τέττιξ (ճպուռն)։

3 Թովմ. Արծր. Բ, է, տպ. Պետրբ. 1887, էջ 119 ի Տարօն "բնակեալ բայանայր զօրավարն Ցաճկաց. զօրհասական արջոյն (այլ օր. "արջոցն") բերելով նմանութիւն, որ յաւուրս ձմերայնոյ արմատովք պարենաւորեալ՝ ի մէջ կենաց եւ մահու անցեալ որջանան ի բոյնս իւրեանց։ Իսկ ի շնչել հարաւային օդոյն . . . եւ բայացեալքն ելթէ գազանք եւ ելթէ թռչունք, յորժամ զգան զջերմութիւն օդոյն ի հասարակել տունջեան եւ գիշերոյ՝ ի գարնանային եղանակի ելեալք յիւրաքանչիւր կայենից" եւն։

մեմատն ի կանայս ըստ նմանութեան ամուսնասէր տատրակի[1]։„ — Արիստակէսի Լաստիվերտացւոյ[2] (ԺԱ. դար) քով կը գտնենք նիւթ մ'որուն Բարուախօսի մեր Հայ օրինակաց մէջ չենք հանդիպիր։ Լաստիվերտացի կը գրէ՝ "Եւ քանզի է կենդանի ինչ, զոր սեպեան կոչեն, զորմէ ասեն թէ զամենայն գոյն փոխէ, զի յորսորդաց ապրեսցի, նոյնպէս եւ նա (Վասիլ) ի զօրանալ ճշմարտութեանն„ եւն։ — Վերջապէս Յովհ. Երզնկացի (ԺԳ—ԺԴ. դար) իւր "Խրատ համառօտ„ գրութեան մէջ խօսելով ծնողասիրութեան մասին կը գրէ (Ձոգր. Էջմ. Թ. 1631, Թղ. 136բ—137ա) "Եւ ոչ եթէ գիրք եւ աւրէնք միայն խրատեն սիրել զծնաւղսն, այլ անասունք եւ թռչունք[3] ի բնութենէ ունին սիրել զծնաւղս իւրեանց. որպէս ասեն թէ արագլաց ձագք՝ յորժամ ծերանան ծնաւղքն՝ ի ներքոյ թեւոցն մտանեն եւ աւգնեն, ի շուրջ ածեն եւ կերակրեն։ Եւ յորժամ չկարէ այլ շրջել՝ ի

[1] Անդ՝ Դ, ա, տպ. Պետրբ. էջ 269։

[2] Լաստիվերտացի, Պատմ. գլ. ԻԳ, տպ. Վենետ. 1844, էջ 107։ Հայկազնեան Բառագիրքը կը նշանակէ հոս որ "սեպեան„ (որ եւ "Սիպէ„) — լատ. sepia, "ազգ կաղամար ձկան„ եւն. Նոյն բառը կայ յունարէն ալ (σηπία) եւ De Natura animalium (I, p. XXXIV, հրտ. Jacobs p. 16) գրոց մէջ Էլիան նոյն տեսակին համար յառաջ կը բերէ յէականս համանման զրոյց մը։

[3] Բարուախօսէն ալ անկախ՝ Հայք նաեւ դպրոցի նստարաններէն կ'ուսանէին որ մարդիկ պէտք են սորվիլ մայր-բնութենէն։ Պիտոյից գրոց մէջ, որուն թարգմանութիւնը Մ. Խորենացւոյ կ'ընծայուի, կը կարդանք (էջ 407)՝ "Վարդապետարան մարդկայինս եղեալ ազին՝ բնութիւն իսկ ուսուցանէ„ եւն։

բոյնն նստուցանեն, որպէս եւ նոքա զձագս իւ-
րեանց սնուցին։ Արդ մեծ ամաւթ է թէ մարդիկք
քան զթռչունս փառաւորք գտանին եւ զծնո-
ղացն սնունդն եւ զքարիքն մոռանան։» Յովհան-
նէս Հօս յայտնապէս յառաջ կը բերէ Բարուա-
խօսի (գլ. ժ) մէկ նիւթը. (§ 387։)

Շատ հաւանական է որ «Բարուախօսն»
ազդած է հայկական ճարտարարուեստից վրայ,
եւ կենդանեաց այն բազմակերպ պատկերներուն
մէջ՝ որոնք ԺԲ—ԺԳ. դարերու Հայ եկեղեցեաց
արտաքին որմերը կը զարդարեն, կարելի է ի
վերջոյ երբեմն գտնել մեր յիշատակարանին
տիպերէն։ Սակայն դժուարաւ կարելի է Բա-
րուախօսի ազդեցութեամբն բացատրել Հայ
եկեղեցեաց վրայ տեսնուած կենդանական զար-
դարանքներն առ հասարակ, օրինակի համար
այն եկեղեցւոյն վրայ զոր շինած է Ժ. դարուն
Գագիկ յԱղթամար։ Թովմա Արծրունի որ մանր-
ամասն կը նկարագրէ[1] զայն՝ յիշելով նկարներն

---

1 Թովմ. Արծր. Դ, ը. տպ. Պետրբ. 1887, էջ 297–98
5՝. «Եւ քանզի ճարտարապետ արուեստին էր Մանուէլն զոր
ի վեր անդր ցուցաք, այր լի իմաստութեամբ եւ զօրաւոր
ի գործս իւր՝ Հրաշակերտէ զեկեղեցին զարմանագործ ա-
րուեստիւ, եւ զոր վերագոյնն ցուցաք կրօնաւորն ձեռն տայ
նկարագրել զքարինսն ճշգրտագործ նմանահանութեամբ,
սկսեալ յԱբրահամայ եւ ի Դաւթէ եւ մինչեւ ցՏէր մեր
Յիսուս Քրիստոս, զդասս մարգարէից եւ առաքելոց յօրի-
նեալ ըստ իւրաքանչիւր հանդիսի զարմանագործ տեսլեամբ։
Սուեղծագործեալ ջոկադրէ եւ ի կարգս եկեղեցւոյն զյոլով-
[illegible] ի [illegible], [illegible] ի [illegible],
[illegible] ի [illegible], [illegible] ի [illegible], ընդդէմ միմեանց
զարդարեալս, զկենդանականին նոցա յուշ տանելով զմարդ,
որ է յոյժ ըղձալի իմաստնոց, ածեալ զԹիկամբ եկեղե-

երէց ու հաւուց եւ գազանաց եւն, յամենայն դէպս որեւէ ծանօթութիւն մը չի տար որ յայտնէ որեւէ կապ մ'այն պատկերներուն՝ Բարոյախօսի աւանդականներուն հետ. (§388։)

"Բարոյախօսն", ինչպէս ծանօթ է, սովորաբար կ'ընծայուի Եպիփանու Կիպրացւոյ. սակայն Հայ ձեռագրաց մէջ չենք հանդիպիր այս անուան։ "Հետազօտութիւնք Նախնեաց ռամկօրէնի" գրութեան հեղինակը կը յիշէ "Ս. Եպիփանու անուամբ քանի մի հաւաքածոյից մէջ՝ իբրեւ առանձին գրութիւն տեսնուող 66 գրաբար Առակները", մեր Բարոյախօսի, սակայն չենք գիտեր թէ արդեօք այն կեղծ հեղինակին անունը յառաջ բերած է հայ ձեռագիրներէն[1]։ Հաւանօրէն "Մատենադարանի Թարգմանութեանց Նախնեաց" հեղինակն ալ Եպիփանու անունը չէ գտած Բարոյախօսի Հայ ձեռագրաց մէջ. յամենայն դէպս իւր յառաջ բերած վերնագիրը[2] "Սրբոյն Եպիփանու Կիպրացւոյ արքեպիսկոպոսի խօսք յաղագս Բարոյախօսին", ուշ ժամանակի շարադրութեան երեւոյթն ունի. վասն զի Հայ ձեռագրաց մէջ "Բարոյախօս" (Physiologus) անուանակոչութիւն է նոյն իսկ հեղինակին, եւ ոչ

---

ցւոյն եւ չքնաղ պատուական մի պանծալի մանրամասն հաւաքածովք յօրինեալ, կերպագրեալ որթս խաղողաբերս այգեգործովք եւ գազանովք եւ սողնովք հանդերձ համակեալք. որոց եւ կերպարանքն այլեւայլ զանազանութեամբք ըստ իւրաքանչիւր մասին աքերեն զտեսակս," եւն։

[1] Հ. Ղ. Յովնանեան "Հետազօտութիւնք" եւն (Վիեննա 1897), Բ, 276։

[2] Տես "Մատենադարան" եւն (Վիեննա. 1889), էջ 414։

թէ գրքին։ Մխիթարեանց (տես Հյկզն. Բառագիրք "Բարսյախոս„) մէկ նկատողութեան համեմատ, որ կրկնուած է Պիտրայի քով, Եպիփանու "գործն յայլոց ընծայի Փիլոնի Կարպաթեցւոյ„ (Philo Carpathius,) ի հաստատութիւն յառաջ բերելով Վարդանայ պատմչի մէկ տեղը, զոր քիչ մ'ետքը կը տեսնենք։ Ցամենայն դէպս անյաջող կարծիք մըն է Փիլոնի հեղինակութիւնը հաստատել հայ պատմագրին յիշեալ տեղէն։ Մեր ձեռքն հասած հայ ձեռագրաց մէջ՝ յիշատակարանիս հեղինակը կը յորջորջուի պարզ "Բարսախեոս„ առանց ուրիշ մասնաւոր անուան (այսպէս ի B,) կամ "Խաւսք իմաստասիրաց ուղղափառ վարդապետաց„ (այսպէս C², ) կամ "Բարսախեոն Փիլոթէոս ըստ բնութեան բարուց աստցեալ ... Բարուախօսն փիլատօս սկսաւ խօսել„ եւն (այսպէս P,) կամ առանց որեւէ յորջորջման. (այսպէս CR ։)[1] Միքայէլ Ասորի կը գրէ։ "Ցայսմ ժամանակի թագաւորեաց Արգիացւոցն Պաղամպոս, որ է սկիզբն թագաւորութեան նոցա։ Ի նոցանէ էր Փիլոթէոսն՝ Բարսայախեան անուանեալ Եղանոց։„ Քիչ մը տարբեր ընթերցուած առջեւն ունեցած պիտի ըլլայ այս պատմագրին գաղղիացի թարգմանիչը[3], եթէ անոր թարգմանածը

---

[1] Ձեռագրաց վերնագիրք են տես Հար. Գ, էջ 131 եւ 132—33։ Վիեննայի Թ. 29 օրինակն ալ չունի "Փիլոթեոս„ անունն, եւ ընդհանրապէս այս ձեռագիրն (B²) համաձայն է B ի խմբագրութեան։

[2] Միքայէլ Ասորի. Պատմ. տպ. Երուսաղէմ 1871, էջ 34։

[3] V. Langlois, Chronique de Michel le Grand,

չէ այս ընթերցուածը, զոր կը գտնենք Ասիական Թանգարանի ձեռագրին (Թ. 11) մէջ՝ “Թագաւորեաց Արգեացոցն Պալապոս. ուստի եւ Փիլոտոն երեւեցաւ՝ Բարոյախօսն անասնոց եւ Թռչնոց։„ Լանգլուա ծանօթութեան մէջ (p. 50—51, Ծան. 7) քանի մը տեղեկութիւն կու տայ Փիլիստի մասին, որուն հետ կը նոյնացընէ զՓիլատոս, հետեւելով Վարդանայ պատմութեան հրատարակչին՝ Վենետկեան Հօր՝ կարծեաց։ Վարդան՝ երկրորդելով Միքայէլի Ասորւոյ գլխաւոր կէտերը՝ կը գրէ[1]. “Աստ թագաւորեաց Արգեացւոցն Պելապոս. ուստի Փիլոտոն էր, Բարոյախօսն ամենայն կենդանեաց։„ Հոս՝ ինչպէս կը տեսնուի “Փիլոտոն„ կը կարդացուի (« փիլ. « կամ »), եւ հրատարակիչը (անդ՝ Ծան. 1) կը համարի զայն Փիլիստոս անուն պատմագիրը Դ. դարուն Ն. Ք.[2] սակայն Մխիթարեան Հարց ծանօթ էր “Փիլոտոս„ ընթերցուածն, ինչպէս կ'երեւայ Վարդանայ այս տեղւոյն յիշատակութենէն՝ անուան այս ձեւովն զոր կը գտնենք Հայկազնեան Բառագրոց մէջ (ի բառն “Բարոյախօս„) ինչպէս յիշեցինք[3]։ Բա-

p. 50: „Palapus (Pélops) régna sur les Argiens qui ont fourni le physiologue Philotos (Philiste), auteur d'un traité sur les animaux et les oiseaux.“

1 Վարդան Պատմ. տպ. Վենետ. 1862, էջ 20. Տպ. Մոսկ. 1861, էջ 31։

2 Հրատարակչին (Ալիշանի) բուն խօսքն է՝ “Փիլիստոս անուն պատմագիր մի Ճանաչի կացեալ ի Դ. դարու նախ քան զՔրիստոս, յաւուրս Դիոնիսեայ Կրսերոյն ի Սիրակուսա. իսկ առակախօսն կենդանեաց հետեւող կամ նախօրինակ Եզովբոսի, անծանօթ է ինձ։„

3 Տես վերը. Philatusի յիշատակութիւնն առ Պի-

բուտխօսի այս վկայութիւնն՝ անունն ալ “փիլա-տոս„ ձեւով՝ մուտ գտած է նաեւ Մխիթարայ Այրիվանեցւոյ (ԺԳ. դար) ժամանակագրութեան մէջ[1], ուր աշխարհի ստեղծման 3768 տարւոյն ներքեւ կը նշանակուի՝ “Աստ փիլոսոփան Բարոյախօս ամենայն կենդանեաց։„ Փիլատոսի անունն ու անձը շատերը հետաքրքրած է[2]. սակայն այս

---

արայի (անդ, էջ 101) Մխիթարեանց միջնորդութեամբն եղած է։

[1] Մխիթ. Այրիվ. Հրա. Ք. Պ., ի Պետրբ. 1867, էջ 50, Թրգմ. Histoire chronologique par Mkhithar d'Aïrivank, par Brosset, 1869, p. 43։ Պատկանեանի հրատարակութեան մէջ անունը՝ սխալմամբ՝ եղած է “Փիլոր-տոս„. բայց ձեռագիրն ունի “Փիլատոս„, ինչպէս յայտնի է Բրոսէի նոյն տեղւոյ մասին գրած ծանօթութիւնէն, եւ դարձեալ նորին Պատկանեանի ռուս թարգմանութենէն (էջ 379)։

[2] Ցեանք Մխիթարեան Հարց կարծիքն, որուն արձագանգը կը գտնուի Լանգլուայի քով, որ կը նոյնացընեն զանիկա Փիլիստոս պատմագրին հետ։ Բրոսէ՝ ենթադրելով անուան աղաւաղ ըլլալը, կը հարցընէ (Histoire chronologique par Mkhithar, p. XII) որ “ասիկա չէ՞ արդեօք, ժամանակագրական սխալը չհաշուելով, այն Պալեփատոսն, զոր յաճախ կը յիշէ Եւսեբիոս գիցաբանական այլեւայլ աւանդութեանց առթիւ։„ Այս Պալեփատոսի (Palephatus) մասին մանրամասն տեղեկութիւն կու տայ Florival, Dictionnaire hist., géogr., philol. et critique pour servir d'annotations à l'histoire d'Arm. p. 152. Ալբերխտ Վիրթ, յիշելով Բրոսէի կարծիքն, ինքն ալ կարծիք կը յայտնէ որ ըլլայ այն աւելի եւս Φιλάδιος (յետոյ Φιδάλιος) դիցաբանական զրուցաց մեկնիչն (Albrecht Wirth, Aus orientalischen Chroniken, Frankfurt 1894, p. 115։) Նշանակենք որ Արեւելք, յատկապէս Պարսից քով, ծանօթ է իմաստուն մը فلاطوس “Փիլատոս„ անուն. այսպէս կը կոչուի իմաստուն ուսուցիչն Ազրի, սիրելին Վամիկայ, հաւատարապէս իրրեւ Փիլխաւփայ, յիշուած պարսիկ Նիզամ բանաստեղծէն իւր “Իսկանդեր-նամէ„ գրութեան մէջ. եւ

խնդիրը էապէս հազիւ թէ շօշափէ մեր "Բա-
րուախօսն,,: Եթէ Հայ ձեռագրաց միոյն մէջ (P)
Հեղինակը "Փիլատոս,, կը կոչուի, այս կը ցու-
ցընէ մեր կարծեօք միայն որ նոյն օրինակին գրչին
ծանօթ էին վերոյիշեալ պատմագրաց վկայ-
ութիւնքը նկատմամբ հին "Բարուախօսի ամե-
նայն անասնոց եւ թռչնոց.,, եւ գրիչը մեր "Բա-
րուախօսն,, համարելով իբր երկասիրութիւն
յիշեալ Փիլատոսի՝ անոր ընծայած է: Նախ-
նաբար անանուն հեղինակի մ'երկասիրութիւն
էր "Բարոյախօսն,,: Այս յիշատակարանիս ու-
րիշ լեզուներով ալ գտնուած խմբագրութեանց
պատմութիւնը կը ցուցընէ որ միայն վերջին դա-
րերը սկսաւ ծանօթ անուններու կապուիլ, երբ
սկսան զայն վերագրել ոմանք Եղիշէին, այլք
Բարսղի, ուրիշները հաւասարապէս Յովհ. Ոսկե-
բերանի եւն.[1] (§ 389:)

Ասկէ ետքը կու գայ գլխուս ընդարձա-
կագոյն մասը, մանրամասն ուսումնասիրութիւն
զարգացեալ "Բարուախօսի,, առանձին մասերուն
կամ կտորներուն, քննելով անոնց պարունակու-
թիւնը, յաճախ յառաջ բերելով ռուս թարգ-
մանութեամբ, նշանակելով աղբերքն Վարդա-
նեան եւ այլ հաւաքմանց մէջ, համեմատելով
թէ՛ հայ եւ թէ՛ օտար գրականութեանց մէջի

---

թերեւս Հայ գրչին ծանօթ ըլլալով այս անունը՝ Արգիւացի
"Բարուախօսի,, անուան ձեւին վրայ աղդած է այն, եթէ՝
միրջապէս՝ Փիլատոս ուշ ժամանակի խանգարում մը չէ՝
ծնած Հայ գրականութեան մէջ:

[1] Տես Pitra, ib. p. 101. Lauchert, ib. p. 66.

նմանութիւնքն եւն. (§ 390—416։) Այս մանրամասնութեանց մէջ մտնել անհնար է մեզի։

Կը մնայ այժմ եզրակացական մասն նախընթաց հետազօտութեանց։ Խնդիր մըն է թէ ինչ դեր ունեցած է Բարոյախօսն, որ ըստ ինքեան կենդանախօսական յիշատակարան մըն է՝ զրոյցներով զարդարուած. եւ դարձեալ թէ բաց ի Բարուախօսէ չէ՞ն եղած ուրիշ յիշատակարանք նոյնանման նիւթերով. վասն զի հաւաքմանց մէջ կը գտնուին նիւթեր որ մեր այժմու Բարոյախօսէն դուրս են, ուստի ասոնք ալ ազդեցութիւն ըրած են հաւաքմանց ճոխանալուն, մինչեւ անգամ բժշկարաններ (համմտ. “Գլոս„ առակն՝ ՄԾԲ, տես Հտր. Բ, 274,) աշխարհագրական եւ տիեզերագրական հեղինակութիւնք (համմտ. “Սուրխամահի„ առակն՝ ՄՁԷ, Հտր. Բ, 292) եւ այլ նմաններ (տես § 417—21։) Վերջնոցս կարգին մէջ մեծ տեղ մը կը բռնեն պատուական քարերու վրայ եղած գրութիւնք, որոնց յատուկ հատուած մը կը նուիրէ Հայագէտն (§ 422,) ուր կը յիշուին մեր մատենադարանին Թ. 31 ձեռագրին կրկին կտորները՝ “Անուանք Բժ. ականցն„ եւն, եւ “Այս է գիրք ճօհարնուն„, Առաքելոյ Դաւրիժեցւոյ Պատմութեան մէջ առնուած “Գիրք ճօհարնուն„ (տպ. Էջմ. 1884, էջ 454—67) եւ նմաններ, որոնց մասին ուսումնասիրութիւն մ'ալ լոյս տեսած է Ք. Պատկանեանի գրչէն (Պետրբ. 1873,) քննութեան առնելով “պատուական քարերն, անոնց անուանքն ու յատկութիւնքն՝ ԺԷ. դարուն Հայոց

գաղափարաց համեմատ[1]": Այս տեսակէն կը գտնենք հաւաքմանց մէջ օրինակի համար առակներս "Սափիրա ակն", "Պլաւր ակն" եւ "Խասիաթ Պլաւրի" (ՑԿՋ—ՑԿԸ, տես Հոր. Բ, 332—33,) զորոնք թարգմանութեամբ ալ յառաջ կը բերէ Հայագէտը. (§ 423—25:) Վարդանեան եւ այլ հաւաքմանց մէջ երեւցող "Բարոյախօսական" նիւթերը կը ներկայացընէ յատուկ տախտակ մը. (Տխտ. ԻԹ, էջ 426:)

Բարուախօսը վերջապէս նշանակութիւն ունի ոչ միայն իբրեւ աղբիւր Վարդանայ եւ անկէ ետքը "Վարդանեան" հաւաքմանց հեղինակաց, այլ նաեւ իբրեւ ընդունարան մը պատսպարելու օտար տարրներ, իբրեւ կենդրոն մը՝ որուն շուրջն հաւաքուեցան ինչ ինչ առակներ հին ծագմամբ, նոյնպէս նոր առակներ՝ որ Վարդանայ եւ իւր յաջորդներուն կը վերաբերին: Ցատկապէս ծանօթ է Բարոյախօսի խառն ձեւը, որուն մէջ Բարոյախօսի նիւթերուն հետ հիւսուած են Եսովպեան առակներ եւ Վարդանեան առակուորներ. այսինքն անոր մէջ կը գտնենք հաւաքում մը՝ "Բարոյախօս-Եսովպ" եւ "Բարոյախօս-Վարդան." (հմմտ. § 386:) Եւ այսպէս երկուքն ալ փոխադարձ յարաբերութեան մէջ են, ինչպէս Բարոյախօսը Վարդանայ եւ Վարդանեանց վրայ, նոյնպէս հակադարձաբար վերջինս առաջնոյն զարգացման համար. (տես § 426—428:) — Կը մնայ այժմ երրորդ աղբիւրը:

---

[1] Տես էջ 424: Ինչպէս Հայագէտը նշանակած է (անդ՝ ծան. 3) ուրիշ տեղ մը ("Ցուցակ", 1054) բոլորովին մոռացած էինք այս կարեւոր գործը նշանակել:

## 9.

"Եօթնլեզուեան Առակք„ իններորդ գլուխն նիւթն են, որ գրքիս մեծագոյններէն մին է (§ 429—512,) նախ որովհետեւ հայկական առակաց գլխաւոր աղբիւրներէն մին են, եւ երկրորդ որ սերտ կապ ունին հայ գրականութեան պահած "Ողոմպիանու„ ընտրելագոյն հայ լեզուաւ մեզի հասած առակներուն հետ։ Այս գլխուս ներածական մասն կը բերէ մեզի կարեւոր ուսումնասիրութիւն մ'այն խնդրին՝ թէ հին Հայոց ծանօթ էին "եսովպեան„ առակներու նիւթերը (§ 429։) Եւ այս պէտք է հաստատել ամէն կերպով։ Բուզանդ Յուսկան մեռնելէն († 362) ետքը՝ կ'ըսէ թէ Հայք "Նմանեալք լինէին այնմ հօտի խաշանց, որ ղաղանղանօ-թեան շանց պահողաց պահապանացն ի բաց մերժեցէն, եւ կամօք խորհրդոց կերակուր եղեւ Թշնամութեան գայլոյն մարդկեցուն, ըստ նմանութեան մեծին Աթենացւոց քաղաքին[1]։„ Ակնարկուածն է "Ողոմպիանու„ ԺԲ առակը։ Դաւիթ Անյաղթ կ'ընծայուին "Առածք„ որ ցայսօր անյայտ ըլլան[2]։ Զինչ եւ իցէ՝ Սահմանաց մէջ կը գտնենք հետեւեալը՝ "Գտանեմք երբեմն եւ ղսուտն բարի որպէս զոր ասելոցս եմք։ Եա ոմն ցոմն յաւանդ սուսեր եւ ի ժամանակի բարկութեան չոքաւ խնդրել, որպէս զի սպանումն արասցէ. իսկ նա ուրացաւ թէ՝ Ոչ ինչ ետուր ցիս, եւ ստեաց։ Եւ ահա

[1] Բուզանդ Դ, ժգ. տպ. Վենետ. 1832, էջ 32–3։

[2] Հայկազն. Բառգ. Ա, 13 "Անյայտ միան եւ Առածք Դաւթի անուանեալք։„

սուտ որ երգէ գոյ։» Նոյն հիմն ունի «Վարդանեան» ԽԳ առակն «Աղուէս եւ Ձիտ», որուն նպատակն է ցուցընել նմանապէս թէ «ահա կայ սուտ որ իրաւ արժէ» եւն[1]։ Յովհան Մամիկոնեան Մուշեղի բերանը կը դնէ խօսքերս՝ «Մի զարթուցաներ զառիւծ որ ի քուն է. մի՛ զգայլ որ զիւր բարսն մոռացեալ է։» Գոնէ առաջին մասն ակնարկութիւն է «Ճանճ եւ առիւծ» առակին, զոր պահած է Գրիգոր Մագիստրոս (տես յետոյ։) Թողլով Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ մէկ երկու՝ թէեւ գուցէ խնդրական՝ ակնարկութիւնքն[2], յիշենք Թովմայի Արծրունւոյ (Թ—Ժ. դար) խօսքն[3] Սմբատայ զՄեհրուժան տարաշէկ

---

1 Տես «Սահմանք», Պրակ ԺԵ, տպ. Վենետ. էջ 191—2։ Համապատասխանող ԽԳ առակն տես Հար. Բ. 59—61։

2 Յովհ. Մամիկ., տպ. Վենետ. 1831, էջ 14։

3 Այսպէս կը յիշէ հայագէտն Ագաթանգեղոսի (տպ. Տփղ. 1882, էջ 72—3) Գր. Լուսաւորչի բերանը դրած սա խօսքը՝ «Թէ ոչ քրտնի մշակն ի տապ խորշակի ջերմոյ արեգակնակէզ լինելոյ, ոչ ըմբռնէ արդիւնս շահեկանս ուրախութեանն պաղոցն ձմերանւոյ հանգստեանն»։ Իմաստը նոյն է «Ճպուռն ու մրջիւն առակին հետ, սակայն կրնայ խնդիր ըլլալ թէ «եսովպեա՞ն» առակն առջեւն ունէր գրողը թէ ուրիշ աղբիւր մը, զոր օր. «Բարոյախօս» (ԺԳ։) — Մ. Խորենացի (Բ, ձը) կը գրէ Լիկիանու համար «Ընձու անկարելի է զխայտուցման փոխել եւ Եթովպացւոյ զթխութիւն, նոյնպէս մարդոյ ամպարշտի զբարսն։» Այս խօսքն Յովհան կաթուղիկոս (տպ. Երուս. 1867, էջ 412) փոխած է այսպէս՝ «Այնուհետեւ ապա իբրեւ հնդիկ իմն զանուութիւն թխութեանն յանձնէն ի բաց մերկացեալ, յընտանի սպիտակութիւն սրտի զկերպն փոխարկերէր»։ Հայագէտը յիշելով յունական բազմաթիւ համապատասխանող վճիռները (էջ 430 Ծան.) ի վերջոյ կը մտածէ ըն-

երկաթով պսակելու դէպքը պատմելէն ետքը թէ “Առ սա ինձ ի ճախ եղանէ Թերլնողական ասա-ղէըն որ ասէ. Բազում անգամ աղուէսք թագաւորել խորհեցան, բայց շունք ոչ առին յանձն.” Ուրիշ տեղ մը[1] բացորոշ ալ կը գրէ Արծրունի՝ “Ի դէպ եղանէ եւ հին ասացողէն Ող-պիանոս Փիլիսոփայի, որ վասն առաջնոյն եւ զուա-րճկայն են բարառնութիւնք. տեղեակք են այսմ ուսումնասէր անձինք.” (տես “Ողիմպիան,” ԺԳ։) Կը գտնուին նաեւ ուրիշ ակնարկութիւններ[2]։ Անցնելով Ստեփաննոս Ասողկան (Ժ—ԺԱ. դար)

---

գտնուիլ որ Խորենացի աչքի առջեւ ունի Ս. Գրոց (Երեմ. ԺԳ, 23) խօսքը՝ “Եթէ փոխիցէ Հնդիկ զմորթ իւր եւ ինձ զխայտուցս իւր եւ դուք կարասջիք լինիցիք գործել զբարիս ուսեալք զչարիս”։ — Խորենացւոյն այս տեղւոյն մասին տես նաեւ Կարիէր, “Նորագոյն աղբերք” եւն (Վիեննա 1893, էջ 25 ծան. 1։) — Այս առթիւ կը յիշէ Հայագէտը (էջ 431) նաեւ Եւագրի Պոնտացւոյ առ Մելանիա գրած թղթոյն միոյն մէջ հետեւեալը՝ “Ցառակի ուրեք ասացեալ է թէ Խածեալն յինձէ զդաւս իւր պատմէ Հաղորդին կրից իւրոց. զի գիտասցի ինչ մխիթարութեան” (տես Զարբհ. “Թանգարան,” եւն, էջ 428։) — Թովմ. Արծր. տպ. Պետրբ. էջ 66։

[1] Անդ՝ էջ 123։

[2] Հայագէտը յառաջ կը բերէ հետեւեալը (տպ. անդ, էջ 291) “Ամենեցուն իսկ ընթերցասիրաց յայտնի են պատմեալքս՝ զի այր արծաթասէր արով գելուլ զպարանոցն լաւագոյն համարի քան եթէ դանգ մի տուժել յարծաթոյն, եւ եթէ զարեգակն տեսանիցէ արձակելով զճառագայթսն ի խնամս տիեզերաց ըստ հրամանի խնամողին Աստուծոյ, ընդդէմ նորա ասէ. Ընդէ՞ր փոխանակ լուսոյդ ինձ ոսկի ոչ բղխես. եւ եթէ աղբիւր ակնավճիտ տեսանիցէ, ասէ՝ Չեմ ծարաւի եւ ոչ երբէք արբից ի քէն ջուր. մատո ինձ արծաթ”։ Տես Վարդանայ առածները Է եւ Ը. (Հոր. Գ, 80։)

յիշուի հետեւեալը.[1] "Ապա թէ պաճուճանս միայն դնէք զանուանս նոցա զօրէն ռամկի թագաւոր կերպարանեալ, զի մի ասացից Ողոմպենեան կերպարանեալ զկենդանին զայն կամ զարծաթեան զանց արարեալ զծային առասպելս առ այլոց հասարակ կեղծեցելութեամբ. ո՞չ ապաքէն խաբէութիւն է առ տգէտս" եւն: Ակնարկուածներ կան Ողոմպիանոսքով. (Է եւ Ժ:) Այս տեղը բուն Անանիա չէ, այլ Խաչիկ կաթուղիկոսի (972—992 Ց. Ք.) հրամանաւ Սեբաստիոյ մետրապոլտին Թղթոյն տրուած պատասխանին մէջը կը գտնուի:

"Եսովպեան" առակներն ուրեմն Հայոց ծանօթ էին: Բայց բովանդակ Հայ գրականութեան մէջ չի յիշուիր Եսովպայ Առակաց հաւաքումն նոյն անուամբ: Ծանօթ էին անոնք հռետորական գործերէ, անանուն զրոյցներէ, խառնուած Վարդանեան առակաց հետ, եւ Ողոմպիանոս անուամբ: Թովմաս Արծրունւոյ "Ողոմպիանոս փիլիսոփայի" ուղղագրութիւնն անշուշտ գրչի սխալ մ'ըլլալու է՝ "Ողոմպիանու" գրելու տեղ:[2] Գրիգոր Մագիստրոս ԺԱ. դարուն իւր առ Եփրեմ Բջնոյ եպիսկոպոս գրած "յՂընուանց" նամակին մէջ "Ողոմպիան" ձեւով կը

---

1 Անողիկ, տպ. Պետրբ. 1885, էջ 203:

2 Brosset, Collection d'hist. arm. p. 107 "Ողոմպիան" կը թարգմանէ Volpian, եւ կը յիշէ՝ չգիտենք ինչ աղբիւրէ՝ իրեն ծանօթ հետեւեալ անձինքը՝ "1. Վուլպիանոս (Vulpien) մը՝ իրաւագէտ Հռոմայեցի, † 228ին, որ բազմաթիւ գործքեր գրած է իրաւանց եւ բարոյից վրայ. — 2. Անտիոքացի սոփեստ մը, երիտասարդ մեռած, յԱթէնս, Կոստանդիանոսի Մեծի ժամանակ:"

յիշէ անունը[1]։ Ձեռագրաց մէջ յաճախ կը յորջորջուին "ոլոմպիական տօնէ" պէսպէս այլուղղագրութեամբ (տես յետոյ § 455), բայց այս "ոլոմպիական" ուրիշ միօք առնելու չէ[2], այլ իբրեւ "Ոլիմպիական = Ոլիմպիանոս"։ Հայ գրականութեան մէջ Ողիմպիանու մասին տեղեկութիւններ պահուած չենք գիտեր, բայց իւր անուամբ հայ լեզուաւ կայ հաւաքում մ'եսովբպեան առակաց (§4 30։)

Եսովպեան առակները հայ մատենագրութեան մէջ անցած են ըստ երեւութին յունական հեղինակներէն։ Հաւանական է որ յունական առակներ կային հայերէն լեզուաւ, ինչպէս կը տեսնուի Խորենացւոյ առ Սահակ Բագրատունի անոր Պարսից առասպելաց ունեցած միտութեան մասին տրտնջելով՝ գրած սա խօսքերէն[3]. "Զի՞նչ քեզ առ այսպիսի կարօտութիւն առասպելք սուտք . . .։ Մի՞ արդեւաք յունական դէրծ եւ ողորմ առասպելին իցեն հանդերձ պատճառաւ, որք զճշմարտութիւն իրացն այլաբանաբար յենթեմանս ասելն ցանկացեալ։" Թէ այս բանս ("առասպելք") առակաց իմաստով առնելու է,

---

[1] Տես ձռգր. Միւնխենի Cod. Arm. IV. 77։ Տես մեր "Ցուցակ" եղ 150, ուր յառաջ բերուած է նոյնը.

[2] Այս մասին երկար կը խօսի Հայագէտը՝ յառաջ բերելով մեր Թ. 29 ձեռագրին "Բարոյախօսի" մէկ կտորն ալ (Թղ. 18բ) "Ղեմարոս նման է Դանիէլ խոտոյ (— "Դանիր"ի մասին առակ մը տես ՄԼԷ, Հատ. Բ, 266 —,) որ չորրորդ ծագին ունի եւ դիւրաւ անցանի, զոր թագաւորքն փարեմփին եւ ոլոմպիական տօնին սերմաննեն" եւն։

[3] Մ. Խոր. Ա գլուխն յաւելուածին մէջ, տպ. Վենետ. 1865, եջ 62։

կը հետեւի խօսքին ընթացքէն, նաեւ այն մեկնութենէն, զոր հռետորք կու տան, զոր օրինակ երբ Ափթոնիոս կը սահմանէ թէ "Առասպել (μῦθος) է բան սուտ՝ որ ճշմարտութիւնը կը պատկերացընէ." Նոյնպէս Թէոն։[1] Գրիգոր Մագիստրոսի իւր Բարսեղ եւ Եղիշէ աշակերտաց գրած ԺԳ. խնդրոյ գրոց Արիստոտէլի" Նամակէն կ'իմանանք որ ԺԱ. դարուն Հայոց քով դպրոցական հրահանգաց մաս կը կազմէին առակները, զոր Մագիստրոս "առասպելաճոռոմաբանութեան" կը կոչէ[2]։ Միայն թէ հետաքրքրական պարագայ մըն է որ հռետորական "Պիտոյից" գրոց մէջ՝ որ հիմնուած է Թէոնի "Նախակրթութեանց" վրայ, կը պակսին յառաջաբանին հետ երկու գլքեր՝ "Վասն Առասպելաց" (περὶ μύθου) եւ "Վասն Պատմութեանց" (περὶ διηγήματος)[3] որոնք Թերեւս իբր դպրոցական գրքեր առանձին գտնուէին։ Ողիմպիան յոյն առակագիրը կը ծանօթ չէ. բայց կայ հատուած մը, զոր՝ թէեւ չափազանց

[1] Երկուքն ալ տես Rhetores Graeci, ed. Walz, I, 59 եւ 127։

[2] Ձեռագր. Միւնխենի՝ Cod. Arm. IV. 74—5։ — Մեր Թ. 27 ձեռագրին մէջ այսպէս է տեղս (Թղ. 38բ) "Քանզի նախ պարտ է զքերականութիւնն հանդերձ թարգմանութեամբն ուսանել, տիրապէս մակստացականութեամբ. եւ ապա զսահմանողացն պարունակել եւ պղատոնական եւ արիստոտելական, եւ դարձեալ պիթագորական կատակնակերտութեան բացորոշմանց եւ դատողութեանց, նախուստ քան զայսոսիկ կրթելովք ներկուռ վերծանութեամբ զհին եւ զնոր կտակարանս, եւ առասպելաբանութեանն ի բազումս" եւն եւն։

[3] Տես Baumgartneri քննութիւնն ի ZDMG, Bd. XL, 463.

լակոնական ոճով՝ կը յիշէ Սուիդաս "Ողէմպիանոս, սոփեստ„[1]։ Մտադրութեան կէտ մ'ալ այն է որ Ողիմպիանու անուամբ առակներն իրենց համապատասխանողներն ունին հռետորներուքով, այսպէս Հերմոգենեայ, Ափթոնիոսի, Ափթոնիոսի. (այս համեմատութիւնքն կ'ընէ հայագէտն իւրաքանչիւր առակին վրայ խօսած ատեն, տես § 436—38, 441—50։) Ողիմպիանու հաւաքման են յատկապէս ժե առակներ, որոնք մնացելոց հետ կրնային զետեղուած ըլլալ Ողոմպիանու ճարտասանութեան կորսուած մասին մէջ, եւ այն "վասն Առասպելաց„ գիրքը՝ ճարտասանութենէն անջատ՝ կրնայ ձուլացուցած ըլլալ եսովպեան առակներուն թիւը (տես § 431։)

Ողոմպիանու առակները տպագրուած են ի Վենետիկ 1842ի Գոշի առակաց հետ՝ գրքին ծայրը (էջ 169—87։) ինչպէս նաեւ յետոյ 1854ին։ "Առակք Ողոմպիանու„ խորագրով 12 առակ ալ կը գտնենք Էմինի հատընտրին մէջ ("Ընտիր Հատուածք„ եւն, Մոսկ. 1849, էջ 7—11։) Աշխարհաբար հրատարակեց Խորէն Միրզաբէգեանց՝ "Գոշ Մխիթարայ, Ողոմպիանու եւ Եզովպոսի ընտիր առակները„ (Բագու 1878, Ողոմպիանու՝ էջ 93—105։) գերմաներէնի ալ թարգմանուած են Վ. Ռօթի խնամովք եւ լոյս տեսած անոր մահուանէն ետքը.[2] (§ 432—33։)

---

[1] Suidas, Lexicon, ed. G. Bernhardy, II, 1853. ᾿Ωλυμπιάνειος (այլ օր. ᾿Ολυμπιάνος, σοφιστής, τοῦ ᾿Ολυμπιανείου.

[2] W. Roth, die Fabeln des Olympianus, ի գիրս՝

Ողոմպիանու մասին քննադատական մը գրեց Նայման Վենետկոյ 1842ի Հրատարակութեան առթիւ։[1] Նայման անհաւատալի չի գտներ այն կարծիքն որ ասոնք Ե. դարու թարգմանուած ըլլան, թէեւ զարմանալի ըլլայ որ որեւէ հետք մը չի գտնուիր “Ողոմ...„ կամ “Ողիմպիանոս„ ո՛չ հին յունական եւ ո՛չ Բիւզանդեան առակագրի մը։ Կ. Լ. Ռօթ 1853ին այն կարծիքն յայտնեց որ հաւաքմանս փոքրկութիւնը չի ներեր զանիկա առանձին գիրք մը նկատել, ուստի “Ողիմպիանոս էր թերեւս հեղինակ հռետորական դասագրքի մը, Նախակրթութեանց (προγυμνάσματα), որուն “Վասն Առասպելաց„ (περὶ μύθου) հատածէն առնուած կրնան ըլլալ այս 23 առակները.„ յաւելլով որ “եթէ ուղիղ է այս փոքրիկ հաւաքման արդէն Ե. դարուն հայերէնի թարգմանուած ըլլալը, այն ժամանակ եսոփպեան հնագոյն բնագիրներէն կ՚ըլլայ[2]։„ Լանկլուայ ընդհակառակն 1869ին կը համարի որ ասոնք հեթանոս հեղինակի մը գործ չեն, այլ քրիստոնէի, հաւանականօրէն՝ “գործ Մխիթարայ կամ Վարդանայ[3]։„ Վերջապէս Նորայր Բիւզան-

Leben und Erstlingsschriften Wilhelm Roth's aus seinem Nachlasse. Göttingen, p. 67—77.

1 Neumann, Arhagk Ochompianou, ի ZDMG, II, 118–122.

2 K. L. Roth, die aesopische Fabel in Asien ի „Philologus“ VIII, յատկապէս էջ 132–3 եւ 140:

3 Ծանօթութիւն մ'իւր յօդուածին մէջ՝ Mémoire sur la vie et les écrits du prince Grégoire Magistros, ի Journ. As. 1869, XIII, 37 (առանձին Պարիս 1869, էջ 32, ծան. 2։)

դացի[1] Ողիմպիանու առակաց Թարգմանութեան ժամանակն անորոշ կը գտնէ, սակայն Թ. դարէն յառաջ, քանի որ Թովմաս Արծրունւոյ ծանօթ է ԺԳ. առակը։ Ողոմպիանու են ԺԵ առակները, իսկ ԺՋ—ԻԳ՝ որոնց լեզուն կը ռամկանայ, կը վերաբերին Աղուեսագրոց կամ առակաց Վարդանայ (§ 434։)

Քանի մը խօսքով նշանակելով հայագէտն այն կէտը (— որոյ մասին քիչ մ'ետքը —) որ Ողոմպիանու առակներն օրինակաց մէջ երկու ցեղ կը գտնուին (զորոնք O^v եւ O^m կը նշանակէ), իւրաքանչիւրն դարձեալ երկու ձեւով, կ'անցնի ուսումնասիրել առաջին ցեղին (O^v) վերաբերող տպագիրը, զոր א եբրայական տառով կը նշանակէ։ Տասնեւհինգ ողիմպիական առակները (Ա—ԺԵ, տպ. էջ 169—81) մի առ մի յառաջ կը բերուին ռուս Թարգմանութեամբ, կը նշանակուին աղբերքն եւ համապատասխանող կտորները յունական հաւաքմանց, միով բանիւ լիակատար ուսումնասիրուած եւ պարզաբանուած (§ 436—51։) Կը ցաւինք որ անհնար է մեզի հոս մանրամասնութեանց մէջ մտնել։ Այս տասնուհինգ առակները կը կըրկնուին ամբողջովին նաեւ միւս թէ համառօտ եւ թէ ընդարձակ հաւաքմանց մէջ, ութ առակ (Ջ—ԺԴ) "Բարոյախօսի" ընդմիջարկեալ օրինակին մէջ, գրեթէ ամբողջն (Ողիմպիան-Մխիթար՝ ընդարձակ ցեղ) Վարդանեան հին Br.

---

1 Ն. Բիւզանդացի, "Հայկական Բառաքննութիւն", Կ.Պ. 1880, էջ 51։

հաւաքման մէջ, վեց առակ F հաւաքման ծայրը, եւն: Այս ամէն հանգամանքները պայծառ կը ցուցընէ Ողիմպիանու առակաց տախտակ մը (Տխտ: Լ,) ուր նշանակուած են միւս հաւաքմանց համեմատականքն. (§ 452:) Այս ամէնը պէտք է նկատել իբր սկզբնական կէտ այն խնդրին թէ ինչ էր Ողիմպիանու առակաց իսկական ծաւալը եւ ինչ տեսակ զարգացմունք ունեցած է. խնդիր մ'որուն լուսաբանութեան նուիրուած են յաջորդ հատածները (§ 452—58), յատկապէս ուսումնասիրելով ձեռագիրները:

Ողիմպիանու հաւաքումն ձեռագրաց մէջ կը գտնուի երկու գլխաւոր տեսակով կամ ցեղով, որոնց մին հայագէտը կ'անուանէ “Ողիմպիան-Վարդան„ ($O^v$), միւսը՝ “Ողիմպիան-Մխիթար„ ($O^m$). երկուքն ալ դարձեալ կրկին ձեւով, համառօտ եւ ընդարձակ: Նախ “Ողիմպիան-Վարդանի„ (§ 454) համառօտ ձեւը ծանօթ է մեզի Վենետկոյ մէկ ձեռագրէն՝ Թ. 1091, եւ հաւանօրէն անկէ հրատարակուած են 1842ի “Առակք Ողոմպիանու„ խորագրով: Ձեռագրին մէջ առակներս (էջ 46—59) սա վերնագիրն ունին “Ողոմպիանու առակք.„ յետոյ կու գան Մխիթարայ Գոշի առակները (էջ 59 եւն:) Վերջին (ԺԶ—ԻԳ) առակներն, ինչպէս արդէն ըսինք, Վարդանեան առակաց խումբ մը կը կազմեն: “Ողիմպիան-Վարդան„ ցեղին երկրորդ ընդարձակ ձեւը կը ներկայացընէ Վիեննայի 1746ին գրուած Թ. 29 ձեռագիրն[1], ուր նախ կը գրուին

1 Տես այժմ “Ցուցակ„ 163–74, յատկապէս՝ 166:

(Թղ. 57 ա) խորագրով "Ողոմպիանոս առաքէն այս էն ըստ չորքին" տպագրութեամբ ծանօթ ԻԳ. կտորներն, յետոյ անոնց կը կցուին՝ առանց որեւէ բաժանման՝ ուստի իբր մի ամբողջութիւն՝ 26 ուրիշ յաւելուածական առակներ. ըստ այսմ ամբողջն (Թղ. 57 ա—72 բ) ունի 49 կտոր առակ, որոնց վերջինները Վարդանեան հաւաքմանց մէջ ալ կը գտնուին:

"Ողիմպիան-Մխիթարայ" (§ 455) առաջին կամ համառօտ ձեւը կը ներկայացընէ Վիեննայի Թ. 320 ձեռագիրն, 1388էն յառաջ գրուած եւ Նախնաբար Սեւանի հաւաքման մաս, պարունակելով ընդհանրապէս իմաստասիրական գրուածքներ[1]: Նախ կան ծանօթ (հմմտ. (§ 364) "Առաքէ զոր ասէն իմաստասէրքն"՝ հինգ կտոր (Թղ. 254 ա եւն,) յետոյ "Առաքէ Օղոմպիանոսին" (Թղ. 254 բ եւն,) ընդ ամէնը 18 կտոր, այսինքն 15 Ողոմպիանու առաջինքն, եւ երեք ուրիշ կտորներ: Ողիմպիան-Մխիթարայ ընդարձակ ձեւը կը գտնենք Վենետկոյ Թ. 1108 ձեռագրին մէջ, գրուած 1318 ին ի Գլաձոր[2], ուր բաց ի ուրիշ

---

[1] Տես մեր "Մատենագր. մանր Ուսումն." եւն. Ա, 199–200, այժմ "Ցուցակ", 763–4:

[2] Յիշատակարանը կը հաղորդէ Հայագէտը (տես էջ 459–60), ուր ի միջի այլոց կ'ըսուի "...աւարտեցաւ հոգիացուցիչ տառքս ժողովեալ ի բազմաց... Նախ եւ առաջին բնն Երանոսեանն, եւ Հայր մեր որ յերկինս, եւ Հարանց վարք, ապա Ընթանոսեանն, ապա Պղատոնին յանանէն...: Արդ ես Սարգիս համբակ եւ սպասաւոր բանի... բազում աշխատութեամբ ծրաբրեցի զսայ իմովս փցուն եւ անարհեստ մտօքս, բաժանեցի զսա իբրեւ զմեղու...: Եւ եղեւ կատարումն գրոցս ի թվ. ՉԿԷ (= 1318), ի դաւա-

գրութիւններէն կը գտնենք “Բանք իմաստասիրաց„, յետոյ քիչ մը յառաջ յիշուած “Առակ իմաստնոց„ եւ յետոյ “Ողիմպիան-Մխիթարայ„ առակները (էջ 838—854,) սկիզբն այսպէս՝ “ոլոմ| առակ աւլաւմպիական:„ Այս տեսակին մէջ ըստ այսմ մուտք գտած են այն “Առակք իմաստնոց„, որոնք բաց ի ասոնցմէ մտած են նաեւ միւս հաւաքմանց մէջ, այսպէս “Բարոյախօսի„ Տ օրինակին, Վարդանեան Br. հաւաքման եւ նաեւ միւս հաւաքմանց մէջ, (տես մանրամասն § 456 եւ Տխտ. ԼԱ:) Եւ այսպէս կ'ելլեն բազմազան նիւթերով բաղադրեալ հաւաքումներ. օրինակի համար իմաստնոց առակներու, Ողիմպիան Վարդանայ եւ այլ նիւթերով՝ թուով 64—65 կտոր՝ աճած բաղադրութիւնն է Բերլինի ձեռագրին (Br.) այն հաւաքումն՝ խորագրովս “Վարդան վարդապետի ասացեալ Առակ Բարոյախօս„, զոր այն ձեռագրէն հրատարակած է հայագէտը. (Հտր. գ. 97—110, առակք Ա—ԿԵ:) Սակայն այս վերջինը (Br.) կարեւոր է այն կողմանէ ալ որ ամբողջ պահած է “Ողոմպիան-Վարդան„ ձեւը, նախ Ողոմպիանու առաջին առակները (Թիւ ԻԴ—ԽԵ,) պակսելով չորս առակներու, թէեւ նոյն հաւաքման համեմատականներ կը գտնուին ուրիշ տեղեր, եւ յե-

---

ռիս Վայից ձորոյ յանապատս Գլաձոր, ընդ հովանեաւ Ս. Ստեփաննոսի, եւ մեծ վարդապետի եւ անյաղթ հռետորի Եսայեա, ի թագաւորութեան Հայոց Աւշնի եւ ի կաթողիկոսութեան [. . .], եւ յիշխանութեան գաւառիս Ամիր Հասանայ, որդւոյ Իւանէ, որդւոյ Ամիր Հասանայ, որդւոյ Պռոշայ բարեպաշտի:„

տոյ Գոշի առակներ (թիւք ԽԵ—ԿԵ։) Հոս Ո-ղոմպիանու առակաց խմբագրութիւնն ու լեզուն անփոփոխ չէ մնացած. (տես (§ 457։) Վերջապէս առակ մ՚ալ կը յիշէ Գրիգոր Մագիստրոս Ողիմ-պիանու անուամբ[1]։ Իւր յառաջ բերած առակը ճոխացած է ուրիշ տարրներով, եւ յատկապէս խօսելով Ողիմպիանու հետ գործ չունի, շատ

---

1 Այս առակն մեր մատենագարանին Թ. 27 ձեռա-գրին համեմատ հաղորդած ենք ուրիշ տեղ մը (“Ցուցակ„, էջ 150։) Հայպապետը կը հաղորդէ նոյնը Միւնխէնի ձե-ռագրին (Cod. Arm. IV, էջ 77) համեմատ՝ նշանակելով մերինին տարբերութիւնքն ալ (էջ 464–5։) Մագիստրոս իւր առ Եփրեմ եպ. Թղթոյ “յղ. նուանց„ թղթին մէջ կը գրէ այս առակն, սկսելով այսպէս. “Այլ ինձ ոչ սակաւ եհան հիացումն համարողութեանդ քո յերկրաչափականն համարձակելոյ մտանել եւ զմեզ շարժել ահա զօրէն ծոյլն Ոլոմպիանեայ կամ ասացեալն թէ ճանճ ճոխացեալ ճո-ղոպրել կամեցաւ զճաշակս ի ծամելեաց առիւծուն՝ ի քուն զնա գտեալ. զոր այսր անդր զագին գալարեալ հողմա-հարիւր ի բաց մղեալ, եւ ոչ ստուցեալ թռչուն արտա-կայիլ։ Ապա կաճեաց կեռօքն կափել կոկորդակափ կասեաց ընդ ժանեօքն, եւ ժպտեալ զոմանս եթող կիսամահ ընդ ունգունս զերծեալք. զոր ի դատաստանին մտեալ Ակա-րոլեան ճանճիցն ճենճերելով ճխմեալք (մերն՝ “ճեմեալ„) ճռռոմաբանեն զճաշակաց առիւծուն. զոր ոչ ընկալեալ իրաւունսն ի՝ կրիտիսէն (κριτής, դատաւոր) կրէկացի ասէ (— “կրէկացի„ թերեւս յոյն κρέκω կկել, նուագարան զարնել, հնչել եւն բառէն, մերը “կրէտացի„)՝ ճանճիկ, ի ճոխ առիւծուց ծամելիս այլ մի մտաներ, յորժամ ի քուն մտանէ, եթէ ոչ՝ ճմլիս, ճպճպիս, շատ ճենճերաս. ի ծակն ի փեթակն ճանճիկ անդ տըզզա՛, բզզա՛, եւ յարքունիս մի երթար։ Արդ ի խուղն, ի խուցն, ի խրճիթն անդ սաղմոսէ նուագել. ի ճեմարանս մի ճեպիր, եթէ ոչ՝ ճանճին պէս ճմլիս։„ — Կը տեսնուի որ Մագիստրոս ուրիշ առակ մը կ՚ուզէ ի մէջ բերել, բայց ոչ թէ այս Ողիմպիանուն է՝ որուն միայն “ճայի„ առակն անցողակի կը յիշէ։

շատ կեղծ-Ողիմպիան կտոր մըն է, որ թերեւս ցուցընէ թէ Ողիմպիանու հաւաքումն հին ժամանակ այլեւայլ օտար ճոխացումներ ալ ընդունած էր։ Սակայն ըստ ինքեան Մագիստրոսի կտորը ժողովրդեան բերնէն քաղուած կ՚երեւայ. (§ 458։)

Մինչեւ հոս տեսանք այն “եսովպեան„ առակներն որ Ողիմպիանու անուամբ ծանօթ են Հայոց։ Սակայն բաց ի Ողիմպիանու հաւաքմանէն՝ բազմաթիւ “եսովպեան„ առակներ կը գտնենք Հայոց քով, Վարդանեան հաւաքմանց մէջ մեծ թիւ մը կազմելով։ Կրնայ խնդիր ըլլալ թէ մի գուցէ ասոնք ուրիշ աղբիւրներէ անցած ըլլան Հայոց, յատկապէս արաբական եւ ասորական հաւաքումներէ. (տես § 459։) Քանի որ Արաբաց վիպական, բժշկական եւ այլ ճիւղերու գրականութիւնն այնչափ ազդած է Հայոց միջին դարեան մատենագրութեան վրայ, կրնար կարծուիլ որ միջնորդ դեր մը կատարած կրնան ըլլալ նոյն առակները Հայոց փոխանցելու։ Եւ սակայն թէեւ “Լոխման՝„ որուն անուամբ են ծանօթ Արաբացւոց “եսովպեան առակները, անծանօթ չէ Հայոց[1], չենք գտներ՝ արաբական բնագիրքն մի առ մի ալ քննելով որ Լոխմանի առակներն

---

[1] Նոյնը կը յիշէ օրինակի համար Խաչատուր Կեչառեցի Աղեքսանդրի վարուց իւր կաֆաններուն մէջ, տես այժմ Կ. Կոստանեանց “Գրիգորիս Աղթամարցի„ եւն, Տփղ. 1898։ էջ 121 (Յաւելուած “Աղեքսանդրի Պատմութեան կաֆաները, Թիւ 35։) Հմմտ. մեր “Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ„ (Վիեննա 1892), էջ 119, ուր կը տեսնուի որ ոչ ամէն ձեռագիր ունի նոյնն այնտեղ։

*անմիջապէս ազդեցութիւն մ՚ըրած ըլլան յի-շեալ՝ Հայոց քով գտնուող եսովպեան առակ-ներուն վրայ, կամ ուղղակի կապ մ՚ըլլայ Հայ եւ արաբական առակաց։ Կը մնար Ասորականն, որուն մասին ալ միեւնոյնը կրնանք ըսել, թէեւ ասո-րական գրականութիւնն՝ որ ճոխ է առակներու հաւաքմամբք ալ*[1]*, նոյն եւ աւելի եւս ազդեցու-թիւն ըրած է մանաւանդ հին Հայ գրականու-թեան վրայ։ Ըստ այսմ ոչ արաբականն եւ ոչ ասորականը միջնորդ դեր մը կատարած են "եսովպեան" Հայ առակաց համար.* (§ 459—61։)

*Այսկէ ետքը կը մնար Հայ հաւաքմանց մէջ գտնուած (բաց ի Ողիմպիանու անուամբ եղածնե-րէն) առակներն ուսումնասիրել։ Այս ալ եղած է նոյն ընդարձակութեամբ եւ հիմնականու-թեամբ զոր արդէն քանիցս տեսանք նման միւս դիպաց մէջ։ Մի առ մի այս ամէնը հետա-զօտուած են,՝ ոմանք՝ որոնք արդէն ուրիշ տեղ մը չէին թարգմանուած՝ յառաջ բերուած ուուս թարգմանութեամբ* (— *յատկապէս հե-տեւեալքն այս կարգաւ՝ թիւք* Խ, ՄԺՁ, ՂԵ, ՑՀԱ, ՃԲ, ՂԳ, ՄԻԹ, ՂԹ, ԻԷ, ԿԷ, ՃԺԳ, ԺԸ,

---

[1] *Թէ Լոկմանի եւ թէ ասորական "եսովպեան" խմբա-գրութեանց մասին մատենագրութիւնքն ուրիշ տեղ մը նշանակելու առիթ ունեցանք. (տես "Հանդէս Ամս." 1899, էջ* 129–30 *եւն։) Աւելցընենք հայագիտին նշանակածներէն՝* Hochfeld, Beiträge zur syrischen Fabelliteratur, *Հալլէ* 1893. *Եսովպայ մասին՝* August Hausrath, Untersuchungen zur Ueberlieferung der aesopischen Fabeln (*նախ ի* XXI Supplementband der Jahrbücher für classische Philologie, 1894, p. 247–310), *եւ ուրիշներ։*

ՃԱ եւ ԺԶ, որոց եւ մնացելոց բնագիրքը տես Բ Հատորին մէջ, —) քննադատութեամբ բնագիրներու, հետազօտութեամբ յունական իսկական կամ մերձաւոր համեմատելի կտորներու, եւ այլ բնագրաց, միով բանիւ ամէն տեսակէտով լուսաբանուած. (տես § 462—510։) Մեզ հոս անհնար է այս մանրամասնութեանց մէջ մտնել։

Կը մնայ պարզաբանել կարեւոր խնդիր մը, այն թէ ե՞րբ թարգմանուած կրնան ըլլալ "եսովպեան„ առակներս հայերէնի. (§ 511։) Անհնարին չըլլալով ալ՝ որ ուշ ժամանակ ասոնք յունարէնէ հայերէնի փոխադրուած ըլլան, հաւանականագոյն է որ գոնէ մեծամասնութիւնը հայ գրականութեան մէջ կային արդէն Ժ. դարուն։ Բաց ի յունական հռետորական դասագրոց թարգմանութենէն, որուն կ'ակնարկէ Մ. Խորենացի՝ ինչպէս տեսանք, առակներս՝ անշուշտ հայերէն թարգմանութեամբ՝ ծանօթ էին Խաչիկ կաթուղիկոսի առ Ասողկան, Թովմայի Արծրունւոյ եւ Գրիգորի Մագիստրոսի, ինչպէս տեսանք, որ մատենագիրներ են Ժ. եւ ԺԱ. դարուց. նաեւ Մագիստրոսի վկայութենէն գիտենք որ դպրոցական հրահանգաց ալ մաս կը կազմէին։ Արդ հայագէտն երեք շրջան կ'ընդունի հայ գրականութեան զարգացման, նախ սկսած ասորական-քրիստոնէական քաղաքակրթութեան տիրապետութեան ներքեւ, երկրորդ՝ զարգացած յունական-բիւզանդական դպրոցին ազդեցութեաններքեւ, եւ երրորդ բնիկ ազգային անկախ

զարգացումն՝ փորձուած արդէն ի վաղուց։ Եսով-պեան առակներս ի հարկէ երկու առաջին թարգ-մանական շրջաններուն կը վերաբերին, եւ այն՝ անշուշտ յունականին։ Վասն զի ընդունելով ալ որ կարելի է ասորականէն փոխադրութիւնն ալ, ինչպէս որ այսպիսի անուղղակի ճամբով թարգ-մանութիւններ կան յունական գրոց (զոր օր. Եւսեբեայ Եկեղ. Պատմ.) սակայն որեւէ ասորա-կան ազդեցութիւն չենք գտներ առակացս վրայ եւ ոչ դոյզն կապ մը հայ առակացս՝ ասորակա-նաց հետ։ Ընդհակառակն եսովպեան առակացս հայ բնագիրքն անմիջապէս յառաջ եկած են յունական բնագիրներէն. մինչեւ անգամ լե-զուական քանի մը մանրամասնութիւնք մատնա-նիշ կ՚ընեն այս կէտը, յատկապէս Ողիմպիանու առակաց մէջ՝ որ հեղինակ է եսովպեան առակաց խմբի մը հաւաքման, որ քաղուած է յունական հռետորական դասագրքի մը հայերէն թարգ-մանութենէն. այսպիսի առակներու հաւաքմանց դպրոցներուն մէջ մտնելն արդէն Նախ Յունաց քով եղած է։ Եթէ դժուարութիւն մը՝ անշուշտ առերեւոյթ՝ կայ, այն է որ առակ մը ծանօթ գտանք Փաւստոսի Բուզանդայ, որ հաւանօրէն հայ գրականութեան առաջին՝ ասորական ազ-դեցութեան ենթարկեալ՝ շրջանին վերաբերող մատենագիր մըն է։ Սակայն թողլով այն կէտն որ չենք կրնար հաստատել թէ Բուզանդայ գրքին արդի ձեւը նախնականն էր, Բուզանդայ կրնար ծանօթացած ըլլալ այս եւ ուրիշ առակներ նաեւ առանց հայ թարգմանութեան։ Ըստ այսմ՝ հայ-

ագէտն եսովպեան առակաց հայ թարգմանութիւնը կը վերագրէ հայ գրականութեան յունական ազդեցութեան շրջանին, մօտաւորապէս Զ—Է. դարերուն։ Ողիմպիանու հաւաքումն առակներու հռետորական մշակմանց կարգէն ըլլալով՝ թերեւս ծանօթացած են Հայոց հելլենական շրջանին, երբ դպրոցական կրթական ուսմունք հիմնուեցան ի Հայս։ Դարձեալ՝ թէեւ յառաջ ալ ծանօթ՝ յետոյ կրնան այս եսովպեան առակաց սէրն ու հետեւաբար ծանօթութիւնքն սաստկացած ու աճած ըլլալ, որուն մեծ զարկ տուած ըլլալու է այն պարագան որ ԺԱ. դարուն դպրոցական հրահանգաց մաս սկսած են կազմել առակներն, ուստի այս զարգացումն նոյն դարէն ետքը կրնայ ըլլալ։ Յամենայն դէպս որեւէ կերպով Վարդան չէ առաջին Թարգմանը, ուստի ինքը չէ որ առաջին անգամ ԺԲ. դարուն յունարէնէ թարգմանած ըլլայ առակներս, ինչպէս ոմանք կարծած են[1]։

Այսպէս վաթսունէն աւելի եսովպեան առակներ կը գտնենք հին հայերէն (գրաբար) լեզուաւ թարգմանուած, որոնց տասնեւհինգը Ողիմպիանու խմբագրութեամբ։ Յատուկ տախտակ մը (Տխտ. ԼԲ, էջ 508—9) կը նշանակէ այս առակները՝ անոնց համապատասխանող յունականներով, որոնք թուով 73 են։ Վասն զի կան այնպիսիք ալ որոնք յունական բնագիրներուն աննման են մասամբ եւ մասամբ շատ փոփոխուած,

---

1 Այսպէս Wenrich, De auctorum graecorum versionibus եւն, Լայպցիգ 1842, էջ 84։

ոմանք նաեւ ազգային ազդեցութեան ենթար-
կուած։ Բաց աստի յունական մէկ եւ միեւնոյն
խմբագրութեան ալ չեն վերաբերիր ասոնք, նաեւ
ուր անփոփոխ եւ անարատ մնացած են առակ-
ները։ Ժողովրդական ազդեցութեան խնդիրը
կը մնայ յաջորդ գլխուն. (§ 512։)

## 10.

“Արեւելեան Առասպելք եւ Հայկական կեն-
դանական վէպ„ խորագիրը կը ցուցնէ նաեւ
տասներորդ եւ վերջին գլխուն նիւթը, որով
կ'աւարտին ուսումնասիրութիւնքն ալ. (§ 513 —
583։) Վարդանեան Հաւաքմանց մասին ամէն
կողմանէ մանրամասն խօսելէն ետքը, անոնց
գլխաւոր աղբիւրները՝ յատկապէս Բարուախոս
եւ Եսովպեան առակներն ուսումնասիրելէն ետքը,
կը մնայ քննել բնականաբար նախ այն խնդիրը
թէ արդեօք եւ ի՞նչ ազդեցութիւն ըրած են
Վարդանեան Հաւաքմանց վրայ արեւելեան ա-
ռասպելները՝ յատկապէս մերձաւոր արեւելեան
ազգաց Պարսից, Արաբաց, Ասորւոց եւ Վրաց.
յետոյ բնականապէս քննելու է յատկապէս
իրենց իսկ Հայոց ժողովրդական առասպելաց
ազդեցութիւնն եւ կապն այս առակաց Հաւաք-
մանց հետ։ Կանխաւ ըսենք որ հոս առասպելաց
եւ առակաց հայ գրականութեան մէջ փոխան-
ցուած ըլլալու խնդրոյն մէջ ի նկատի կ'առնուի
գլխաւորաբար հնագոյն ժամանակի ազդեցու-
թիւնն. եւ երկրորդ որ ըստ ինքեան “արեւե-
լեան„ ըսելով պէտք չէր՝ այս կարգի մատենա-

գրական փոխանցման խնդիրներուն մէջ՝ դուրս հանել նաեւ արեւմտեան յունական-բիւզանդական. սակայն որովհետեւ մեր այս խնդրոյն մէջ արդէն խօսուեցաւ յունականին վրայ (եւ-ասորական առակք), այն հոս մեկդի կը մնայ։

Կը սկսինք Պարսից աշխարհէն (§ 514,) ոչ այնչափ անոր համար որ անմիջական դրացի էին Հայոց եւ շատ մեծ ազդեցութիւն ունեցած են Հայոց ճակատագրին վրայ, այլ մանաւանդ անոր համար որ Իրան մեծ դեր մը խաղացած է վիպականաց եւ նմանեաց փոխանցման արեւելքէն արեւմուտք, եւ որ Պարսիկք նշանաւոր էին արեւելեան առածպելները ժողովրդականացընելու եւ ընդհանրացընելու մէջ։ Հայոց ծանօթ էին Պարսից առասպելները. եւ կը վկայուի որ Հայք սիրող ալ էին անոնց. (հմմտ. զոր օր. Խորենացի յաճախ առ Սահակ Բագրատունի։) Ժ. դարու մատենագիր մը Մովսէս Ուտեցի[1] կը յայտնէ թէ ինչպէս պարսկական առասպելք եւ յատկապէս առակները հին ժամանակ կրնային մուտ գտած ըլլալ նաեւ Հայաստան։ Աղուանից Վիրոյ կաթողիկոսին մասին՝ որ Է. դարուն կ՚ապրէր, պատմելով կը գրէ մատենագիրը թէ Վիրոյ էր "այր հանճարեղ եւ իմաստուն, զօրաւոր ի բանս իմաստութեան, եւ լեզու նորա իբրեւ գրիչ երագագրի ի պատմութիւնս խօսից խորհրդականաց եւ ի

1 Մովսիսի Կաղանկատուացւոյ Պատմ. Աղուանից, Հրտ. Էմին, Մոսկ. 1860, էջ 117—8։

մտաւոր խօսս թագաւորաց եւ մեծամեծաց։ Նաեւ խոնարհախօսութիւն նորա ողջունէր ռամկաց եւ խոնարհագունից ժողովրդոց, որ երկայնէր զխօսս իւր համեմատեալ ընդ չափս իմացողաց եւ ըստ կարի նոցա։ Ճառէր յօրինէր զբանս բերանոյ իւրոյ, զոր օրինակ զմարգարիտ յոսկի յեռուցու՝ մանաւանդ ի թարգմանութեան լեզուին պարսից վարժեալ զամս քսանեւհինգ ի դիպահոյ առ դրանն Խոսրովու՝ յանցական գտեալ ընդ ապըստամբողս մեծամեծաց իշխանաց աշխարհին Աղուանից„ եւն։ Ասկէ կրնայ ենթադրուիլ որ Վիրոյի իւր հովուական խօսքերուն կամ ճառերուն մէջ խառնած առակներէն ոմանք կրնան պարսկական ըլլալ, եւ թէ թերեւս Աղուանից կաթուղիկոսն ուղղակի թարգմանած էր պարսկերէնէ Արեւելից ժողովրդական առասպելաց հաւաքմանէ մը։ Սակայն ենթադրութիւն մըն է այս. եւ ասկէ չենք կրնար այնպէս դիւրաւ հաստատել որ ստուգիւ գոյութիւն ունէր առասպելներու եւ առակաց թարգմանութիւն մը պարսկերէնէ, եւ չենք ալ գիտեր թէ ինչպիսի՛ էր Վիրոյի թարգմանական գործունէութիւնը. եւ վերջապէս Վիրոյ կրնար աղուաներէնի թարգմանած ըլլալ։

Արեւելեան հանրածանօթ հաւաքում մըն է Գալիլա եւ Դիմնա, որուն ամբողջական հայ թարգմանութիւն մը ծանօթ չէ ցայժմ։ Մինչեւ մեր օրերը՝ նկատելով ընդհանուր զրուցական նիւթոյն նմանութիւնն եւ քանի մը զրոյցներու նոյնութիւնը, կը համարուէր այս հաւաքումն

նաեւ Հայ առակաց գլխաւոր աղբիւրներէն մին։[1] Սակայն Հայագիտին ներկայ քննութենէն կը տեսնուի որ “Գալիլակ եւ Դիմնակ„ գրոց աղերսն Վարդանեան Հաւաքմանց հետ այնպէս կարծուածին չափ զգալի ու մերձաւոր չէ, յատկապէս նախնականներն ի նկատի ունենալով․ քանի որ այն նոյն նիւթով կտորներն ուշ ժամանակի զարգացմանց կարգէն են։[2] Հազիւ երկու կտոր կը գտնենք, որոնց նիւթերը Վարդանեան Հաւաքմանց մէջ մշակուած քիչ շատ հնագոյն շրջանէն՝ հաւանականօրէն առնուած են յիշեալ “Գալիլակ եւ Դիմնակ„ Հաւաքմանէն․ այսպէս Հայագիտին հրատարակութեան Ե․ եւ ԺԸ․ թուերը կամ “Առիւծ հիւանդացեալ„ եւ “Կողեռն եւ յաւանակ եւ խողք։„ Սակայն ըստ երեւութին ասոնք ալ Յունաստանէն անցած են Հայոց, եսովպեան նիւթերու հետ միասին, թէեւ չենք կրնար երկբայիլ որ արեւելեան ազդեցութեան ենթարկուած ըլլան․ (§ 515։)

Հայկական գրականութեան հնագոյն շըրջանին մէջ բաց ի առասպելաց եւ առակաց

---

1 Տես Հ․ Ղ․ Ց․ “Հետազօտութիւնք„, Բ, 296—301 եւն, ուր յիշուած են նոյն մասին կարծիքներն, եւ կարեւոր գործերը՝ յիշեալ Հաւաքման մասին։

2 Ասոնք նշանակած էր Հայագէտն արդէն ուրիշ տեղ մը․ (§ 277,) ուր յիշուած էր մեր ուրիշ տեղ մը (“Մատենագր․ մանր Ուսումն․„ Ա, 170) անցողակի յայտնած կարծիքը թէ “Գալիլակ եւ Դամնակ„ ըլլայ մեր “Աղուեսագրոց հիմը„։ Ի հարկէ Հայագէտին քննութեանց հետեւութեամբ այժմ իրերը պարզուած են։

յունական եւ պարսկական տարրներէ՝ կրնան մուտ գտած ըլլալ նաեւ արաբականներ, գոնէ բերնէ բերան։ Ղեւոնդ երէց Հայոց աշխարհը խաղաղցընող եւ Դուին քաղաքն ընդարձակող Աբդլ-Ազիզ ոստիկանը կը նկարագրէ[1] թէ էր «խօլ լսելեօք, այլ խորագէտ, լի երկրաւոր իմաստութեամբ, առասպելախօս եւ առակարկու։» Սակայն եւ այնպէս՝ ինչ որ վերն արդէն առիթ եղաւ ըսելու, երբ եսովպեան առակաց միջնորդութեան վրայ էր խօսքը, նոյնն ըսելու է ընդհանրապէս այժմ ալ, երբ խնդրոյ նիւթ է արեւելեանց ազդեցութիւնը հայկական առակապատում գրականութեան վրայ սկզբնական հաւաքմանց մէջ. ուստի արաբականը նշանաւոր ազդեցութիւն մը չէ ըրած Վարդանայ առակաց կամ ընդհանրապէս Վարդանեան առակաց հաւաքմանց հնագոյն պարունակութեան կազմակերպուելուն վրայ.[2] (§ 516։)

Աորիք կրնան ազդած ըլլալ հայկական գրականութեան վրայ առակներով՝ բնիկ ասո-

[1] Պատմ. Ղեւոնդեայ եւն, Պետրբ. 1887, էջ 35։

[2] Հայագէտը կը նշանակէ որ իրեն անծանօթ չէ Հ. Ղ. Ցովհաննեանի հետազօտութիւնն՝ «Մեր Առակաց ակնաղբիւրը» («Հետազօտ.» Բ, 296—337) որ այն եզրակացութեան կը հասնէր թէ հայկական միջինդարեան առակներն՝ ծագմամբ Հնդկաստանէն, յատկապէս անոնք որ կը պարունակուին «Գալիլակ եւ Դամնակ» գրոց մէջ, փոխանցած են Հայոց՝ արաբական գրականութեան միջնորդութեամբ։ Սակայն յիշեալ քննադատն այս հետազօտութեանց առեն աչքի առջեւ ունի հայկական հաւաքումներն ուշ ժամանակի կերպարանաց մէջ. իսկ հոս խնդիրն է յատկապէս նախնական միճակին վրայ եղած ազդեցութեան վրայ։

րական ծագմամբ եւ փոխառութիւններով։ Ըստ երեւութին գոյութիւն ունէին այսպիսի բնիկ առակներ։ Ասոնց մասին յառաջ կը բերէ Հայագէտն ի միջի այլոց Լագարդի կարծիքը,[1] որ Բարբահլուլի քով յիշուած "Գիրք Պարսից" նոյն գծի վրայ կը դնէ "Արամէական Առակաց" հետ՝ զոր յաճախ կը յիշատակեն ասորի Բառագիրներ. եւ յիշելով Բարհեբրէի ծանօթ հաւաքումն առակաց, առասպելաց եւ մանրավէպներու, որոնց մէջ բաց ի գրաւոր նիւթերէ կրնան գտնուիլ նաեւ ժողովրդական նիւթեր, կը յաւելու թէ ասորական ազգային հէքեաթներն՝ զոր գիտնականք յաջողած են այժմ հաւաքել, ինչպէս նոյն իսկ հաւաքողները կը ծանուցանեն՝ ծագած են առաւելապէս Քրդաստանէն եւ Հայաստանէն։ Անկախ այս վիճելի ասորական առակներէն՝ ասորի գրականութիւնը պահած է նաեւ պարսկական եւ յունական առակաց հաւաքումներ, եւ այս կարեւոր կէտ մըն է առակաց փոխանցման Արեւելից եւ Արեւմտից մէջ. մանաւանդ եթէ ի նկատի առնուի այն ալ որ արեւելեան եւ արեւմտեան ծանօթ հաւաքմանց շատերը յաճախ կամ ոչ լիովին եւ կամ ոչ հին ձեւով պահուած են այն լեզուներով՝ որոնցմէ փոխադրած են Ասորիք. եւ կարեւոր էր մեզի համար այս միջոցով շօշափման նոր կէտեր գտնել կարենալ՝ մէկ կողմանէ հայ գրականութեան հետազօտութեան առնուած յիշատակարանաց բովանդակութեան՝ եւ միւս կողմանէ յի-

---

[1] Lagarde, Symmicta, I, p. 83.

չեալ արեւմտեան եւ արեւելեան ծանօթ Հաւաքմանց մէջ։ Սակայն այս նկատմամբ շատ նուազ է ակնկալութիւնը։ Ասորականներու հետ հայկական առակաց ազգակցութեան պարզաբանուելէն չենք կրնար յուսալ որ անպատճառ ապացուցուի թէ անմիջական ասորական ազդեցութիւն եղած է մեր Հաւաքմանց վրայ. եւ յատկապէս հոս, ուր կը յուզուի այն խնդիրը թէ արեւելեանք ի՞նչ ազդեցութիւն ըրած են մեր Հաւաքմանց վրայ, ասորի գրականութիւնը գրեթէ ոչինչ փաստ կու տայ։ Այս նկատմամբ ակնկալութիւն կրնար ըլլալ, ընդունելով միշտ որ մեր Հաւաքմանց վրայ ասորական ազդեցութիւն մը կարելի է, Բարհեբրէոսի "Զուարճալի Պատմութիւնք" Հաւաքմանէն, որմէ քաղուածքներ ըրած էր Լ. Մորալէս Վատիկանի ասորական (Թ. 173) ձեռագրին համեմատ։[1] Սակայն ծանօթանալով այս Հաւաքման պարունակութեան՝ նոյն իսկ անմիջաբար Վատիկանեան

---

[1] Տես L. Morales, Aus dem Buch der „Ergötzenden Erzählungen“ des Bar-Hebräus, ի թերթին ZDMG, XL, 410—453. Հայագէտը յատկապէս աչքէ անցուցած է այս նկատմամբ Վատիկանի ձեռագիրը (Թ. 173) որուն մասին տեղեկութիւններ կու տայ եւ կը նշանակէ յիշեալ Համեմատութեանց գլուխները (էջ 515։) Այժմ Հրատարակուած է ամբողջ բնագիրը՝ The Laughable Stories collected by Mâr Gregory John Bar-Hebräus, Maphrian of the East from A. D. 1264 to 1286. The syriac text edited with an english translation by E. A. Wallis Budge. London 1897. (Իբրեւ Ա. Հատոր Հաւաքման՝ Luzac's Semitic Text and Translation Series.)

ձեռագրէն, կը տեսնուի որ շատ աննշան, գրեթէ ոչինչ նիւթ կը մատակարարէ մեր նպատակին համար.[1] (§ 517։)

Կը մնան Վրացիք։ Սակայն, որչափ կարելի է նշմարել, վրական գրաւոր առասպելներն ու առակները մեր յիշատակարանաց վրայ ազդեցութիւն մը չեն ցուցըներ։ Արդեամբք ալ կան նոյն նիւթով առակներ թէ՛ հայկական եւ թէ՛ վրական յիշատակարանաց մէջ. սակայն այս զուգադիպութիւնը կը մեկնուի երկուքին հասարակաց աղբիւրէն, եթէ ոչ վրականին հայկականէն կախումն ունենալովն։ Վրական գրականութենէն անմիջաբար հայկականին անցած է միայն "Ագռաւ եւ Բազէ" առակը, որ կը գտնուի Վրական Ժամանակագրութեան հայերէն թարգմանութեան մէջ։[2] Սակայն այս առակէն օգտուած չեն մեզի ծանօթ Վարդանեան հաւաքմանց հեղինակները։ Յիշեալ զուգադիպութիւնը մեր հաւաքմանց հետ ամէնէն

---

1 Հայագէտն արդէն իւրաքանչիւր տեղ մատնանիշ ըրած է համեմատելի կէտերը, երբ եզովպեան առակաց վրայ կը ճառէր. ուրիշներն ալ զանց չէ ըրած նշանակել նաեւ այս գլխուս մէջ իրենց տեղերը։

2 "Համառօտ Պտ. Վրաց ընծայեալ Ջուանշէրի պատմչի", տպ. Վենետ. 1884, էջ 88, ուր Սինդայ կ'ըսէ՝ "Լսէ զբանս իմ արքայդ Վրաց, զի ասացից քեզ թէ ում իցես դու նման։ Նման ես դու Ագռաւուն որ առ զԲազոյն՝ փետեալ յայլոց ընկերացն իւր, եւ զարմանեաց զնա ի բոյն իւր, բերելով նմա մանր ճճիս եւ օձ։ Իսկ նա սակաւ մի կազդուրեալ՝ կալաւ զագռաւն եւ եկեր զնա, ասելով եթէ՝ Ոչ կարեմ զօրանալ այսպիսի կերակրով, մինչ ոչ եմ կերեալ թռչուն։" Վրացերէն բնագիրն աւելի ընդարձակ է, ինչպէս կը նշանակէ Հայագէտը։

աւելի կը տեսնուի Սուլխան Օրբելեանի «Աշխարհային իմաստութիւն» խորագրեալ առասպելաց հաւաքման մէջ, որ մեր յիշեալ խնդրին համար որեւէ նշանակութիւն չի կրնար ունենալ. քանի որ ըստ ամենայն հաւանականութեան խմբագրուած է հեղինակին յեւրոպա կատարած ճամբորդութենէն դառնալէն (1719ին) ետքը,[1] այնպիսի ժամանակ մ'երբ մեր հաւաքմանց պատմութիւնն արդէն վաղուց վերջացած, Աղուեսագիրքն արդէն տպագրուած, եւ գուցէ նաեւ արդէն թարգմանուած էր վրացերէն լեզուի.[2] (§ 518։)

Ըստ այսմ առհասարակ արեւելեան գրականութիւններն՝ որ այնչափ ճոխ են առասպելականաց հաւաքումներով, աննշան ազդեցութիւն ըրած են մեր յիշատակարանաց վրայ հնագոյն շրջանին. համեմատելով «Խոսվպայ» եւ «Բարոյախօսի» ազդեցութեան՝ գրեթէ ոչինչ։ կարծես հայ ազգն՝ ինքնին արեւելեան՝ չէ ու-

[1] Հայագէտը կը յիշէ Աղ. Ցագարելիի գործը («Վրացական առակներ եւ առասպելներ ԺԷ–ԺԸ. դարուն»։) «Սաբի-Սուլխան Որբելեանի. Թարգմ. եւ մեկնաբանութիւն» եւն, Պետրբ. 1878։

[2] Արդեամբք այսպիսի թարգմանութիւն մ'ալ կայ Հայ Աղուեսագրոյ, որուն մասին կը խօսի Հայագէտը Յաւելեաց մէջ (էջ 574—75։) Վրական թարգմանութեան գիւտը նամակով մը, որ հաղորդուած է, ծանուցած էր Եւթիմոս Ցակայշվիլի (26 Փետր. 1899), որ կը նկարագրէ ձեռագիրն եւ կը յայտնէ որ ընդ մամլով է այն թարգմանութիւնը։ Ձեռագիրը իբր ԺԸ. դարուն վերջերը գրուած է, նոյն դարուն ըլլալու է թարգմանութիւնն ալ. վասն զի Հայ բնագիրն՝ որմէ թարգմանուած է, մերձաւորապէս ԺԵ. դարուն սկիզբէն է։

նեցած միտութիւն Արեւելից հետ որեւէ հասարակաց բան մ'ունենալու. այլ Արեւմուտքէն գրաւուած՝ ջանացած է իւր արեան խառնել այն որ իրեն օտար էր։ Ի հարկէ այսպիսի մեկնութիւն մ'անհաւանական է. քանի որ առոր պատճառն էր ո՛չ թէ ազգային յատկութիւն մ'այլ Հայ գրականութեան հոգեւոր-դպրոցական նկարագիրը, որ սերտիւ կապուած է քրիստոնէական քաղաքակրթութեան հոսանքին՝ որ թափանցեց ի Հայս ասորական հարաւէն եւ բիւզանդական արեւմուտքէն։ Եւ եթէ օտարոտի կ'երեւայ որ հայկական գրաւոր յիշատակարանաց մէջ այնչափ քիչ կը գտնուին առակներ անմիջաբար արեւելեան ծագմամբ, շատ աւելի օտարոտի է որ նոյն իսկ հայկական ժողովրդական տարրներ նոյնպէս ցանցառ կը գտնուին. (§ 519։)

Եթէ ոչ ժողովրդականացած ու ընդհանրացած, գոնէ ծանօթ էին ի Հայս առակներ նաեւ ամենահին ժամանակներն։ Նոյն իսկ զգուշաւորագոյն քննիչները չեն կրնար ժխտել որ "Եսովպ" իւր առակներուն երեւցած է ի Յունաստան Փոքր Ասիայէն, եւ՝ եթէ կ'ուզուի՝ փռիւգական ծագում ունի.[1] ուստի բնականաբար այն փռիւգական առակները տարածուած ըլլալու էին, գոնէ բերնէ բերան, Հայաստան ալ, գուցէ նոյն իսկ ի Հայս բնակող Փռիւգացիներու ձեռքով. (Հերոդ. Է, 73։) Նմանութեանց եւ

[1] Հայագէտը կը յիշէ յատկապէս սա գործը՝ Neubner, Apologi graeci antiquissimi historia critica. Կոլոնիա 1889, էջ 60 եւ 74։

առակաբանութեանց սէրը կը գտնենք Հայոց քով նաեւ նախաքրիստոնէական շրջանին, որուն կը վկայէ այն առակաւոր խօսքը որ կ՚ընծայուի Որոնտի՝ Հայաստանի սատրապին՝ Դ. դարուն Ն. Ք.։[1] Առակաբանութեանց նոյն սէրն շարունակուած է անշուշտ նաեւ յետոյ քրիստոնէութեան շրջանին. եւ եթէ այս կարգի գրեթէ ոչինչ կը գտնենք գրաւոր յիշատակարանաց մէջ, պատճառն՝ ինչպէս ըսինք՝ փնտռելու է Հին-Հայերէն գրականութեան նկարագրին մէջ, ուստի վտարուած է բնիկ ազգայինն ու ժողովրդականը։ Սակայն թէ այսպիսիք կային եւ նաեւ առօրեայ պատահարներն առակի կը վերածուէին, կը վկայէ հետեւեալը զոր հաղորդած է Մովսէս Ուռհեցի[2] գրելով՝ "Եւ եղեւ ի նորին աւուրս Վարազ-Տրդատայ ոմն անտանելի յԱղուանից սահմանս, վասն որոյ առասպելաբանիւր յուշանց թէ՝ "Եւ կորեաւ ի Ճանաչէն գաւառէ ծածկեալ կայծ ի վայրէն Կովկասայ, եւ ընդ առնէին զինէ բազմութեան, խնդրեաց եւ ոչ գտէին զնա.

[1] Առածս կը յիշեն նաեւ Սուիդաս (տես անունս 'Αρβαζάκιος) եւ Արիստիդէս (Arist. vol. II, 257.) Համմտ. Walter Judeich, Kleinasiatische Studien, Untersuchungen zur Griechisch-Persischen Geschichte des IV. Jahrhunderts v. Chr., Մարբուրգ 1892, էջ 221—2։ Սուիդաս Արբազակի շուայտասիրութիւնն եւ անհամար հարճ ունենալը ցուցընելու. համար յառաջ կը բերէ Որոնդի վճիռը թէ "ինչպէս մատերու փորրագոյնը թէ մէկ եւ թէ բիւր կը ցուցընէ, նոյնպէս անոր հարճերը թէ մէկ եւ թէ բիւր կը հաշուէին։

[2] Մ. Կաղանկատուացի Պատմ. Գ, ժբ. տպ. Մոսկ. 1860, էջ 251։

էին ծամ քորէ որ եղջայրն էմ Սով տիրանայր. եւ ահա գրայ եւ երեւելի է սեղանս Վարազ-Տրդատայ իշխանէ եւ Եղիազարոս չափաղէնայէ։ Եւ որք կերան զնա՝ արէ-նաբէր եղեն, անձեղաբէր ըէրաւ։"[1] Կորեկի մասին աւանդներ կը գտնենք նաեւ այլուր.[2] (§ 520։) Դժբախտաբար Հայ գրականութիւնը՝ գրաւուած կրօնական խնդիրներով եւ վերացական նիւթերով, Հնագոյն ժամանակները բոլորովին անտես ըրած է այսպիսի երկրաւոր եւ նիւթական առարկաները, ինչպիսի են ժողովրդական առասպելներն. եւ Հազիւ կը գտնենք նշմարանքներ օրինակի Համար աշխարՀական գրչի մը քով՝ Գրիգորի Մագիստրոսի, յայտնապէս քաղուած ժողովրդեան բերնէն։ Իւր մէկ Թղթին մէջ կը կարդանք Հետեւեալը Հայկական կենդանական զրոյցներէն. [3] "Արդ եկ դու, ով գերակատարդ իմաստից, տես զիմոյ անտեղի մտածութիւնս,

---

1 Կորեկն արՀամարՀանօք կը յիշուի Հայոց քով, այսպէս երբ Թովմաս Արծրունի (Բ, Է, տպ. Պետրբ. 1887, էջ 121) Խութայ լեռնցւոց Համար կ'ըսէ Թէ "եւ զպէտս կերակրոցն վճարեն ի սերմանց ինչ, առաւել ի Կորեկոյ կոչեցեալ սերմանէն, զոր ոմանք է ... ժամանակէ Հաց անուանեն" եւն։ Նոյնպէս ազգային առածներու մէջ, այսպէս "Կորեկը բեմ չելնի." (տես Ճուլարտեան, "Ազգային Առածք", էջ 84։)

2 Տես Վահան-Տէր Մինասեան, "Անգիր Դպրութիւն եւ Առակք" (Կ. Պ. 1893, էջ 259—60.) Գուլամիրեանց՝ "Ծաղիկ Ընտանեաց, Յաւելուած 1879Թ. Օրացուցի" (Երեւան 1879), էջ 173, 175–76։

3 Թուղթ Մագիստրոսի՝ "Պատ. կաթուղիկոսին յՂ. Գագկայ, որ ասէր Թէ խորՀին կորուսանել զքեզ", Ձագր. Միւնխէնի Cod. Arm. IV, p. 106—107. Մեր Թ. 27 ձեռագրին ընթերցումը տես "Ցուցակ", 152։

յորս անկայ փորձութիւն առաւել քան զՊրոմ[եթ]էականն. յորս ոչ բարեբջանիկ գոլ նմա ենհաս հանդէս, ըստ որում որ ի Գուէճէլս պատմի տուաչեալ՝ Արգուութ ի զգուշութիւն երկնի յստորս կործանիլ. եւ նա անկեալ պորտ յորսայս զոտն ի վեր(այ) յերկին ջանայ կարկառել. զի մի երկին յերկիր անկցի խափուցեալ. ի պարսաւ առեալ ոմանց թէ Որո՞վ ծղէ ծնգօք ծառանաս ծտիկ քո ծովդ լսելօք. պատասխանեալ հաւն ասաց՝ Որքան կարեմ, զայն առնեմ։ Արդ իմ ծղէ ծնգօքս է օգնական սրբոյն Գրիգորի եւ Արամեան Նահանգի„ եւն։ Այս առակին մերձաւոր նմանը կայ նաեւ արդի ազգային առակաց մէջ. բայց նաեւ միւս գրականութեանց մէջ համեմատելիքներ չեն պակսիր։[1] Մագիստրոսի պահած "Առիւծ եւ ճանճ„ արդէն յիշեցինք ուրիշ տեղ մը (§ 458.) որ նոյնպէս քաղուած ըլլալու է ժողովրդէն,[2] կ'ենթադրուի արդի ձեւն ու խմբագրութիւնը՝ խրթին լեզուաւ՝ հեղինակին կը վերաբերի, իսկ նմանատառութիւնը (alliteration) կը տեսնուի նաեւ այլուր.[3] (§ 521։)

---

[1] Տես Բարխուդարեանց Գ.՝ "Բարոյական Առածներ„ Տփղ. 1898, էջ 15։ Շատ նման է առակն առ Odo de Ceringtonia Nr. XLII: De avicula sancti martini, զոր կը հաղորդէ հայագէտը։ Հմմտ. Benfey, Pantschatantra (Հտր. Ա, Լայպցիգ 1859), էջ 238, եւ նմաններ։

[2] Հմմտ. ժողովրդական առածներս՝ "Առիւծը ճանճ չի բռներ„ (Ճուլարտեան, էջ 21) եւ Թրանսիլվանիոյ Հայոց՝ "Թող փոփոյ (= покой, հանգիստ) քուն եղած առիւծին„ (անդ՝ 57։)

[3] Նոյնը կը տեսնուի արդէն ազգային վիպասանաց քով. այսպէս Վահագնի երգը (Խոր. Ա, լա), նոյնպէս

Աւհասարակ այս կարգի ազգային հարըստութիւնը՝ հազիւ ապաստանարան մը գտած քրիստոնէական միջավայրին մէջ, նաեւ կրթեալ Հայերն անտարբեր կը թողուր. նոյն իսկ խոտուած էր։ Աւելի յառաջ ալ երթալով՝ մինչեւ անգամ ժողովրդական առասպելաց պատմիչները բանադրանաց ալ ենթարկուած էին, Ս. Հաղորդութենէ զրկուելով,[1] թէեւ այս կէտն ալ պէտք չէ չափազանցընել։ Աշխարհական առասպելներու տեղ ջանք եղաւ յետոյ հոգեշահ պատմուածքներ ընդհանրացընել ժողովրդեան մէջ։ Այս նկատմամբ թանկագին տեղեկութիւն մը կու տայ Կիրակոս պատմագիր Ներսիսի Շնորհալւոյ մասին գրելով՝[2] «Զի այնպիսի էին կամք սրբոյն, զի թէ հնար իցէ՝ ոչ ով խօսէր խառնս աշխարհականս, բայց ի գրոց, ոչ է գինարբուս եւ ոչ յոյլ ուրախութեանս, վասն այնորիկ եւ արար նա երգս եւ ուսոյց այնոցիկ որ պահէին զերգն. զի փոխանակ վայրապար յոյնից զայն ասասցեն» եւն։ Յիշուեցաւ ուրիշ տեղ մը (տես § 266) պատմագրիս տուած միւս տեղե-

---

Արտաշիսի մասին՝ եղած երգն, զոր քաղած է Գր. Մագիստրոս. (ձռգր. Միւնխ. Cod. Arm. IV, էջ 188։)

[1] Այսպէս «Յղ. որոց անխտիր հաղորդին ի մարմին եւ յարիւն Քրիստոսի» ճառին՝ զոր յիշեցինք (տես § 314 Ծան.) Հեղինակը Ս. Հաղորդութեան անարժաններու կարգը կը դասէ «հատահարցք», «հաւահմայք», «հացահմայք» եւն, եւ ասոնց հետ հաւասարապէս՝ «զըախաւսք, զըստեսք, շրջողք տանէ ի տուն, հետաքըքիրք, զբօսայարարք, առասպելախօսաւք» եւն։

[2] Կիրակոս, Պատմ., տպ. Մոսկ. 1858, էջ 67. տպ. Վենետ. 1865, էջ 68։

կութիւնն ալ թէ Ներսէս "արար եւ տաղս խորհրդաւորս ի գրոց եւ հանելուկս, զի փոխանակ առասպելաց զայն ասասցեն ի գինարբուս եւ ի հարսանիս:"[1] Ցայտնապէս ԺԲ—ԺԳ. դարուն ի Հայս ալ նոյն երեւոյթը կը տեսնուի, ինչ որ կը նշմարուի նոյն ժամանակ Եւրոպա, ուր նոյնպէս յօրինուեցան հոգեշահ զրոյցներ՝ "տրուվեօր" (trouveur) բանաստեղծներու եւ երգեցիկներու (minstrel, աշուղ) արձակախօս զրոյցներուն ազդեցութիւնը կոտրելու համար:[2] Գոնէ Ներսէս Շնորհալի աշխատած է նոյն ուղղութեամբ, ինչպէս տեսանք: Այսու հանդերձ իւր իսկ "Առակաց" կամ բուն Հանելուկներուն մէջ կը տեսնենք ժողովրդական զրուցաց եւ առածներու հետքերն ու ազդեցութիւնը, եւ այն՝ բաւական առատութեամբ, եթէ աչքէ անցընենք զանոնք.[3] (§ 522:)

---

[1] Անդ՝ տպ. Վեննետ. էջ 69: Տես Հ. Ղ. Ալիշան "Շնորհալի եւ Պարագայ իւր", (Վեննետ. 1873) էջ 378, ուր կը կարդայ "առակս . . . եւ հանալուկս:" Մինչեւ այժմ ծանօթ են Ներսէսի միայն Հանելուկները, որոնք սակայն "Առակք" կը կոչուին հրատարակութեան մէջ. (Ն. Շնորհալւոյ Չափաբերականք, տպ. Վեննետ. 1830, էջ 560—84:)

[2] Հմմտ. Dunlop, History of Prose Fiction, a new edition by H. Wilson, 1888, II, 256.

[3] Հայագէտը մանրամասն (էջ 521—2) յառաջ կը բերէ այսպիսիներ համեմատելով՝ ազգային առածներուն հետ եւն: Այսպէս Շնորհալւոյ "Ագռաւ" հանելուկին (Ե) "ուտէ չոր քաք ու թուրխանայ" ըսելը կը յիշեցընէ "կոշտ մի թարխանայ" կտնող ագռաւին ժողովրդական առակը (տես Բ, 30.) — Հանելուկ ԻԲ՝ Արջը "հետ տանծին զաչերն ածէր." հմմտ. ազգային առածներն՝ "Արջի խաղալն

Սակայն բնական էր որ այսպիսի բուռն ընդհանրացած եկեղեցական բանաստեղծութիւնը՝ պայմանեալ գրաւոր ձեւերով ալ՝ նշանակութիւն կրնար ունենալ շատ շատ դպրոցներու եւ եկեղեցական շրջաններու համար։ Բնիկ ժողովուրդն անշուշտ կը շարունակէր իւր ընթացքն, քրիստոնէական նիւթերն ալ փոխարկելով՝ իւր բերանացի կամ անգիր գրականութեան սովորական՝ նոր ձեւերու։ Նոր հոսանք մը բերաւ՝ ինչպէս նախ ի Վրաստան՝ նոյնպէս յետոյ հայ մատենագրութեան մէջ պարսկական բանաստեղծութիւնը, նոր՝ ոչ միայն պարունակութեամբն, այլ նաեւ ձեւերովն եւ նոյն իսկ լեզուաւ։ Այս նոր հոսանքը չծնաւ գրականութեան, այլ՝ որչափ կ'երեւայ՝ բուն ժողովրդեան մէջ, ի մասնաւորի Հայոց աշխարհի ժողովրդական երգիչներու շրջանին մէջ, անոնց որ հնոց քով “վիպասան„ կը յորջորջուէին եւ նորերու քով՝ “աշուղ„։ Պարսկական բանաս-

---

տանձի համար է„ (Գէորգ Տէր-Աղէքսանդրեան “Թիֆլիսեցոց մտաւոր կեանքը„, Տփղ. 1886, էջ 68) եւ նմաններ (Ճուղարտեան, 26. Բարխուդարեան՝ 39, Ս. Սարգսեանց “Ագուլեցոց բարբառը„ Բ, 16 եւն.) — Հանելուկ ԽԲ Եղիա “Հեծեալ հրեղէն ձի ու գնայ սուր, ինքն ի յամպոյն հոսէ մեզ ջուր„՝ ժողովրդական գաղափարներու համեմատ. — Հանելուկ ԾԹ՝ կատու “բազմի յոսկի բարձի վերայ, որսիկ առնէ քան զբազայս„ կը յիշեցընէ արեւելեան զրոյցն (նման հմմտ. նաեւ Նաւասարդեանց՝ “Հայ ժողովրդական հէքեաթներ„ Ը, 117.) եւ ուրիշ նմաններ։ Հայադէտը յատկապէս կը մեկնէ ԽԹ Հանելուկին հանրածանօթ “Իշխան, վայ ձեզ, նորեկս հասեր„ խօսքն, որ սաով բոլորովին նոր իմաստ մը կ'առնու, զոր սակայն չենք կրնար հոս յիշել։

տեղծութեան այս ազդեցութիւնն այնչափ մեծ էր որ նոյն հոսանքն երգիչներէն անցաւ գրողներու, եւ գրականութեան նոր ճիւղ մը զարգացուց։ Եթէ հիները հոգեւոր տաղաչափութիւնն եւ բանաստեղծութիւնն ընկալեալ ձեւով մշակելու հետամուտ էին, նորերն իւրացուցին պարսկական աշխարհական բանաստեղծութիւնն, նոյն իսկ եկեղեցականները՝ թէեւ դարձեալ գլխաւորաբար կրօնական նիւթեր մշակելու համար։ Եւ ազգային շարժման այս հոսանքն միջինդարու հայ մատենագրութեան մէջ մուծեց ժողովրդական կենդանի խօսակցութեանց տարրներ մեծ քանակութեամբ։ Սակայն նոր ձեւերուն հետ մտա՞ն նաեւ ժողովրդական նիւթեր, յատկապէս առակաւորներ՝ որ հոս զմեզ կը հետաքրքրեն։ Ասոր պատասխանը կրնայ տրուիլ միայն երբ միջինդարեան հայ բանաստեղծներն ու տաղաչափները լիովին քննուին ու հրատարակուին։ Ցայժմ ծանօթացածը՝ գլխաւորաբար Կ. Կոստանեանցի խնամքովը լոյս տեսած, շատ չնչին նիւթ կը մատակարարէ՝ վերջնական եզրակացութեան մը հանիլ կարենալու համար։ Աւելի յոյս կու տայ Կ. Յովսէփեանի աշխատութիւնը՝ "Ժողովրդական բանահիւսութեան հետքեր միջինդարեան տաղարաններում։"[1] Տաղաչափուած ունինք այսպէս "առակ օգտակա-

---

[1] Տես "Արարատ" 1898, էջ 544–51. անդ՝ 1899, էջ 44–7, ուր (էջ 547) կը յիշէ "տաղարանների մէջ պատահած առակները" եւն. ծանուցանելով որ բաց ի Կոստանեանցի երկուքէն՝ գտած է երրորդ մ'ալ, եւն։

բագոյն„ մը՝ առակն “Ագռաւ (պանիր ի կտուցն) եւ Աղուէս„ (տպ. Հտր. Բ, 29, առակ ԻԴ, դ) եւ ուրիշ “առակ շահաբեր„՝ առակն “Շուն եւ շուքն„ (տպ. Հտր. Բ, 209, առակ ՃՀԳ, ա.) սակայն ասոնք “բանաստեղծական„ փոխադրութիւն են համեմատական գրաւոր առակներուն: Աւելի անկախ է այն՝ զոր “Տաղ ի վերայ Ագռաւուն„ խորագրով հրատարակեց նախ Սրուանձտեանց, յետոյ Կոստանեանց եւ այժմ նաեւ հայագէտն Էջմիածնի ձեռագրի մը համեմատ:[1] Հաւանօրէն այս կտորն ազատ փոխադրութիւն մըն է օտար փետուրներով զարդարուող ճայի առակին: Հետաքրքրական տաղաչափեալ առակ մ՚ալ հրատարակած է Ալիշան, որ յետոյ շատ անգամ ալ լոյս տեսած է[2], խորագրովս “Արջ, Աղուէս եւ Գայլ:„ Թէ այս տաղաչափեալ առակը լիովին ազգային կամ ժողովրդական ըլլայ, ինչպէս Բաշաթրեան կը համարի[3], խնդրական է: Նաեւ միայն այն պարագան որ յորդորակ-խրատը պահած է վերջը՝ կը ցուցընէ անոր գրաւոր յօրինուածքը. սակայն կարելի է որ անծանօթ տաղաչափը գործ-

[1] Տես “Մանանայ„, (տպ. Կ. Պ. 1876) էջ 263—4. Կ. Կոստանեանց՝ “Նոր Ժողովածու„ եւն. (Տփղ. 1892–96) Պրակ Բ, 33–4. Հայագիտին քով՝ Հտր. Բ, 333—4 (Ձռգր. Էջմ. 86, Թղ. 11ա—բ:)

[2] Ալիշան Armenian popular songs, p. 69—71 Հայանգղ., Միանսարեանց՝ “Քնար Հայկական„, 154—5. Վահան Տէր-Մինասեան՝ “Անգիր գպրութիւն„ եւն, էջ Խ—ԽԱ. այժմ Կ. Կոստանեանց՝ Պրակ Բ, 30—32:

[3] Ա. Բաշաթրեան՝ “Հին Հայոց տաղաչափական արուեստը.„ Շուշի 1891, էջ 31:

*ածած ըլլայ առակին ժողովրդական խմբագրութիւն մը: Հոս բուն երկու առակներ հիւսուած են իրարու. այսինքն՝ “Արջ, Գայլ եւ Աղուէս„ (առնուած “Առիւծ, գայլ եւ աղուէս„ առակէն) եւ “Աղուէս եւ Արջ„ (նոյնպէս առնուած “Աղուէս եւ գայլ յակնատի„ առակէն. հմմտ. “Ապլահասան„ աղուէսի պատմութիւնը Հտր. Գ, 179 եւն) կրկին առակներէն.* (§ 523:)

*Հայկական առածներու գոյութիւնն ինքնին վկայ մըն է որ անգիր մատենագրութիւնը բարգաւաճման վիճակի մէջ շարունակուած էր: Կան նաեւ դէպքեր որ այսպիսի առածներ մեր առակաց հաւաքմանց ուշ ժամանակի զարգացման առեն՝ անոնց մէջ ալ մտած են. այսպէս “Գայլ եւ հովիւ„ առակն՝ (Հտր. Բ, 270, առակ ՄԽԴ) “Ասի ի յառակաց թէ՝ գայլն յայնժամ անկանի ի գեհն, յորժամ հովիւն զգայլուն ահն մոռանայ„. կամ F հաւաքման “առածս„ (Հտր. Բ, 313, առակ ՑԽԸ)՝*

> *“Պատիւն առնէ գիհին տէրն:*
> *Առնէ՝ զինչ որ կամի, ընչից տէրն:*
> *Երթայ՝ ուր եւ կամի, ձիուն տէրն:*
> *Իջնու՝ ուր եւ չկամի, իշուն տէրն:„*

*Առածներէն երբեմն մշակուած յօրինուած են ամբողջ առակներ ալ, օրինակի համար առակաւորն “Այր Կիլիկ եւ կին Կիլիք„, որուն համապատասխանող բազմաթիւ առածներ կան:*[1]

---

[1] *Առակը տես Հտր. Բ, 102 (առակ ՁԳ)՝ “Այր մի ռամիկ, որ կոչէր Կիլիկ, եւ կին նորա կոչէր Կիլիք. ասէ՝ ով այր, չար կարի շատ հատուցեր յանուանէ իմմէ„: Ա-*

"Կաւշկակար եւ Անապատական" առակին յօրինողը յայտնի կը նշանակէ իւր աղբիւրն յորդորակին մէջ՝ գրելով "Ցուցանէ առակս ոչ տուէն թէ՝ կայ ի քաղաքի որ չէ կայ յանապատի, եւ կայ յանապատի որ ոչ գոյ ի քաղաքի." ինչպէս կայ իւր համանման առածն ալ։¹ Մեզի համար աւելի հետաքրքրական են ի հարկէ այն առածներն՝ որ կենդանեաց աշխարհը կը շօշափեն եւ մեր առակացնիւթերուն վրայ կը դառնան։ Կրնանք այսպիսի առածները նկատել այնպիսի պատկերաւոր ասացուածներ՝ որոնք համանման կամ համեմատելի գրաւոր առակներու կամ այլաբանութեանց ալ նիւթերու գործածուած են։ Եւ այս պարագան ուրիշ նշաններու հետ կրնայ իբրեւ ապացոյց առնուիլ այլեւայլ առակաց ժողովրդական ծագմամբ ըլլալուն. ապացոյց մը զոր մասամբ ընդունելու է՝ բայց ոչ ամէնպէս անպայման կերպով։ Վասն զի նախ այսպիսի զուգադիպութիւնք կրնան պատահական ալ ըլլալ. եւ երկրորդ առածներուն շատերն ինքնին գրական ծագում ունին, ուրիշներն ինքնին կախում ունին առակներէն (հմմտ. Ճուլարտեան 25, տող 22 եւ առակն Առիւծ եւ փետուր.) Թէեւ միւս կողմանէ հիմ մը չկայ ժխտելու որ ասոնց եւ նմանեաց մէջ՝ համացեղ հայ առածներու գոյութիւնն՝ անկախ գրաւոր "եսովպեան"

առածներէն հմմտ.՝ "Ինչ Իրիկը, ինչ բիրիկը. Ինչ նախրչին, ինչ իր կնիկը" (Նուասարդեանց, Է, 81) եւ ուրիշներ։

¹ Առակը տես Հար. Բ, 172 (առակ ՃԽԴ.) համանման առած՝ Ճուլարտեան՝ 80, Նուասարդեանց՝ Է, 110։

առակներէն կարելի է։ Օրինակի համար սա առածը՝ «Ոչ ղափլանը իր պէնկը կը փոխէ, ոչ արապը իր սեւութիւնը» (Ճուլ. 127,) որուն համեմատականն արդէն տեսանք Խորենացւոյ քով։[1] Հայկական կենդանական վէպերու այս խնդրին մէջ մասամբ միայն կրնան նպաստել վրական առածները, որոնք այնչափ շատ հասարակաց բան ունին հայկականներուն հետ. այնչափ աւելի որ ասոր պատճառը չենք համարիր միայն Հայոց եւ Վրաց դրացիութիւնը։ Մեզի համար վրացերէնի այնչափ բացորոշ լեզուագիտական կապը հայերէնի նախարիական խաւին հետ՝ հիմ մը կու տայ կարծելու որ յիշեալ ազգաց անգիր մատենագրութեանց հասարակաց նիւթերն երբեմն կրնան այնպիսի ժամանակաշրջանի հասնիլ վերաբերիլ, երբ Հայք եւ Վրացիք մէկ մէկու այնքան արենակից ազգութիւն մը կը կազմէին՝ որքան օրինակի համար Վրացիք եւ Մինգրէլները. (§ 524։)

Հայոց քով անգիր դպրութեան գտնուիլը պարզելէն ետքը բնականաբար խնդիր կ՚ելլէ թէ ինչ չափով ազդած է այն գրաւոր յիշատակարաններուն վրայ։ Մասամբ մեր այս խնդրին նկատմամբ կ՚ընդունին Հայք որ առակաւոր գրականութեան գրաւոր նիւթերը կախումն ունին բերանացիներէն կամ անգիրներէն։ Այսպէս Հ. Գ. Յովնանեան՝ որ ամէնէն աւելի զբա-

---

[1] Այստեղ եւ յաջորդաց մէջ Հայագէտը բազմաթիւ համեմատութիւններ կ՚ընէ առակաց եւ առածներու, զորոնք անհնար է մեզ յիշել։

ղած էր առակացս հետազօտութեամբն, կը գրէ[1]՝ “միայն կայ ուրեք յիշատակեալ իբրեւ հեղինակ առակաց՝ Վարդան անուամբ վարդապետ ոմն, որ հաւանաբար ի գիր առած է սակաւաւոր առակներ ի բերանոյ ժողովրդեան լսածներէն, որք տակաւ աճելով եւ բազմանալով՝ այժմու հաւաքածոյից մէջ մինչեւ ի մեր ձեռս հասած են։” Նախ որ այն “Վարդան ոմն” մեզի այժմ ծանօթ է՝ իւր ժամանակին հռչակաւոր Վարդան Այգեկցի, որուն առակաց հիմնական աղբիւրներուն կարգը դնել նաեւ անգիր ժողովրդական դպրութիւնը հարկ չկայ. եւ արդէն ամենեւին հաւանական չէ որ հին ժամանակ որեւէ վարդապետ մը ժողովրդեան բերնէն այսպիսի անգիր առակներ հաւաքէր. (§ 525։) Ասով չենք ժխտեր Վարդանեան հաւաքմանց վրայ որեւէ ժողովրդական ազդեցութիւն եղած ըլլալը. բայց այս ազդեցութիւնը՝ որ նոյն հաւաքմանց ուշ ժամանակի զարգացման ատեն միայն կը տեսնենք, պէտք չէ չափազանցընել։ Այս ազդեցութիւնը պէտք է ճշգրտել, որ ըստ մեզ կրկին ձեւով յերեւան կու գայ, կերպապէս եւ նիւթապէս. (§ 526։) Նախ որ գրաւոր ճամբով մեզի հասած ժողովրդական տարրներն անհնար է համարիլ թէ ճիշդ իսկական ժողովրդեան ասութեամբ գրի առնուած անգիր զրոյցներ ու առակներ ըլլան։ Ասոնց մէկ մասը ժողովրդեան գուցէ եւ ոչ

[1] “Հետազօտութիւնք” Բ, 275. տես “Հանդէս” 1890, էջ 250, 255։

ծանօթ էր. բայց թէպէտ ժողովրդենէ առնուած ալ չեն նիւթապէս, գոնէ կերպապէս ժողովրըդական են ձեւերով, ուստի Վարդանեան Հաւաքմանց մէջ այսպիսիներն՝ որոնք նաեւ ոչ թէ ժողովրդական՝ այլ ընդհակառակն գրաւոր ծագում ունին, ժողովրդականներու կարգը կը դասենք, մինչ յետոյ գէթ կերպական ժողովըրդական խմբագրութեան ենթարկուած են։ Այսպիսի ժողովրդական վէպի նիւթերը ծագած են ընդհանրապէս "եսովպեան„ առակներէն, թէեւ ոչ ուղղակի, այլ հայ թարգմանութեամբն, որ նիւթերը դիւրաւ ժողովրդական նկարագիր կը ստանան՝ փոխուելով բերնէ բերան շրջող առածներու, նկատելով ժողովրդեան միտութիւնն առակաւորաց. դարձեալ անշուշտ այսպիսի նիւթեր մուծած են նաեւ դպրոցները։ Մէկ կողմանէ ժողովրդեան մէջ կային կենդանական առասպելներն ու զրոյցներն եւ անկէ բղխած առածները, որոնց հազիւ նշմարանքը կը գտնենք հին հայ մատենագրութեան մէջ՝ հին մատենագրաց ժողովրդական այսպիսի իրաց նկատմամբ ունեցած խորշման պատճառաւ. միւս կողմանէ միջին-դարերուն հայ գրականութիւնն երթալով մօտեցաւ ժողովրդեան։ Եւ այս կը տեսնուի նաեւ մեր յիշատակարանաց վրայ, որ նոյն ժամանակները զարգացած են։ Այս կարգի կերպական ազդեցութիւն մեր Հաւաքմանց մէջ գրաւոր ծագում ունեցող առակներու վրայ ալ կը տեսնենք բաւական յաճախ։ Բնական էր որ այս կերպական ազդեցութեան հետ յառա-

ջանար նաեւ նիւթական ազդեցութիւնն, երբ առնուէին նաեւ բուն ժողովրդական նիւթեր. եւ արդեամբք նաեւ այսպիսիներ չեն պակսիր. (§ 527—29։)

Հոս կը յաջորդէ շատ հետաքրքրական եւ ընդարձակ մաս մը, զոր դժբախտաբար անհնար է մեզ ուրուագծել անգամ։ Ազգային ծագմամբ առակներն են որ հոս մանրամասն քննութեան կ'առնուին, շատերն յառաջ բերուելով ռուս թարգմանութեամբ, համեմատութեամբ ազգային առածներու, նշանակելով աղբիւրներն որչափ որ կան, միով բանիւ ամէն կողմանէ լուսաբանելով խնդիրը. (§ 530—576։) Այս մասին ճոխ նիւթերը դասաւորուած են քանի մը գլխաւոր խմբերով։ Նախ քննութեան կ'առնուին շարք մ'առակներու, ինչպէս "Եկեղեցի եւ Ջրաղաց (ՃԻԶ, տես Հտր. Բ, 151,) "Եզն եւ Ձի„ (ՃԻԷ, անդ,) Օձ եւ Ծակ (ՄԴ, անդ՝ Բ, 234), Խլուրդն (ՃԼ, անդ՝ Բ, 153,) Հաւոյս եւ Բազէ (ՏԽԷ, անդ՝ 322) եւ Խոզ եւ Գաթայ (ՏԽԲ. անդ՝ Բ, 320) որոնց՝ ինչպէս նաեւ մնացեալ ամէնուն՝ նիւթը ցոլացած կը գտնենք ժողովրդական առածներու մէջ, զոր հաւաքած են Միանսարեանց, Ճուլարտեանց, Նաւասարդեանց, Տէր-Աղէքսանդրեան եւ շատ ուրիշները։ Առաջին եւ ուրոյն խումբ մը կը կազմեն առակներ Իշոյ մասին, որ բազմաթիւ առակներու եւ առածներու նիւթ տուած է Հայոց.[1] (§ 538—

---

[1] Յատկապէս յառաջ բերուած են թարգմանութեամբ առակներս ՀԶ, ՃԶ եւ Զ։

545,) որոնց հիմը կը կազմեն մեծաւ մասամբ առածաւոր նիւթեր, վճռական ասացածներ եւ նմաններ։ Էշը Հայոց առածներուն գլխաւոր նիւթերէն մին է։[1] Երկու ուրիշ գլխաւոր խմբեր կը կազմեն երկու ուրիշ անասնոց մասին առակներն, որոնք նոյնպէս մեծ դեր կը խաղան առակներու եւ առածներու մէջ. այսինքն Գայլ եւ Աղուէս, կամ իւրաքանչիւրն առանձինն եւ կամ իրարու ընկերակցութեամբ ներկայացուելով. ուստի մերթ իբրեւ բարեկամ դաշնակից իրարու եւ մերթ ոսոխ թշնամի իրարու դէմ. բայց երկու դէպքին մէջ ալ իրենց հետ՝ որ գլխաւոր գործող դերերն ունին, կը ներկայանան նոյն պատկերներուն մէջ ուրիշ կենդանիներ ալ՝ էշ, ջորի, ուղտ, ոչխար, շուն եւն։ Ուստի ասոնք այնպէս առածաւոր նկարագիր չունին՝ ինչպիսի էին Իշոյ մասին առակներն, այլ աւելի թատերական նկարագրաւ առակներ են։ Միւս անասուններն ի հարկէ աւելի երկրորդական կամ նաեւ ծառայական դերեր ունին. ամէնուն մէջ որոշ կը գծուի երկուքին գլխաւոր նկարագիրը, Աղուէսը՝ խորամանկ, Գայլն՝ անխելք. բայց նաեւ ժողովրդական առակներու մէջ աղուէսն իբրեւ յաջողակ ու ճարպիկ խեղկատակ մը, գայլը՝ խեղճուկ մը, ինչպէս կը տեսնենք նաեւ առածներու մէջ, օրինակի համար՝ "Խեղճ գելին անունն է կոտրեր, աղուէսը աշխարհք քան-

---

[1] Հմմտ. "Ասիացւոյ" յօդուածն ի "Մշակ" 1890, Թ. 9, էջ 1—2։

դեց[1]» եւ նմաններ։ Այսպէս կ'ելլեն նախ խումբ մ'առակաց ժողովրդական ծագմամբ Գայլոյ մասին[2] (§ 546—553,) որոնք՝ ինչպէս նաեւ յաջորդ Աղուեսու առակները՝ շօշափման շատ կէտեր ունին նաեւ եւրոպական եւ արեւելեան առակներու հետ։ Աղուեսու մասին առակաց խումբն երկու տեսակ է։ Նախ կու գան այն առակներն, ուր աղուէսն առանձինն կը ներկայանայ առանց գայլի ընկերակցութեան (§ 554—569.) եւ ասոնք ալ երկու ցեղի կրնան որոշուիլ. այսինքն՝ կան առակներ աղուեսու մասին որոնք աւելի առածաւոր են,[3] եւ երկրորդ այնպիսիններ՝

---

1 Հմմտ. Ճուլարտեան՝ 72. Տէր-Աղէքսանդրեան, 113, Միանսարեանց՝ «Քնար» էջ Ը, եւայլն։

2 Բազմաթիւ ուրիշներէն յատկապէս յառաջ բերուած են թարգմանութեամբ առակներս՝ ՑԽԵ «Գայլ յուսումն» (Հտր. Բ, 321.) — ՄԺԲ «Գայլ եւ ոչխարք» (Բ, 238.) — ՂԱ՝ «Գայլ եւ բրտի շուն» (Բ, 107.) — ՄԺԳ «Իշատէր եւ գայլ» (Բ, 238.) — ՑԺ «Պատահարք Գայլոյ» (Բ, 323) շատ ընդարձակ։

3 Շատ ուրիշներու հետ յառաջ բերուած են հոս թարգմանութեամբ առակներս՝ ԿԹ «Աղուէս եւ Սագք» (Հտր. Բ, 89.) — ՑԼԹ «Աղուէս եւ Պանրացան մարդ» (Բ, 319.) — ՑԽ «Աղուէս եւ Արագիլ» (Բ, 319.) — Բարուախօսի ԾՁ կտորն «Աղուէս» (Հտր, Գ, 172) եւ ասոր համեմատականն՝ ՃԺԵ «Խաւաող եւ Թագաւոր» (Բ, 132) եւն։ Նշանաւոր է յատկապէս առակն ՀԹ «Բազմարուեստ աղուէս» (Բ, 100) որ լաւ կը պատկերացընէ ժողովրդեան գաղափարն աղուեսու նկարագրին մասին իբրեւ տիպար խորամանկութեան (ոչ նուազ նաեւ կատուն, տես § 563–64) եւ որ արդէն կը գտնուի Ողիմպիանոս առակաց երկրորդ շարքին մէջ (տպ. էջ 183, ԻԲ)՝ «Հարցին ընդ աղուէսն թէ քանի՞ կէլ [illegible] (այսինքն «քանի ցեղ արուեստ») գիտես. նա կըկզեցաւ եւ ասէ. Հազար կել եւ արուեստ գիտեմ. երեսունն՝ ագոխ առաջի շանն, թող թէ

թատերական նկարագրաւ, ինչպէս վերը նշանակեցինք։[1] Այս խմբին երկրորդ տեսակն է՝ ինչպէս ըսինք՝ Առակներ, ուր Աղուէս եւ Գայլ ի միասին գործող դերով մը կը ներկայանան, կամ՝ առակներ աղուխուն գայլու ընկերակցութեամբ.[2] (§ 570—76։) Այս ամէնուն մանրամասնութեանց մէջ մտնել անհնար է մեզի հոս։

Շատ հետաքրքրական կէտ մըն է որ այս ամէն — առաւել կամ նուազ հաւանականութեամբ ժողովրդական — առակներէն հատ մ'ալ չենք գտներ բուն իսկ Վարդանայ Այգեկցւոյ յատուկ առակներուն մէջ։ Թէեւ Վարդանայ առակները լիակատար թուով հասած չեն. սակայն Վարդանայ Այգեկցւոյ՝ ԺԲ—ԺԳ. դարերուն ապրող առակաբան խրատախօսին՝ մեզի հասած առակներուն մէջ չենք գտներ եւ ոչ

---

քանի անձամբս. ապա մեծ արուեստ այն է իմ որ ոչ ես զշուն տեսանեմ, եւ ոչ նա զիս։" Հմմտ. ժողովրդական առակը (Ճուլարտեան, 5) "Աղուէսին հարցուցին թէ քանի տեսակ պօռ (سو) գիտես։ Ըսաց՝ շունին աչքեւէն խաբելու 32 պօս գիտեմ։ Հարցին՝ ո՞րն լաւ։ Ըսաց՝ Լաւն ան է որ ոչ ես շունին տեսնեմ եւ ոչ շունը ինծի"։ Համեմատելու է նաեւ բազմաթիւ ուրիշներ՝ արեւելեան եւ արեւմտեան։

[1] Օրինակի համար՝ ի միջի այլոց՝ գեղեցիկ առակ մը (Աղուէս-քահանայ) Վարդանայ Այգեկցւոյ քով որ յայտնապէս ժողովրդական ծագում ունի. (Հտր. Գ, 109, ԾՁ.) նոյնը կայ արդէն Գողի քով. տես նաեւ յետոյ։

[2] Այսպէս ի միջի այլոց յառաջ կը բերուին թարգմանութեամբ՝ ԿՁ "Աղուէս եւ թղթատար Գայլ" (Հտր. Բ, 85.) — ՑԽԴ "Գայլ որսորդ եւ աղուէս" (Բ, 321.) — ԾԹ "Ուղտ եւ Գայլ եւ Աղուէս" (Բ.77.) — ՃԺԴ "Գայլ եւ աղուէս եւ ջորի" (Բ, 131) եւ ուրիշներ։

հատ մը ժողովրդական առասպելներէն,[1] յատկապէս ժողովրդեան առասպելներէն եւ զրոյցներէն կենդանական վէպին կամ կենդանեաց վրայ։ Ուստի անոնք որ մեր հաւաքմանց մէջ կը գտնուին՝ աւելի ուշ շրջանի կը վերաբերին, այն ժամանակին երբ ժողովրդական հոսանքն սկսաւ հետզհետէ աւելի մուտք գտնել հայ գրականութեան մէջ. (§ 577։) Յատուկ տախտակ մը (Տխտ. ԼԳ.) մեր առջեւը կը դնէ այս բոլոր ժողովրդական առակները՝ թուով իբր 59, նշանակելով նաեւ այն ամէն տեղերն ուր կը գտնուին։ Ամէնէն աւելի ունին JVagGD հաւաքումները. յետոյ կու գան BC եւ Br. Հոս աչքի

---

[1] Յեղ մը միայն "Այծք եւ Գայլք" առակին մէջ (բնագիր տես § 340) Վարդան կենդանութիւն մը տուած է "եսովպեան" առակին. բայց աս ժողովրդական առասպելի մը նմանողութիւն չէ։ Միակ տեղ մը ("Արջ եւ Խաղող", Հտր. Գ, 85, Թիւ Գ) Վարդան գործածած է հաւանօրէն ժողովրդական նկատողութիւն մը արջու մասին, թէեւ ոչ առակ մը։ Այս կտորն է՝ "Ամենայն երէքն ի մի վայր ժողովեցան եւ կամեցան ճաշակել, եւ մի մի առաքեցաւ զի բերիցեն կերակուր զոր կարասցեն, եւ արջն ասէ՝ Ողըրմեցայ բատ խա մ' ոտ յոյգին տոտտէտ վտան խաղըդ։" Հմմտ. առածներէն "Արջը խաղող գտաւ, տանձը մօրէն ելաւ" եւն (Ճուլարտեան, 26։) Վարդանայ քով կայ ժողովրդական առակ մ'ալ "իմաստուն աւագէշ" որ "յետոյ կողմանէ ճայթմունս մեծամեծս արձակէր" եւն (Հտր. Գ, 104—5, Թիւ ԼԳ.) սակայն աստ Վարդանայ ըլլալը կրնայ խնդրական ըլլալ. (տես նոյնը առօրականներուն մէջ՝ ԺԴ, Հտր. Բ, 17), մանաւանդ որ Բարուախոսի Տ ձեռագիրն ալ ունի նոյնը (Հտր. Գ, 148, Թիւ Թ5.) իբրեւ "առակ զոր ասացին Իմաստասէրք". եւ եթէ հաստատուի ալ Վարդանայ ըլլալը՝ կրնայ խնդիր ըլլել թէ ի՞նքն առակի վերածած է ժողովրդական առած մը՝ թէ պարզապէս օգտուած է ամբողջ ժողովրդական առակն առնելով։

կը զարնէ այն պարագան որ օրինակի համար F ձեռագիրն՝ որ միշտ բնագիրները ռամկացընելու ճիգ մը կը ցուցընէ, ամէնէն քիչ ունի ժողովրդական առակներ՝ միայն երեք հատ. մինչդեռ D ձեռագիրն՝ որ ընդհակառակն բնագիրը գրաբարցընելու միտումն կը ցուցընէ, շատ աւելի ունի ասոնցմէ՝ թուով 20 հատ։ Ընդհանրապէս մեծամասնութիւնն ամէն կարգի հաւաքմանց մէջ կը գտնուի. հատ մը՝ Վարդանայ Այգեկցւոյ քով ("Իմաստուն աւագէշ".) երեք հատ տաղաչափեալ առակներ՝ որոնց մասին խօսեցանք. հինգ հատ Մխիթարայ Գօշի տրուած առակներուն մէջ,[1] երկու հատ Գրիգորի Մագիստրոսի քով (Արտոյտ, Ճանճ եւ Առիւծ, տես վերը) եւ հատ մը Մովսիսի Ուռհեցւոյ պատմութեան մէջ ("Կորեակ", տես վերը) յառաջ բերուած. (§ 578։) Ժողովրդական առակներս ընդհանրապէս պատահական կապ մ'ունին, մեր հաւաքմանց մէջ կարծես պատահաբար մտած են։ Ուրոյն խումբ մ'ալ կազմած են երբեմն.

---

[1] Այս առակներն են՝ ՁՁ Առիւծ եւ արջ եւ գայլ (տպ. Վենետ. էջ 76.) — ՁԷ՝ Արջ եւ աղուէս (տպ. 77—8.) — ՁԸ՝ Աղուէս եւ գայլ կուրացեալ (տպ. 79. նոյն՝ Վարդանայ քով Կ, տես Հտր. Գ, 109.) — ՂԸ՝ Աղուէս-քահանայ (տպ. 84. նոյն՝ Վարդանայ ԾՁ, տես Գ, 109. համեմատել՝ Grimm, Reinhart Fuchs, Բերլին 1834, էջ LXXV, կամ L. Sudre, Les sources du Roman du Renard, Պարիս 1892, էջ 222—3.) — ՃԻԵ՝ Հաւ (տպ. 106, նոյն՝ Վարդանայ քով ԽԷ, տես Հտր. Գ, 107. համեմատել Բարհեբրէոսի քով՝ ձռգր. Վատիկ. Թ. 173, Թղ. 120ա, եւն։) Նոյն կարգի է նաեւ ՁԹ (տպ. 79, Վարդանայ ԾԹ. տես Գ, 109։)

այսպէս՝ օրինակի համար՝ V կամ Սովորականին մէջ վերոյիշեալ Ցախտակի (Ցխտ. ԼԳ) թուերը 8—22՝ նշանակուած են այս թուերով՝ Թ. 65—74 եւ 76—79, ուստի բոլորովին շարունակեալ կարգաւ (Թ. 75 առակ չէ.) թէեւ ի հարկէ ասով նոյն հաւաքման մէջ միւսներուն հետ խառնուած։ Սակայն յայտնի կը տեսնուի (նաեւ ժողովրդական ձեւերու պէսպիսութենէն) որ այս հայ ազգագրական տարրները մեր հաւաքմանց մէջ մտած են այլ եւայլ ժամանակ եւ զանազան անձերու ձեռօք։ Գիտակցական աշխատութիւն եւ կանուխ մտածուած յատակագիծ մը չենք տեսներ՝ ժողովրդական առասպելներն օգտիւ գործածելու։ Եթէ ընտրութիւն մ՚եղած է, այն ուղղութեամբ եղած ըլլալու է որ աւելի առնուած են նիւթեր խրատական նպատակով. յետոյ նաեւ զուարճալիներ։ Իւրաքանչիւր ոք իւր քմաց ու ճաշակին համեմատ քաղած կ՚երեւայ ժողովրդական գանձերէն եւ ճոխացուցած Վարդանեան հաւաքումները. (§ 579։)

Երկու պարագայ պէտք է հոս նշանակել, որ թերեւս չափով մը ցուցընել կարենան թէ Հայոց քով ալ կար կենդանական վէպ մը։ Այս կէտերն են՝ նախ որ առակաց դիւցազնները (դեր ունեցող անասունք) կը ներկայանան իբր իրարու ազգակիցներ. եւ երկրորդ որ անասունք մարդկային անուններ կը կրեն. ճիշդ այնպէս՝ ինչպէս կը գտնենք “Ռընարի„ վէպին մէջ։ Հոն քանի մը խմբագրութիւնք գայլն ու աղուէսը “խնամի„ կ՚անուանեն իրարու, ուրիշները՝ գայլը

„քեռի" եւ աղուէսը՝ „քեռորդի:" Հայկական առասպելաց մէջ, ինչպէս նաեւ վիպականներուն, գայլն ու աղուէսն առհասարակ „եղբայր" են իրարու, բայց տեղ տեղ նաեւ „քեռի" ու „քեռորդի" (Հմմտ, առակներս ԾԹ, ԿԵ, ԿԸ, ՃԽԵ եւն.) իսկ „խնամի" չենք գտներ: Յիշեալ վէպին մէջ անասունները կ՛երեւան դարձեալ մարդկային անուններով՝ Renart, Isengrin, Hersent եւն, առհասարակ իբրեւ ցեղ մ՛եւ ոչ անհատ անձնաւորութիւն կրելով յատկանշական անուն մը: Իսկ ժողովրդական առասպելներուն մէջ անասուններն այնպէս սեպհական անուններ չեն կրեր, որ միայն կենդանական վէպին է:[1] Արդ անհնար է ուշադրութիւն չընել հայերէն առակին „Ուղտ եւ Գայլ եւ Աղուէս",[2]

---

1 Այսպէս G. Paris, Les sources du Roman de Renard, ի Թերթին Journ. des Sav. 1894, p. 600—6. Նոյն խնդրոյ մասին՝ Grimm, Reinhart Fuchs, p. CCXXII—CCL դարձեալ C. Voretsch, Jakob Grimm's Deutsche Thiersage und die moderne Forschung, ի Preussische Jahrbücher, LXXX, 1895, p. 463 ff. — Միտ դրուի որ արեւելեան զրուցին (ոչ առակին) մէջ „Բանք վասն խաբող աղուէսուն" եւն (Հտր. Գ, 179 եւն) ոչ միայն „Ապլահատան" աղուէսն, այլ նաեւ իւր հայրն „Ապուչախմախ" եւ ուրիշները մարդկային անուն կը կրեն:

2 Առակ ԾԹ (Հտր. Բ, 77 ըստ ձեռագրաց VJB եւ ag) „Ուղտն եւ գայլն եւ աղուէսն եղեն եղբարք եւ գնացին եւ գտան հաց մի մաքուր. եւ ասեն՝ Որ ի մէնջ մեր աւագն է, նայ կերիցէ զհացս: Ասէ գայլն. Ես այն գայլուն որդին եմ որ Նոյ ի տապան էառ: Եւ ասէ աղուէսն. Ո՛վ ողորմելի, դու իմ կրտսեր թոռին ընկերն ես: Ուղտն առեալ զհացն կանկնեցաւ եւ ասէ. Ո՛վ որդեակ, ապայ այս ջղերքս յերեկ է եղած: Ես յառաջն անուան դրէին ուղտոյն՝ Բաէոս եւ գայլոյն՝ Մարքոս, աղուեսուն՝ Թորոս: Եւ կամեցաւ գայլն ձկտիլ

ուր անասունները կ'երեւան նոյնպէս սեպհական մարդկային անուններով՝ Բագոս, Մարկոս եւ Թորոս: Անշուշտ մէկ ծիծառով գարուն չ'ըլլար, բայց երբ առակիս մէջ՝ եթէ նաեւ միակն ըլլայ՝ կը կարդանք թէ "եւ յառաջն անուն դրեն ուղտոյն Բագոս եւ գայլոյն Մարկոս, աղուէսուն Թորոս", բնական է հարցընել թէ երբ էր այն "յառաջն" եւ ուրկէ՞ դրուեցաւ, եւ ո՞չ արդեօք գրիչն աչքին առջեւ ունի ժողովրդական վէպ մը: Թերեւս Հայոց քով ալ գոյութիւն ունէր կենդանական վէպ մը մարդկային անուններով, որմէ ըլլայ յիշեալ առակը.[1] (§ 580:) Մեր հաւաքմանց մէջ բաւական շօշափման կէտեր կը գտնենք "Ռընարի" վէպին հետ: Սակայն մէկ կամ միւս կողման իրարմէ ուղղակի կախում ունենալուն դժուարաւ կրնայ խօսք ըլլալ. գոնէ մեզի ծանօթ չեն այնպիսի փաստեր որ այսպիսի

---

ի վեր, զի առցէ զհացն յուղտէն, եւ նախ զգլուխ էառ ի ծկայմէջն [J ի ծնկան մէջն, B ի ծնկացն մէջն]. եւ սկսաւ գալն կըզկընծալ [B կծկտալ. J կղկըծել.] Նայ աղուէսն ի շուրջ գար, ասէր ձայնիւ եղանակել. Բարձր է Բագոսն, կլընծայ Մարկոսն եւ շուրջ գայ Թորոսն: Ցուցանէ, եւն:

[1] G. Paris (անդ՝ 604—5) անունները կը մեկնէ այսպէս թէ Այս անունները կը տրուին միայն անասնոց որոնց հետ մարդը գթալից ընտանութեամբ կը վարուի եւ պիտոյք կը զգայ զանոնք անուանելու: Միայն թէ այսպիսով դժուար է մեկնել մեր առակին մէջ ուղտին "Բագոս" կոչուիլը: Նոյն մեկնութիւնը կու տայ ընդհանրապէս նաեւ P. Kretschmer իւր գրուածին մէջ՝ Der Esel Nikos (ի թերթին Byzantinische Zeitschrift, VI, 469—479), առթիւ յունական ժողովրդական տաղաչափութեան մը Իշու, Գայլու եւ Աղուեսի վրայ, ուր էշը "Նիկոս" կը կոչուի (Նիկոյ, Նիկողայոս:)

խնդիր մը յուզելու ստիպեն։ Այս փաստերն եթէ գտնուին, դժուարին չէ նշանակել այն ճամբան որով Գաղղիացւոց եւ Գերմանացւոց միջինդարեան վէպը կրնար անցնիլ Հայոց, խաչակրաց արշաւանքներն, Կիլիկեան Հայոց Եւրոպայի հետ հաղորդակցութիւնն եւն։ Պէտք է աչքի առջեւ ունենալ այն ալ՝ որ եթէ Հայերը Կիլիկիոյ մէջ կրնային մերձաւոր իշխանութիւններէն ընդունիլ եւրոպական առասպելները, Հայոցմէ ալ կրնային նոյն ճամբով Եւրոպացւոց անցնիլ արեւելեան նիւթեր։ Սակայն լուծելու գլխաւոր խնդիրն է պարզաբանել միջինդարեան հայ ժողովրդական զրուցաց չափն ու նկարագիրը՝ ձեռագրաց մէջ պահուած մնացորդներով, եւ հայկականաց ու եւրոպականաց աղերսը՝ եթէ կայ՝ ճշգրտել։ Հայոց եւ Եւրոպացւոց մէջ հաղորդակցութեան ճամբաները բազմազան էին. Եւրոպացիք կրնային հայկական արտադրութեանց ծանօթանալ նոյն իսկ Եւրոպայի մէջ, հայկական գաղթականութեանց մէջ, գէթ՝ օրինակի համար ի Սալեռնոյ, զոր արդէն յիշելու առիթ ունեցանք (հմմտ. § 267։) Եւ Սալեռնոյ դեր մը կը խաղայ նաեւ միջինդարեան եւրոպական վէպին մէջ։[1] Աւելորդ չէ նշանակելն որ հայ լեզուն ծանօթ է միջինդարեան եւրոպա-

---

1 Սալեռնոյ կ'երթայ Աղուէսն գազանաց թագաւորին հիւանդութեան համար դեղ փնտռել գտնելու (Isengrinus տե. J. Grimm, Reinh. Fuchs, 171 ff., տես p. LXVII: Hec ego perpendens abii petiique Salernum.) Ի Սալեռնոյ ուղեւորութեան ժամանակ աղուէսը կը սորվի լատիներէն, այսինքն՝ իտալերէն լեզուն. (տես Grimm, անդ., p. LXV.)

կան գրականութեան, օրինակի համար հին-գաղղիական տաղաչափութեան մը մէջ[1] լատիներէնի եւ գաղղիերէնի հետ՝ համադաս կը յիշուին յունարէն եւ հայերէն. (§ 581:) Մեր հաւաքմանց ուշ ժամանակի ձեւերուն եւ "Ռընարի" վէպին նշանակուած շօշափման կէտերը կը մեկնուին երկուքին ալ հիմնական նոյն աղբիւրներ ունենալովն: "Ռընարի" վէպին շրջանակը, G. Parisի հաւանական եզրակացութեան համեմատ՝ (անդ, էջ 610) կը գծուի արեւելեան Գաղղիա իբր Ժ. դարուն լատին բանաստեղծէն: Անծանօթ է այն ինչ որ բանաստեղծը յանուանէ մուծած է այս շրջանակին մէջ, բայց ինչ որ յետոյ կը ծանօթանայ՝ երկու գլխաւոր ընդարձակ աղբիւրներէն է, այսինքն՝ "ժողովըրդական զրոյցներ եւ յունական-արեւելեան առակներ կենդանիներու:" Մեր հաւաքմանց ալ առակաւոր նիւթերն ուշ ժամանակ նոր ու բազմակերպ կերպարանափոխութիւններ կրած են, բայց իրենց ալ գլխաւոր աղբիւրները նոյն երկուքն են՝ "յունական-արեւելեան առակներ" եւ "ժողովրդական զրոյցներ." (§ 582:)

Դառնալով հայ ժողովրդական առակներուն, կրնանք վերջապէս ենթադրել որ՝ առանձին մանրավէպներ ըլլան կամ գրաւոր քաղուածներ առանձին մանրավէպներու կեն-

[1] Տես առ Wackernagel. Altfranzösische Lieder und Leiche, Բազէլ 1846, էջ 64. du Méril; Poésies etc. p. 112. Տաղիս այս տողերն են՝ Qui tout sa uroit lou laitin | kank'en seivent li lettrei, | françois et greu, et ermin, | et tout lingaige esprovei եւն:

դանական վէպի մը․ որ՝ անոր հիմնական մասն
էր վիպական պատմութիւն մը մրցման Աղուեսու
եւ Գայլին՝ ճոխացած ի հարկէ պատկերներով
բազմաթիւ ուրիշ արկածներու թէ գլխաւոր
դիւցազանց եւ թէ ուրիշ անձանց․ որ վերջա-
պէս՝ աղուեսու յաղթանակով կ՚աւարտէր նոյն
վիպասանութիւնը նոյն անուամբ․ եւ որ նոյն իսկ
«Աղուէսագիրք» անուանակոչութիւնը ծագած է
աղուեսու մասին ժողովրդական վիպասանու-
թեան ծանօթութեննէն․ թէեւ կղերականքն ու
Վարդանեան հաւաքմանց մէկ տեսակը մկրտե-
ցին «Աղուեսու գիրք» անուամբ, աղուեսու
անուան տակ՝ ինչպէս արդէն ջանացինք ապա-
ցուցանել, զօրութեամբ կը հասկընային՝ ըստ
ամենայն հաւանականութեան՝ խորամանկ փոր-
ձիչն մարդկային ազգին։ Սակայն այս ամենն են-
թադրութեա՞ն արժէք միայն ունի․ Հայոց
քով ունէ՞ր ստուգիւ գոյութիւն նոյն հիմամբք
ամբողջական ընդարձակ վէպ մը, որուն բեկորքը
կարելի ըլլայ գտնել մեր առակաց մէջ․ ար-
դեօք այս առակներն անյիշատակ ժամանակներէ՞
ստացուածք էին Հայաստանի բնակչաց՝ թէ
երեւցան անոնք հայկական ժողովրդական մշակ-
մամբք առակաւոր նիւթերու՝ որ վաղուց անցած
էին ի Հայաստան Արեւմուտքէն եւ Արեւելքէն,
ըլլայ գրաւոր ըլլայ բերանացի ճամբով։ Այս
եւ շատ ուրիշ խնդիրներ կը մնան ապագային։
Հոս մեզի համար բաւական է այն ալ, եթէ
յաջողեցանք ներկայացընել Հայոց քով միջին-
դարուն հաւանական գոյութիւն ունենալը ժո-

ղովոդական առասպելներու կենդանական աշ-խարհէն՝ բերնէ բերան շրջելով, եւ անոնց ազ-դեցութիւնն՝ այսպէս կամ այնպէս՝ մեր հաւաք-մանց վրայ. (§ 583։)

## 11

Հոս եթէ նոր գլուխ մը կը սկսինք՝ այս այն յաւելուածոյ մասանց համար է, որ այսպիսի ընդարձակածաւալ քննադատական երկասիրութեանց վերջը գրեթէ անհրաժեշտ են։ Նախընթաց վերջին տասներորդ գլխով աւարտեցան քննութիւնք. կը մնան միայն քանի մը Յաւելլիք եւ Ուղղելիք (էջ 573—6) եւ վեր-ջաբանն։ Յաւելեաց մասէն շատ բան չունինք նշանակելու։ Գլխաւոր կէտը՝ Աղուեսագրոց վրա-ցերէն թարգմանութեան մասին տեղեկութիւնքն արդէն յիշեցինք վերին իրենց տեղը (հմմտ. §518։) Միւսներէն կարեւոր է յիշել մանաւանդ յաջորդը։ Տեսանք որ Աղուեսագիրքը կայ նաեւ արաբերէն, որ թարգմանուած է հայերէնէ։ Սակայն ասիկայ միակ յիշատակարանը չէ որ հայերէնէ թարգմանուած ըլլայ արաբերէնի։ Ծանօթ է ուրիշ դէպք մ'ալ հայ գրականու-թենէ փոխառութեան՝ քրիստոնեայ Արաբացւոց քով։ ԺԸ. դարուն առաջին կիսուն Կորնթացւոց առ Պաւղոս եւ Պաւղոսի առ Կորնթացիս Թղթոյն հայերէն ձեռագրին հետ Լոնտոն հասած էր նաեւ անոր արաբերէն թարգմանութիւնն՝ հայերէնէ փոխադրուած Հալէպի բնակչէ մը[1]։ Աւելցնենք

[1] Տես Gul. et Georg. Gul. Whistoni filii, Mosis

նաեւ որ Սէն-Մարտէնի հրատարակած Վար-դանայ առակաց խիստ քննադատութիւն մը լոյս տեսած է Սիլվեստր դը Սասի արեւելագիտին գրչէն[1]։ Վերջապէս "Բարուախօսի„ հին հայ մատենագրաց քով եղած յիշատակութեանց խնդրոյն նկատմամբ կրնանք նշանակել նաեւ այն խօսքը, զոր կը գտնենք Ուխտանիսի Պատմութեան մէջ[2], ուր Կիւրիոնի համար կ'ըսուի թէ "Որպէս իժի եւ քարբի լցեալ էր զականջս իւր, զի մի՛ լուիցէ զձայն Թովչի Ճարտարի․„ սակայն կ'երեւայ ուղղակի Ս. Գրքէն ըլլալ[3]։

Վերջաբանական մասն (էջ 577—582) ի հարկէ ընդհանուր հայեցուածք մըն է բովան-դակ գործոյն՝ ստացուած արդեանց եզրակա-ցութեամբ եւ համառօտ ամփոփմամբ։ Անյիշա-տակ ժամանակներէ ի Հայաստան գոյութիւն ունէին առասպելներ կամ զրոյցներ կենդանական աշխարհէն, թերեւս կենդանական վէպ մ'ալ։ Այս գրական հարստութեան հիմնական մասը կրնային Հայք ժառանգած ըլլալ իրենց նախա-հարցմէ՝ անոնցմէ որ ի Հայս կը բնակէին արիա-կան գաղթականութեններ յառաջ. բայց նաեւ

---

Chorenensis, Historiae Armeniacae Libri III. Londini 1736, Praef. p. 1.

1 Silvestre de Sacy, ի թերթին Journal des Savants, 1826 (Paris, Avril) p. 241–46.

2 Ուխտանէս Բ, ը. տպ. Վաղարշապատ 1871, Հատուած Բ, էջ 21—2։

3 Արդեամբք հմմտ. Սղմ. ԾԷ, 5 "Սրտմտութիւն նոցա ըստ նմանութեան օձին, որպէս իժի քարբի զի խցեալ է զականջս իւր, զի մի լուիցէ նա զձայն թովչի Ճարտարի„ եւն։

կրնային անոնք մուտք գտած ըլլալ ի Հայս Փռիւգիայէն կամ ընդհանրապէս Փոքրուն Ասիոյ կողմերէն, ուստի ստացած են առակները նաեւ Յոյնք: Սակայն հայկական ժողովրդական առակները հայերէն գրաւոր հաւաքմանց կորիզը չեն կազմած:

Հայ մատենագրութեան մէջ առակները կ'երեւան անձուկ կերպով կապուած այն ազդեցութեան հետ զոր ըրած է անոր վրայ յունական կրթութիւնը. եւ այս իմաստով լրովին իրենց վրայ կրնան առնուլ Հայք գաղղիացի առակաբանին խօսքը թէ՝ քանի որ արուեստից գիւտն աւագութեան իրաւունք մըն է, խրատական առասպելը (apologue) հին Յունաստանի պարտական ենք[1]: Մերձաւորապէս Է. դարուն երեւցաւ Հայոց մէջ յունարէն լեզուէ թարգմանուած հաւաքումն Ողիմպիանէոս, որ կը բաղկանար եսովպեան առակներէ հռետորական խմբագրութեամբ: Ասոր հետզհետէ յաջորդեցին հայ թարգմանութիւններ նաեւ ուրիշ եսովպեան առակաց, բայց ոչ պարզ խմբագրութեամբ: Առակներուն դպրոցաց մէջ մուծուիլն հրահանգութեան համար՝ մեծապէս նպաստեց անոնց ընդհանրացման եւ ծաւալելուն Հայոց մէջ:

---

1 Տես Լաֆոնդէն, Գիրք Գ, առակ Ա: Բնագիրն է L'invention des arts étant un droit d'aînesse, Nous devons l'apologue à l'ancienne Grèce. Լաֆոնդէնի հայ թարգմանը (Գարագաշեան, Առակք Լաֆոնդէնի, Վիեննա 1894, էջ 69) փոխադրած է՝ "Թ'է իրաւունք անդրանկութեան գիւտ արուեստից, Պարտական եմք զառակն հընոյն Յունաստանի,, եւն:

Մինչեւ ԺԲ. դարուն վերջերն ետովպեան առակներն՝ իրենց սեռին մէջ՝ անպայման կ'իշխէին ի Հայս թէ դպրոցաց եւ թէ մատենագրութեան մէջ: Այս իշխանութեան մասամբ մրցակից էր գուցէ միակ յիշատակարան մը՝ "Բարուախօսն:„

"Բարուախօսն„, զոր քանի մը Հայ օրինակներ կ'ընծայեն "Փէլըրրէ„ մը, թարգմանուած էր գուցէ ետովպեան առակներէն քիչ մ'աւելի յառաջ: Մեզի ծանօթ օրինակաց թարգմանութիւնն եղած է յունարէնէ: Մեզի հասած բնագիրը համեմատաբար լաւ պահուած է, ինչպէս որ նաեւ բուն յիշատակարանն աւելի հաստատուն եւ որոշ կերպարանք մ'ունի շնորհիւ իւր ինքնայատուկ բովանդակութեան, որ կը պահպանէր զանի կրճատումներէ եւ յաւելումներէ: Սակայն յընթացս ժամամակաց նաեւ հոս մուտք գտան եկամուտ տարրներ, ընդհանրապէս անասնոց մասին, բայց նաեւ ետովպեան առակներ: Բայց աստի փոփոխութեան ենթարկուեցան "Բարուախօսի„ հիմնական գլուխներն ալ, սակայն այս արդէն դժուարաւ ԺԳ. դարէն յառաջ, եւ ըստ ամենայն հաւանականութեան՝ անմիջաբար կամ միջնորդաբար՝ Վարդանայ առակաց ազդեցութեան ներքեւ:

Վարդան Այգեկցի՝ նախ աշխարհիկ քահանայ եւ յետոյ մենակեաց ճգնաւոր՝ ԺԳ. դարու սկիզբն հռչակաւոր հայ քարոզաբաններէն էր: Իւր խրատները մեծ յաջողութիւն գտան իրենց պարզութեամբն ու ոճոյն յստակութեամբն: Վարդան ստեղծեց քարոզի կամ խրատի նոր

տեսակ մը՝ ներմուծելով առակներ անոնց մէջ՝ իմաստները պայծառ պատկերացընելու համար։

Այգեկցի քարոզաբանն առասպելներ չէ շարադրած նոյն իսկ այն այլաբանութեանց սիրոյն համար. բայց երբ մշակած է առակի նիւթեր, փոխ առած է գրաւոր աղբիւրներէն։ Իւր հիմնական աղբիւրներն էին եսովպեան առակներն եւ "Բարուախօսի" վերաբերեալ նիւթեր։ Զատոնք խրատական նպատակաւ միայն գործածելով՝ խրատաբան քարոզիչն փոխ առած է ամբողջովին առակաւոր մասը, հազիւ երբեմն իւր կողմանէ աննշան մանրամասնութիւններ մուծանելով. սակայն եսովպեան առակաց աշխարհային յորդորակ-խրատներն եւ "Բարուախօսի" նիւթոց նշանակական մեկնութիւնքն փոխած է հոգեշահ խրատներու եւ բարոյականներու։

Առակաբանութեան իբրեւ նոր տեսակ մը՝ Վարդանայ առակները հաճելի եղան հասարակութեան. տարածուեցան բերանացի՝ ու գրաւոր ճամբով՝ շնորհիւ նշանաւոր բարոյագէտին խրատներուն։ Վարդանայ առակներէն կազմուեցան փոքրիկ հաւաքումներ։ Մէկ կամ երկու հաւաքումներ՝ ըստ ամենայն հաւանականութեան՝ կազմեց ինքը Վարդան, ըստ հետեւորդի անոնք Վարդանայ հաւաքումներ են. սակայն աւելին կազմեցին ուրիշները հետեւելով Վարդանայ օրինակին։ Այսու հանդերձ ոչ այս կերպով սկսուած "Վարդանեան" հաւաքմունքն, եւ ոչ նոյն իսկ Վարդանայ հաւաքածոն հաստատուն կերպարանք կամ կազմակերպութիւն մ'ունէին։

Յատկանշանական էին առակաբանութիւնքն։ Ասոնք՝ եթէ չկազմեցին ալ մեր հաւաքմանց կորիզը, բայց եւ այնպէս եղան մանանխոյ սերմն որմէ աճեցաւ ծառն իւր ճիւղերով, այսինքն՝ բազմատեսակ "Հաւաքմունք առակաց Վարդանայ"։ Վարդանայ առակաց երեւումը հայկական առաւ-կաւոր գրականութեան մէջ նոր ճիւղ մ'ալ սկսաւ։

Վարդանայ բազմաթիւ անանուն հետեւողներ գտնուեցան։ Վարդանայ առակաց յաջողութիւնը զուգադիպեցաւ առակաց ու զրուցաց ընդհանուր յափշտակութեան ԺԲ — ԺԳ. դարերուն։ Ասոնց բազմապատկութեան եւ տարածման նպաստեց նաեւ դպրոցը։ Դպրոցական շրջաններու մէջ, հայ կղերականաց քով՝ սկսան երեւալ նորանոր օրինակներ առակաց Վարդանայ, սկսան անոնցմէ հաւաքմունք կազմուիլ, մասամբ օժանդակութեամբ քարոզչաց։ Ճոխացնելով Վարդանայ պատրաստ առակներով, ձեռք զարկին կղերականք շարադրել առակաբանութիւններ՝ Վարդանայ գլխաւոր աղբերաց հիման վրայ, այսինքն եսովպեան առակաց եւ "Բարոյախօսի" նիւթերուն։ Այս կերպով կարգաւ Վարդանայ առակներէն սկսան երեւան գալ "Վարդանեաններ", կազմելով Վարդանայ առակաբանութեանց հետ ի միասին հիմնական խաւ մը հետեւող հաւաքմանց մէջ։ Աստիճանաբար բազմատեսակ եղան խրատականները. անոնց մէջ մտան քաղաքային եւ ընդհանրապէս աշխարհական ատաղձնիւթեր (motif.) քիչ մ'եւս ըը հիմնական խաւը կուտակուեցաւ նկամուտ տարրներով։ Վարդանեան

հաւաքմանց մէջ հիմնական խաւին վրայ սկսան կազմուիլ նոր խաւեր՝ ճոխացած եսովպեան առակներէ, Բարուախօսէ, Մխիթարայ Գոշի առակներէ, հոգեշահ եւ այլ վիպասներէ, եւ վերջապէս ժողովրդական առակներէ եւ հէքեաթներէ։ Փոխադարձաբար նոյն Վարդանեան հաւաքմանց խաւերն սկսան սուզիլ յիշեալ աղբերաց մէջ։ Բայց Վարդանեան հաւաքմունք ազդած են մանաւանդ համացեղ գրաւոր յիշատակարանաց ճակատագրին վրայ։

Եսովպեան առակներն՝ ըստ ամենայն հաւանականութեան՝ դպրոցներէն վտարուեցան Վարդանեան առակներովն։ Եսովպ անյայտացաւ նաեւ գրականութեան մէջ։ Եսովպեան առակները մեզի չեն հասած անկախ օրինակներով. Վարդանեան առակաց հաւաքմունք կլլած են եսովպեան ամէն առակները, նաեւ անոնք որ փոխակերպուած չէին Վարդանեան առակաց։ Միայն Ողիմպիանու սոփեստի փոքրիկ հաւաքումը պահած է իւր ինքնակաց գոյութիւնը. սակայն նաեւ այս աստիճանաբար ճոխացած է եկամուտ աճեցմամբք, գլխաւորաբար Վարդանեան առակներուն միջոցով, եւ երբեմն անոնց յաւելուած եղած է։

“Բարոյախօսն„ ալ ձգուած է դէպ ի “Վարդանայ առակաց հաւաքմունք„, կամ՝ պարզ եւ ճշդագոյն ըսելով՝ Վարդանեան հաւաքմանց մէջ։ Պատահած է որ Բարոյախօսն ամբողջովին կլլուած է որեւէ Վարդանեան հաւաքմանէ մը. աւելի յաճախ Բարոյախօսի վերաբերեալ մասեր անջատուած մուծուած են Վար-

դանեան հաւաքմանց մէջ՝ անդառնալի կերպով։ Հակադարձ ազդեցութիւնն ալ եղած է, այսինքն Վարդանեան՝ որոնց մէջ նաեւ Վարդանայ՝ առակները մտած են «Բարոյախօս»ին մէջ։ Հետաքրքրական կէտ մըն է որ Բարոյախօսի անջատուած կտորներն՝ ըստ երեւութին խմբագրուած են Վարդանեան առակաց ոգւով, եւ այն ատեն ժողովրդական յիշատակարանիս նշանակական մեկնութիւնքն ընդունած են Վարդանեան յօրդորակներու նկարագիրը։

Նոյն ժամանակ, մեծաւորապէս ԺԳ դարուն, արդէն գոյութիւն ունէր ուրիշ արտադրութիւն մ'ալ հայկական առակաւոր գրականութեան, այսինքն ինքնագիր հաւաքումն առակաց՝ զոր Մխիթարայ Գոշի († 1213) կ'ընծայէ աւանդութիւնը, տակաւին երկբայելի։ Մխիթարայ Գոշի առակները գործածած են Վարդանեան հաւաքմանց կազմողները, պատրաստ նիւթ գտնելով զայն, երբեմն առանց որեւէ էական ձեւափոխութեան մ'առնելով զանոնք։

Աստիճանաբար ցամքեցան առակները. Վարդանայ հետեւողներուն գրաւելու առնելու բան չմնաց. եսոփպեան առակները գուցէ նոյնպէս կլլուած լմնցած էին։ Վարդանեան առակաւորաց մէջ սկսան կրկին մշակուիլ ամէն կարգի պատմուածքներ։ Հայ գրականութեան մէջ կային հաւաքումներ հոգեշահ, խրատական եւ հետաքրքրական նիւթերու։ Ասոնք որ իրենց արդի ծաւալով ու ճոխութեամբը կը գտնուէին Վարդանեան հաւաքմանց կազմողներուն առջեւ,

ստանալով Վարդանեան առակաց կաղապարեալ ձեւը՝ մուծուեցան Վարդանեան հաւաքմանց մէջ։ Սակայն վերջապէս Վարդանեան հաւաքմունք ալ դադրեցան բացառապէս խրատական քիշատակարանաց դերը խաղալէն։ Եւ անգամ մ'որ Վարդանեան հաւաքմանց մէջ մուտք գտան օտար եւ եկամուտ տարրներ այնպիսի ընդարձակ չափով, կարելի չէր սահման դնել վերջնոց հոսանքին։ Ներս խուժեցին ամէն կարգի զրոյցներ ու մանրավէպներ, եւ ամէն կողմանէ՝ ոչ միայն գրքերէն, այլ նաեւ ժողովրդէն։ Սակայն անգիր դպրութեան եւ ի մասնաւորի կենդանական աշխարհէն ժողովրդական առասպելներուն՝ ուշադրութիւն դարձուեցաւ նաեւ ուրիշ պատճառաւ։

Եթէ ոչ կենդանական վիպասանութիւն, գոնէ կենդանական առասպելներ չդադրեցան Հայոց քով ապրելէ քրիստոնէական շրջանին ալ, թէպէտ եւ հալածուած քրիստոնէական քաղաքակրթութեան նախանձայոյզներուն կողմանէ եւ անտարբեր նայուած կամ արհամարհուած կրթուած դասակարգներէն։ Բայց երբ առ հասարակ միջինդարու հայ մատենագրութեան ռամկանալուն հետ իրեն ճամբայ բացաւ ժողովրդական հոսանքը Վարդանեան հաւաքմանց մէջ, այն ժամանակ նոյն ճամբով անոնց մէջ մտաւ նաեւ հոսանքն ժողովրդական ստեղծագործութեան կենդանական առասպելաց։ Ըսինք որ այս ժողովրդական առասպելաց, թերեւս հայկական ժողովրդեան կենդանական վէպին բեկորներուն, ազդեցութիւնն երկու տեսակ է։ Մէկ

կողմանէ գրաւոր առակները բացատրութեան, մասամբ նաեւ բովանդակութեան մասին ենթարկուեցան ժողովրդական խմբագրութեան՝ աւելի կամ նուազ մերձաւոր ժողովրդական զուգակշիռներուն (parallèle) ազդեցութեան ներքեւ։ Միւս կողմանէ հաւաքմանց մէջ մուծուեցան առաջին անգամ ժողովրդական առակներ, Վարդանեան առակներու ձեւին վերածուած կամ միայն փոխադրուած միջինդարեան գրաւոր լեզուին։

Մեր այս յիշատակարանաց որակական վերածնութեան հետ համաժամանակեան է նաեւ անոնց քանակական զարգացումն։ Հնագոյն հաւաքմունքն ոչ միայն պարզ էին պարունակութեամբ, այլ նաեւ փոքրիկ ծաւալով. աստիճանաբար փոքրիկ Վարդանեան հաւաքմունքն խառնուեցան միացան իրարու, եւ այն ատեն այս խառնուած գումարմանց մէջ երեւան եկան նաեւ ամբողջական խումբեր հետաքրքրական նիւթերու՝ քաղուած նոյն կարգի հաւաքումներէ։ Այս ամէնուն արդիւնքն եղան ընդարձակ հաւաքումներ զանազան տիպերով։ Զանազանութիւնը յառաջ կու գար նախ գումարմանց, փոքրիկ հաւաքմանց ընտրութեան պէսպիսութենէն, եւ երկրորդ միեւնոյն գումարմանց պէսպէս խմբագրութիւններէն։ ԺԷ. դարուն, թերեւս ԺԶ.ին վերջերը, Վարդանեան հաւաքմունք սկսան քարանալ՝ իրենց անգամ մ'ընդունած ձեւերուն մէջ սառելով պնդանալով։ Յիշատակարանաց այս անագանագոյն տեսակները, իւրաքանչիւրն "Հաւաքումն առակաց Վարդանայ" կամ ուրիշ խորա-

գրով, երբեմն նաեւ առանց անուանակոչութեան, շարունակեցին ընդհանրանալ ժողովրդականանալ ի Հայրենիս, եւ շատերը նաեւ այսօր կ'ապրին հոն բերնէ բերան փոխանցմամբ՝ ցուցընելով միանգամայն իրենց ծագումը։ Իրենց կարգին նաեւ ընդարձակ հաւաքումներէն քաղուածքներ եղան, ամէն մէկն իբր ինքնակաց յիշատակարանի մը փոխարկուելով։ Այն ատեն տեղի ունեցաւ նաեւ զանազան տեսակներու (տիպերու) զիրար խաչաձեւ կտրելը։

Վարդանեան այս տեսակ հաւաքմանց մին, որ ծանօթ է "Աղուէսագիրք" անուանակոչութեամբ, չորս անգամ հրատարակուեցաւ ԺԷ. դարուն երկրորդ կիսուն տպագրութեամբ, որ ի վերջոյ կասեցուց արգելեց վերջնականապէս հաւաքմանց անդրագոյն զարգացումն, եւ դարձեալ քիչ չնպաստեց իւր մէջ բովանդակուած առակաւոր նիւթերուն Հայոց մէջ տարածուելուն։ Սակայն նոյն հաւաքման գլխաւոր նշանակութիւնը կը կայանայ յայնմ որ հանրամատչելի գիրք մ'եղաւ իբր նիւթ խրատական եւ հետաքրքրական ընթերցանութեան, որով նաեւ երեւցաւ Հայաստանէ ալ դուրս։ Արդեամբք ալ Աղուէսագիրքն անցաւ Հայաստանի սահմաններէն ալ անդին՝ դրացի քրիստոնեայ ազգաց, Ասորիք ու Վրաստան, թարգմանուելով տաճկերէն եւ վրացերէն լեզուներու։ — Ասով կ'աւարտի մեր հաւաքմանց պատմութիւնը։

---

## Բ.

Աւարտեցինք մեր ձեռնարկին ամենամեծ եւ կարեւորագոյն մասը, Հայագիտին եռահատոր գործոյն առաջին եւ ընդարձակագոյն հատորին՝ Ուսումնասիրութեանց՝ կարեւորագոյն կէտերը նշանակելու, որչափ հնար էր մեզ: Կը մնայ այսուհետեւ քանի մը խօսք ըսել միւս երկու հատորներուն վրայ, եւ այն շատ համառօտիւ. քանի որ ասոնց բովանդակութեան մասին յաճախ առիթ եղաւ խօսիլ նախընթաց գլուխներուն մէջ: Միայն երրորդ Հատորին կամ Յաւելուածոց մասին ստիպուած ենք մի երկու խօսք աւելի ըսել:

### 1.

Բ Հատորը ծայրէ ծայր "Բնագիր„ է՝ հրատարակութիւն բազմազան հաւաքմանց առակաց[1]: Եւ ինչպիսի՜ մանրակրկիտ ճշդութեամբ կատարուած հրատարակութիւն, համեմատութեամբ իբր 21 ձեռագիր եւ երկու տպագիր օրինակներու: Այս ձեռագիրքն յընթացս ուսումնասիրութեան առիթ եղաւ նշանակել. բայց աւելորդ չէ հոս ալ համառօտիւ թուել (տես

[1] Հայերէն ճակատն է՝ "Ն. Մառ, Ժողովածոյք Առակաց Վարդանայ, Նիւթք առ ի Պատմութիւն միջին դարուց դպրութեան Հայերէնի: Մասն Բ. Բնագիր. Ս. Պետրբ. տպ. Ի. Ն. Սկորոխոդովու, ՌՅԽԳ„ (1894:) 8° էջք ԺԶ+344:

էջ VI։) Ձեռագիրքն են՝ իրենց համառօտու-
թեան նշաններովն՝ հետեւեալքը։ Նախ 14 հատ
Էջմիածնի մատենադարանի, այսինքն Թ. 2189
(A), 453 (B), 1684 (C), 1711 ($C^{2}$), 12 (D),
2189 (E), 2281 (F), 2282 (H), 1636 (K),
11 (L), եւ Թ. 86. դարձեալ երեք ուրիշներ
(G. $G^{2}$, I), որոնց մասին ուսումնասիրութեանց
մէջ խօսուած է։ Պարիսի ազգային մատենա-
դարանի ծանօթ օրինակը (anc. fonds Nr. 135)
կը ներկայացընէ "Սովորական" (V) օրինակն
Վարդանեան առակաց հաւաքման։ Բացի Վենետ-
կոյ կրկին օրինակներէն՝ գործածուած են երկու
օրինակներ Բերլինի հայ ձեռագրաց հաւաքա-
ծոյքէն (Թ. 90, 95) եւ երկու հատ ալ մեր
Մատենադարանի օրինակներ (Թ. 31 եւ 146։)
Աղուեսագրոց տպագրութիւններէն երկուքն
աչքի առջեւ ունեցած է հրատարակիչը, այս-
ինքն՝ Ամստերդամի 1668ի (ag) եւ Էջմիածնի
1698ի (agE) հրատարակութիւնքն։

Այս ամէն բազմազան հաւաքմանց առակ-
ները շարունակեալ թուով թուարկուած են
հրատարակութեանս մէջ, ընդ ամէնը 380
(Ա—ՅՁ)։ Բայց իրականութեան մէջ շատ աւելի
կտորներ կը գտնենք, եթէ հաշուել ուզենք
միեւնոյն կտորներու բազմաթիւ եղանակաւոր-
ումներն ու խմբագրութիւնները, զորոնք անհնար
էր համեմատութեանց մէջ զետեղել. ուստի
դրուած են առանձին՝ աւելի մանրատառ, իբրեւ
"այլ խմբագրութիւն". (օրինակի համար՝ Առակ
ԺԸ, ԺԸ ա, ԺԸ բ, ԺԸ գ, եւ նմաններ։) Աչքէ

անցընենք միայն “Ցանկ Բ Մասին„ կամ առակներու ցուցակը (էջ VII—XVI), տեսնելու համար թէ որչափ բազմաթիւ են այս կարգի պէսպէս խմբագրութիւնքը։

Ինչպէս յառաջաբանին մէջ[1] կը ծանուցուի, եւ ինչպէս բնական էր ընդունիլ, հրա-

---

1 Ահա հայերէն յառաջաբանը. “Յերից մասանց երկոցն միջին ծանիր զսա, զի առաջինն անկ ի քննութիւն, այլ զոր յետին է՝ մանր բնադիրք, մասամբ ի ռուս թարգմանեալք եւ հաստուածք յԱղուեսագրոց արաբերէն հանդերձ մանրախոյզ ցուցակաւ տասանց ձեռագրացն Ս. Էջմիածնի, կալ իբր զյաւելուած. ընդ որում միահետ տուեալ ի տպագրութիւն՝ առաջիկայդ յամեաց աւարտիլ։ Աստ ի 49 իջէն անտի զարմասցիս ի վերայ այլայլութեան տառից ոմանց. քանզի բուռն հարեալ զտպագրութենէ մասինս ի տեղւոջ ուրեք շուտափոյթ եղեւ անցուցանել զգործն անդուստ յայլ տեղի, որպէս հարկ ինչ ստիպէր։ Արդ զընագիրս բաց ի մեծաց վերնագրութեանց յինէն ի ներքս մուծելոց եդեալ է իմ ի տիպ ոչ եւ ի մի տառ անգամ ընթանալով ընդդէմ ընթերցուածոց աւրինակացն. զի եւ զռամկաբանութիւնս եւ զորս առ հասարակ եղծմունք լեզուի յընդաւրինակաւղաց կամ ուղիղ գրութեան ասին, զամենեսեան ի մէջ առաջ անփոփոխ։ Սակայն զյաւելեալ գիտելիս զ՚ի գործ արկելոց ձեռագրացս, զուստի եւ զորպէսն, ով վերծանաւղ ուշիմագոյնդ, խնդրեա ի բուն ուսումնասիրութեանն՝ որ է մասն առաջին՝ ի լեզու Ռուսաց այժմէն իսկ արկանելի ընդ դրոշմաւ եւ յուսովս դրոշմեալ արդէն, իբրեւ հասցէ սա ի ձեռս։ Գտցես անդանաւր եւ աղգի աղգի տեսութիւնս ի նուաստէս արարեալս եւ ծանաւթութիւնս զանձնէ Վարդանայ Այգեկցւոյ եւ զորոց նմին ընծային գունակ գունակ ժողովածոյք առակաց, այլ եւ լո՛ւր զառ սոյն երկրորդ մասն ցուցակ սխալանացն, զորս աստէն ի կրկին ընթեռնուլ նկատեսցուք. եւ սոքին երանի թէ բնաւ ոչ ելանիցեն ի դէմս. բայց աւաղ տեսանեմ ահա ուրեք ուրեք զելուզակսս՝ գողցես զնենգաւոր կապս աչացն, թէպէտ եւ յոյժ փոքունս թուով։ Իսկ կար իմ այսչափ էր։ — Ս. Պետրբ. 26 մայիսի 1895։ Ն. Մ։„

տարակուլթեանս մէջ եւ ոչ "մի տառ անգամ„ օրինակներու ընթերցուածէն փոխուած է, այլ ճշդութեամբ պահուած, բնականաբար նաեւ ռամկաբանութիւնքն եւ "առ հասարակ եղծմունք լեզուի յընդաւրինակողաց կամ ուղեղ գրութեան:„ Աւելցուած են միայն առակներու "վերնագրութեանց„ մեծ մասն. վասն զի օրինակաց մէջ կտորները սովորաբար առանց որեւէ յատուկ խորագրի կը կցուին իրարու: Շատ գովելի է այն կէտն ալ որ իւրաքանչիւր առակի խորագրին ներքեւ՝ փակագծի մէջ՝ նշանակուած է միշտ թէ ո՛ր ձեռագիրն ունի այն եւ ի՛նչ կարգաւ: Օրինակի համար "ԻԶ. Արտուտ թագաւոր թռչնոց„ առակին համար սկիզբը նշանակուած կը գտնենք՝ "26 V = 24 J = 156 ag = 92 B = 114 B = 2 C = 2 $C^2$ = 25 D:„ Ուրեմն առակս ունին՝ բացի տպագրէն՝ վեց ձեռագիրք, եւ այն Պարիսի օրինակն կամ "Սովորականը„ իբր 25երորդն ի կարգի հաւաքման, J ձեռագիրն իբր 24րորդն եւ այսպէս յառաջ: Կամ ուրիշ օրինակ մը բերելու համար՝ "ԴԷ. Առիւծ եւ աղուէս„ առակին համար կը գտնենք նշանակուած "97 V = 95 J„. ըսել է բաց ի Սովորականէն եւ անոր հնագոյն ձեւէն՝ ուրիշ ձեռագիրք չունին առակս. եւ այսպէս բոլոր մնացելոց համար:

Հրատարակութեան առաջին եւ հիմնական մասն է այն հաւաքումն, զոր ունի Վարդանայ անուամբ Պարիզեան օրինակը կամ "Սովորականը„, ընդ ամէնը 166 առակ (Ա—ՃԿԶ) որ նաեւ գրքին կէսէն աւելին կը բռնէ (էջ 1—

197), այնու մանաւանդ որ ասոնք համեմատա-
բար ամէնէն աւելի կան նաեւ միւս հաւաքմանց
մէջ, որով ձեռագրաց ընթերցուածները եւ
յատկապէս “այլ խմբագրութիւնք„ ամէնէն ա-
ւելի հոս բազմաթիւ ու ճոխ են։ Առակներու
կարգն ալ ճշդիւ պահուած է յիշել V կամ
“Սովորական„ հաւաքման ձեռագրին համեմատ,
որ կ'աւարտի ոտանաւորովս՝ “Առակաց բանքս է
հրաշալի | Երգողն է սուրբ եւ պանծալի | Բա-
բունեաց բաբուն բարի, | Որդյ Վարդան վերայ
կոչի. | Հրեշտակաց պար յօրինի, | Առաքելոց
աթոռ նստի, | Եւ աներեկ աւրն որ լինի | Մեզ
բարեխաւս առ Տէր լինի։„

Այս հիմնական մասին հրատարակութեան
պէտք էին աւելցուիլ շատ ուրիշներ։ Վասն զի
նախ կան շատ ուրիշ հաւաքմունք բազմաթիւ
ուրիշ կտորներով, որ դուրս կը մնային ի հարկէ
նախընթաց բաժնէն։ Բաց երկրորդ՝ նոյն հաւաք-
մունք բոլորովին անկախ չեն, այլ ընդհակառակն
իրենց պարունակութեան մէկ մեծ մասը նոյն էր
նախընթացին հետ, ուր արդէն համեմատուած
եւ նշանակուած են իրենց տարբերութիւնք։ Եւ
որովհետեւ անհնար է իւրաքանչիւր հաւաքում
զատ զատ տպագրել, որով միեւնոյն կտորները
քանի մ'անգամ հրատարակել, լաւագոյն մի-
ջոցն էր՝ ինչպէս ըրած է հայագէտն ալ, միւս
հաւաքմանց “Մնացորդք„ն դնել կարգաւ՝ նոյն
ոճով համեմատութեամբ ձեռագրաց, ուր եւ
որչափ կար։ Այսպէս տասն մնացորդ հաւաքում-
ներ կը գտնենք հոս հրատարակուած։

Նախ պէտք էին լոյս տեսնել "Մնացորդք առակաց ի ձեռագրէն J„ (էջ 198—207,) այնչափ աւելի որ այս եւ "Սովորականը„ սերտ կապուած են իրարու, ինչպէս նշանակուեցաւ քննութեանց մէջ։ Անոր համար J ձեռագրին բովանդակութիւնն ամենամեծ մասամբ նոյն էր նախընթաց բաժնին հետ։ Աւելի կային միայն վեց կտոր, որ հոս դրուած են (ՃԿԷ—ՃՀԲ։)

Շատ աւելի մեծ են "Բ. Մնացորդք առակաց յԱղուեսագրոց„ (էջ 208—258,) յիսունեւչորս նոր առակներ՝ որ նախընթացներուն մէջ չկան (առակք ՃՀԳ—ՄԻԷ,) բնականապէս համեմատուած միւս ձեռագիրներուն հետ այն տեղերն ուր անոնք ունին այս կտորները, կ՚ենթադրուի բաց ի VJ հաւաքումներէ, որ չունէին։ Նոյնն հասկընալու է բոլոր յաջորդ մասանց համար, որով երթալով միայն այնպիսի կտորներ կը մնան որ միայն այս կամ այն ձեռագրին մէջ կան, իսկ նախընթաց բաժիններու մէջ կը պակսէին։ Փոքր են յաջորդ քանի մը խմբերու մնացորդները, այսպէս "Գ. Մնացորդք առակաց ի ձեռագրէն A„ (էջ 258—261, առակք՝ ՄԻԸ—ՄԼԲ,) "Դ. Մնացորդք առակաց ի ձեռագրէն B„ (էջ 262—268, առակք՝ ՄԼԳ—ՄԽ) եւ "Ե. Մնացորդք առակաց ի ձեռագրէն C„ (էջ 268—270, առակք ՄԽԱ—Բ։) Բայց շատ մեծ հաւաքում մըն են յաջորդ երկուքն, այսինքն՝ "Զ. Մնացորդք առակաց ի ձեռագրէն D„ (էջ 270—300, առակք ՄԽԳ—Յ.) եւ "Է. Մնացորդք առակաց ի ձեռագրէն F„ (էջ

301—320, առակք ՅԱ—ՅԽԱ,) ուստի առաջինը 57 կտոր, երկրորդը 40 կտոր նոր նիւթեր։ Աւելի փոքր է մնացեալն՝ “Ը. Մնացորդք առակաց ի ձեռագրէն G„ (էջ 320—328, առակք ՅԽԲ—ՅԾԵ.) եւ վերջապէս “Թ. Մնացորդք առակաց ի ձեռագրէն H ընտրանաւք„ (էջ 328—333, առակք ՅԾԶ—ՅԿԸ։)

Ասկէ ետքն եկածներն կրնանք իբրեւ յաւելուած նկատել։ Արդեամբք ալ նախ կու գան “Յաւելլի տարբերութիւնք եւ խմբագրութիւնք„ (էջ 333—8.) գլխաւորաբար Վենետկոյ եւ Բերլինի ձեռագրաց տարբերութիւնքն եւ մէկ երկու այլ խմբագրութիւնք առակաց, որոնք իրենց տեղը կարելի չէր եղած զետեղել։ Նոր կտորներէն յիշելու է ուռանաւոր առակն Էջմիածնի Թ. 86 ձեռագրին մէջ՝ որուն մասին արդէն խօսուեցաւ, առակ մը G, հատ մը D եւ երկու հատ Բերլինի ձեռագրաց համեմատ։ Վերջապէս կայ բաժին մ’ալ՝ “Ժ. Այլ եւ այլ առակք ուստեք ուստեք„ (էջ 338—344, առակք ՅԿԹ—ՅՂ,) շատը Բերլինի ձեռագրէն, որոց վերջին երկուքն են “Պարոն Բուրթելի„ մասին զրոյցները։

Ասով կը լմնայ բնագրաց հրատարակութիւնն, եւ նաեւ ամբողջ Բ. հատորն կ’աւարտի հայագիտին կողմանէ յիշատակարանով մը [1]։ Կը

[1] Ահա այս մասն (էջ 344.) “Փառք Աստուծոյ եւ Երրորդութեան։ Յառաջին ամի ամենայն Ռուսաց կայսեր Նիկողայոսի Երկրորդի, ի Հայրապետութեան ամենայն Հայոց կաթողիկոսի Մկրտչի Առաջնոյ որ Հայրիկ բարւոք

*Մնայ այժմ տեսնել երկասիրութեանս երրորդ եւ վերջին հատորն, որ մասամբ շարունակութիւն է ներկայիս, հոն ալ բազմաթիւ բնագիրներ դրուած ըլլալով։*

## Զ.

*«Յաւելուածք» խորագիրն է Երրորդ Հատորիս, եւ այն՝ ինչպէս նիւթոց ցանկն ալ կը ցուցընէ (էջք V—IX՝) վեց գլխաւոր բաժիններով կամ յաւելուածներով։ Ասոնք ալ ընդհանրապէս բնագիրներ են. միայն առաջին յաւելուածը ցուցակագրութիւն մըն է, շատ ընդարձակ եւ լիակատար ամէն կողմանէ։*

*«Յաւ. Ա. Ցուցակագրութիւն 10 ձեռագրաց Էջմիածնի» (էջ 1—64) կը բանայ յաւելուածներու շարքը։ Ասոնց առաջինն է Էջմիածնի Թ. 1 ձեռագիրը գրուած ՌՁԲ (=1633) թուին ի Թոխաթ Սահակ երիցուէ, թղթեայ բոլորգիր. (տես էջ 1—10։) Պարունակութեններն յատկապէս յիշելու է Առաքելի Սիւնեցւոյ «Ադամայ գիրքն» տաղաչափեալ, դարձեալ «Պատմութիւնք հարկաւորք եւ դիտաւորութիւնք պի-*

---

*ասի, յաւուրսն յորս ի մայրաքաղաքիս հիւրընկալիւր հովիւն որբազնագոյն՝ հայկազնեան ազգին, ի թուականութեան Հայոց ՌՅԽԴ, յամսեան մարերի, յանգ հանաւ տպեցումն տառիցս, որ եւ մասն երկրորդ, առատ ծախիւք Արեւելեան Լեզուաց Բաժնի Ս. Պետերբուրգի Համալսարանի Կայսերականին, եւ ջանիւք ապաստաւորին Հայագիտութեանն. Մառի, որ եւ աղաչեմ զհանդիպողսդ տառիցս, չարեաւ մի յիշէք զիս եւ ակամայ սխալանացս անմեղադիր լերուք։»*

տանացուք. յղ...Նախնեացն Ադամայ եւ Եւայի զանազան կերպիւ ասացեալ ոտանաւորաբար ի Տէր Առաքելոյ Սիւնեաց” եւն՝ ութ գլխով. երրորդ անգամ “Բանք հոգեզուարճ եւ պատմութիւնք հարկաւորք յղ. Նախնեացն Ադամա եւ Եւայի” եւ նոյն կերպով “ասացեալ ոտանաւորաբար ի Տէր Առաքելոյ Սիւնեաց” եւն՝ տասն գլխով: Այսմէ ետքը կու գան Նորին Առաքելի տաղերը, շատը՝ “Գովք Ս. Աստուածածնի”՝ իբր 16 կտոր: Մնացեալ մասը տօմարական-աստղաբաշխական նիւթեր են, որոնց առաջինը սա խորագիրն ունի “Այլ բանք եւ պատմութիւնք բառից իմաստնոց եւ բանից նոցին, զոր առեալ է Պարսից Քրոց եւ Թարգմանի ի Հայս” եւն. իսկ երկրորդը՝ “վասն գիտութեան տարուն որ Խնայող իմաստասէրին չինեն” եւն: Յիշատակարաններու մէջ, որ՝ անցողակի ըսենք լիապէս կը հաղորդուին հոս եւ յաջորդ ձեռագրաց ցուցակներու մէջ, զանց առնուած չեն բուն Առաքելի Սիւնեցւոյ վերոյիշեալ տաղաչափութեանց երեք ոտանաւոր ընդարձակ յիշատակարանները. ըստ այսմ Առաքել շարադրած է առաջինը ՊԾԲ (= 1403) թուականին, նոյնպէս երկրորդը, միայն երրորդն ՊԾ (= 1401) թուին գրուած կ՚ըսէ “Տէր Առաքեալ Նուաստ ոգի.” եւ այս է “Բարառնութիւնք յԱդամ” յօրջօրջուածը: Առաքել իւր “վասն հոգեվանի” տաղին եւ ուրիշ քանի մը տաղերու յօրինման տարին կ՚ըսէ ՊԾԳ (= 1404.) ամէնուն մէջ կը յիշէ իւր Բարսեղ քհ. եղբայրը, հայրը Դաւիթ, իւր

“դասասաց„ վարդապետը Գրիգոր, մեծ իշխանն Սմբատ եւ անոր եղբայրը Թուրթել։

Բ. Երկրորդը՝ Էջմիածնի Թ. 57 ձեռագիրն (տես էջ 10—17) մագաղաթեայ բոլորգիր գրչագիր մըն է 369 թղթով, բաւական ալ հնութեամբ, ՉԽԳ (= 1294) թուին գրուած Կիրակոս երիցուէ Թումայ եւ Վանական քահանայից համար։ Պարունակութիւնն է Նախ Ներսիսի Շնորհալւոյ Ընդհանրականն (Թղ. 13ա եւն,) Թղթերն առ Մանուէլ կայսր՝ “Պատճառ ի խնդրոյ միաբանութեան Թագաւորին Հոռոմոց Եմանուէլի եւ սրբոց կաթուղիկոսացն Հայոց, թուղթքն զոր գրեցին առ միմեանս„ (Թղ. 97ա—213ա,) Թուղթն ի Ցամայք Նահանգ Միջագետաց ի խնդրոյ Թլկուրանի Առիւծ իշխանին (Թղ. 220ա—268ա,) Թուղթն առ Ցուսիկ արգելական ճգնաւոր (Թղ. 279ա—292ա,) բայց նաեւ “Ներսիսի եպիսկոպոսի եղբաւր կաթուղիկոսի Հայոց Գրիգորիսի՝ Պատասխանի թղթոյն Ցակոմբայ ուրումն վարդապետի ասորո ի մայրաքաղաքն Մելիտինո Հայոց„ (Թղ. 268բ—279ա։) Ցետոյ կու գան երեք կենսագրական ողբեր տաղաչափուած, այսինքն “Ողբն ի Տէր Ներսէս ... Տարսոնի„ անոր աշակերտին Խաչատրոյ (Թղ. 292բ—294բ.) երկրորդը “Գովեստ ներբողական պատմագրական բանիւ յղ. վարուց մեծի հայրապետին տեառն Ներսէսի Հայոց կաթուղիկոսի„ (Թղ. 304ա—326բ,) եւ յարգի տաղաչափութիւնն “Վարդանայ Հայկազնի Տաղ գերեզմանական վասն փոխման երանեալ եւ

սուրբ կաթուղիկոսին Հայոց Գրիգորիսի վկայասիրի„ (Թղ. 326բ—344ա.) Ներսիսի “բան մխիթարութեան առ վտանգեալս մարմնով„ (Թղ. 294բ—303բ) եւ “Բանք մաղթանաց առ սուրբ Հրեշտակս„ հանրածանօթ տաղաչափականն (Թղ. 344ա—348բ:) Մնացեալ մասին մէջ հետաքրքրական են կարգ մը Տեսիլներ եւ նման զրոյցներ, որոնց մէջ յաճախ կը յիշուի Վարդանայ անունն ալ: Այս կտորներն են՝ ա. (Թղ. 350ա—354ա) “Տեսիլ սուրբ եւ ճգնազգեստ կրաւնաւորին ... միայնաւորին Յովհաննէսի Գառնեցւոյն„, զոր տեսած է իւր վախճանած տարին, երբ էր “յանառիկ դղեակն Հռոմկլայ„, եւ տեսլեան մէջ ինք զինք փոխուած գտաւ Աշորնիս ձորը եւն (բնագիրը տես էջ 13.) — բ. (Թղ. 354ա—բ) “Հարցումն եւ պտխ. Վարդանայ վարդապետի„ տեսլեան մը կտորին մեկնութիւն. — գ. (Թղ, 354բ—356բ) Բան Յովհ. Գառնեցւոյ, զոր անոր բերնէն կը պատմէ գտողը, տեսիլ ՈՀԱ (= 1222) տարւոյն Յերուսաղէմ. — դ. (Թղ. 356բ—358բ) Նոյնպէս՝ տեսիլ ՈՀԲ (= 1223) տարւոյն նոյն Գառնեցւոյ. — ե. (Թղ. 358բ—361ա) “Վանական վարդապետին ասացեալ բան հաւատալի„ եւ (Թղ. 361ա—362ա) “Նորին վարդապետի այլ բան„ եւն. — զ. (Թղ. 362բ—363բ) “Վարդանայ վարդապետին ասացեալ„ պատմածն Բշնեցի Յովհ. աբեղային, եւ (Թղ. 363բ—364բ) “Նորին Վարդան վարդապետի„ որ կը սկսի՝ “Ես գիտեմ ի մեր ժամանակս իմ հասա-

կակից աբեղայ մի յԱնբերդոյ երկիրն ի վանքն որ Տեղեր կոչեն, Սարկաւագ անուն„ եւն. — Գ. (Թղ. 364բ—366բ) “Նորին Վարդան վարդապետի: Սարկաւագ վարդապետն ասացեալ էր„ եւն. եւ վերջապէս (Թղ. 366բ—367բ) կրկին պատմուածք մը Յովհ. Գառնեցւոյ: Յիշատակարանքն բազմաթիւ են:

ե. Էջմիածնի Թ. 453 (“Մայր Ցուցակ„ Թ. 445) ձեռագիր թղթեայ՝ 251 թուղթ, նօտրգիր ՌՀԷ (=1628) թուին ի Լէվ (Լէմբէրգ) Բասիլ գրչէն օգնութեամբ երեք աշակերտաց “Պօղդանի Խաչքօ, Եասքոյի Միսքօ եւ Ծերիկի Հանգոյ„: Բովանդակութեան գլխաւոր նիւթն է “Գրիգորի եպ. Նիւսացւոյ յղ. Բնութեան մարդոյ„՝ 180 թուղթ (բուն՝ Նեմեսիոս,) յետոյ “Հարցմունք գեղեցիկ եւ պիտանիք„, եւ Առակներու շարք մը (տես վերն) եւ “Հարցմունք գեղեցիկ եւ պիտանիք յարարածոցն գրոց. ի վերջոյ “Մարդակազմութեան արարեալ իմաստասիրացն եւ փիլիսոփայից„ եւն (այն՝ որ այլուր Ապու-Սայիդի կը տրուի՝ ստուգեալ յԱսարայ Սեբաստացւոյ:) Յատկապէս Առակաց մասին (առակ ՃԴ—ՃԵի մէջտեղ) կայ խորագիրս “Գիրք առակաց ասացեալ սուրբ վարդապետին Վարդանայ:„ Յիշատակարանն եւ այլ ամէնը տես էջ 17—19:

զ. Էջմիածնի Թ. 1631 (“Մայր Ցուցակ„ Թ. 1593) ձեռագիր 259 թղթով, բոլորգիր, ՋՁԸ (= 1539) թուին գրուած Գաբրիէլ գրչէն ի Ս. Կարապետ: Ոսկեփորիկ մըն է նոյն

կարգի հաւաքմանց բազմադիմի բովանդակութեամբն, զոր հոս անհնար եւ աւելորդ ալ է յառաջ բերել. (տես էջ 20—31 մանրամասն։) Նշանաւոր է սկիզբն (Թղ. 3ա—44բ) "Վարդանայ վարդապետի Այգեկցւոյն՝ յաւրինեալ պարզ բանիւ վասն խորհրդոյ տեառն Ճաճառականոյն„ առակներով որուն վրայ տես քննութիւնն, ինչպէս նաեւ յաջորդին (Թղ. 45ա—53բ) "Հարցումն Տէր Միքայէլի Անտիոքայ եպիսկոպոսի եթէ որպիսի աւրինակաւ է մարդս պատկեր Աստուծոյ, եւ պատասխանի վարդապետի Այգեկցւոյն„։ Ասոնց կից է "Ճառ վասն վեց աստիճանաց„ (Թղ. 54ա—61ա) եւ "վասնահագին եւ անքուն որդանցն„ (Թղ. 61բ—71բ։) Կը յաջորդեն տեսիլներ, այսպէս կրօնաւորի մը "ի Կիպրոս գաւառէ„ (Թղ. 72ա եւն,) ծանօթ Տեսիլքն "Ս. Կուսին Մարիամու Աստուածածնին„ (Թղ. 85բ եւն,) Տեսիլ Գրիգորի Լուսաւորչի (Թղ. 90ա եւն.) Տեսիլ Պաւղոսի առաքելոյն„ (Թղ. 96բ եւն։) Ուրիշ կարգի նիւթերէն յիշելու է Յովհաննու Երզնկացւոյ "Խրատ հասարակաց„ (Թղ. 117ա—143բ,) "Հարցումն Արձանայ եւ պտխ. Եզնկայ Կողբացւոյ Հայոց վարդապետի„ (Թղ. 168ա—170բ,) "Հարցումն Աշոտոյ որդւոյ Սմբատայ Հայոց թագաւորի եւ պտխ. Եզնկայ Կողբացւոյ Հայոց վարդապետի„ (Թղ. 170բ—173ա) եւ Եզնկայ անուամբ Խրատքն։ Բաց աստի կը գտնենք հոս (Թղ. 173ա—183բ) "Գրիգորի միայնաւոր ճգնաւորի Ցեսուացւոյ եւ անյաղթ գիտնականի ի վայ գրոցն„, Հարցմունք եւ Պտխ. Մակարայ եւ

երիտասարդին (Թղ. 183բ եւն), “Պատմ. վարուցն Ադամայ եւ Եւայի” (Թղ. 198ա—212ա,) “Տեսութիւն Առակացն Սողոմոնի Ներսէսի եպիսկոպոսի Տարսոնի” (Թղ. 212ա—226ա,) եւ “Պատմութիւն Փիլոնի Աղեքսանդրացւոյ” սքոլաստիկոսի (Թղ. 241ա—246ա:) Մեզի համար կարեւոր է Առակաց հաւաքումն (Թղ. 227ա—236ա:) Յիշատակարանները չափազանց շատ են թուով, որոնց գլխաւորին մէջ կը կոչուի հաւաքածոյս “Գիրք սուրբ Զօրավարին Վարդանայ եւ այլ սուրբ վարդապետացն” եւն:

Է. Էջմիածնի Թ. 1636 ձեռագիր թղթեայ՝ 263 թղթէ, նոտրգիր, ՌՃԺԳ (= 1664) թուին գրուած ի Ղռնիա Գրիգոր գրչէ: Նոյնպէս Ոսկեփորիկ է բովանդակութիւնը (տես էջ 31—36) նոյն կարգի շատ մը նիւթերով, վարք Յովհաննու կամաւոր աղքատին, Ալեքսիանոսի մարդոյն Աստուծոյ, Տեսիլ Ս. Աստուածածնի (Թղ. 108ա—125բ,) Հարցմունք Գր. Լուսաւորչի եւ Պտղ. Հրեշտակին (Թղ. 125բ—144ա,) Թուղթ երկնառաք (Թղ. 143ա—156ա) եւ նմաններ: Յատկապէս յիշելու է (Թղ. 209ա—228բ) “Ուղիղ դաւանութիւն հաւատոց, մեղապարտ Վարդան գրեցի աստուածային գրոց” (յիշատակարանը տես էջ 34) եւ անոր յարակից՝ “Վասն չբամբասելոյ եւ չդատելոյ զեղբարս” (Թղ. 228բ եւն.) “Սուրբ հարցն ուղղափառաց հաստատեալ ի պատճառս նաւակատեացն անհասից” (Թղ. 243ա.) “Դաւանանք քահանայից” (Թղ. 251ա եւն) եւ շատ նմաններ: Յիշատա-

կարանին համեմատ, ուր գիրքս "Հարանց վարք եւ Ոսկի փորիկ„ կը կոչուի, գրուած է "խօճայ ուստայ Պաղտասարին„ համար։

Ղ. Էջմիածնի թ. 1637 ձեռագիր 122 թղթով, բոլորգիր ՌՂԹ (= 1650) գրուած Մալաթիա Յովհաննէս երիցուէ։ Ոսկեփորիկ մըն է ճոխ յիշատակարաններով եւ նոյն կարգի բովանդակութեամբ (տես էջ 37—42,) ուր նոյնպէս կը գտնենք Տեսիլ Ս. Աստուածածնի (թղ. 10ա—19բ,) Տեսիլ Գր. Լուսաւորչի (թղ. 20ա 26բ,) Թուղթ երկնառաք (թղ. 27ա—34ա,) Վարք Ալեքսիանոսի, Մարիանէ կուսի եւ նմաններ։ Հոս ալ կայ Վարդանայ "Ուղիղ հաւանութիւն (դաւանութիւն) հաւատոյ„ (թղ. 80ա—102բ), "Ս. Հարցն ուղղափառաց հաստատեալ է ի պատճառս նաւակատեաց խորհրդոյն յղ, Անհասիցն„ (թղ. 103բ—109ա) եւ "վասն չբամբասելոյ եւ չդատելոյ զեղբարս եւ զընկերս„ եւն (թղ. 109բ—119ա,) որ նոյնպէս կային թ. 1636ի մէջ. բայց հոս յիշեալ "Անհասիցն„ ունի յիշատակարան մ'ալ՝ "Ապա եւ զվարդապետս Վարդան անմոռաց յիշեսջիք եւ մի՛ ոք հանցէ յանունս իմ ի գրոցս որ գրէ„ եւն։

Է. Էջմիածնի թ. 1638 ձեռագիր 161 թղթով, բոլորգիր ՌԽԳ (= 1594) թուին Յերզնկա գրուած Սահակ երիցուէ։ Նոյնպէս Ոսկեփորիկ (տես էջ 42—47) նոյն կարգի պարունակութեամբ, զոր օր. Տեսիլ Լուսաւորչի (թղ. 1ա—23բ,) Տեսիլ Ս. Աստուածածնի ի լեառն Չիթեննեաց (թղ. 24ա—45բ,) Թուղթ

երկնաւոք (Թղ. 46ա—59ա) եւ նմաններ։ Հոս կայ դարձեալ "Վկայութիւն Պարոնլոյս Նոր Նահատակին„ (Թղ. 70ա—84բ.) խրատականներէն՝ "Քարոզ ի խոստովանութեան բան խրատական„ (Թղ. 85ա—96ա,) "Հարցմունք տիեզերալոյս վարդապետի ասացեալ պարզ բանիւ յղ. Համբերութեան„ (Թղ. 96ա—109ա) եւ "Հարցմունք տիեզերալոյս վարդապետի ասացեալ յղ. Մկրտութեան„ (Թղ. 109բ—116ա,) "Կանոնք ... ի կարգս քահանայից„, քարոզ յիշոցնատուաց վրայ (Թղ. 122բ եւն) եւ նմաններ, ի միջի այլոց "Յղ. Երկնից„ եօթը գլխով (Թղ. 129ա—146բ։)

Է. Էջմիածնի Թ. 1711 ("Մայր Ցուցակ„ Թ. 1669) ձեռագիր 169 թղթով, բոլորգիր, գրուած 1601էն յառաջ Մկրտիչ գրչէն։ Հետաքրքրական է ձեռագրիս պարունակութիւնը (տես էջ 47—54) որուն սկիզբը կայ Վարք Վարդանայ փիլիսոփայի[1], յետոյ "Հարց եւ պա-

[1] Վարդանայ վարքը սկզբէն թերի է, մնացեալը տես ամբողջովին էջ 48—9։ Պակաս սկիզբն այժմ այսպէս է. "մնեալ. արժանացեալ կարգի քահանայութեան կուսակրաւն վարուք... հմուտ եղեալ ամենայն ճարտարութեան, աստուածաշունչ գրոց եւ եղանակաւոր երգոց. այլ եւ գրչութեան արուեստից եւ պատկերահանութեան, եւ զանազան ծաղկաւք նկարեալ զարդարէր զհին եւ զնոր կտակարանս, այլ եւ փիլիսոփայական իմաստից եւ վերծանութեամբ գրոց„ եւն։ Յետոյ "ելեալ յաշխարհէն իւրմէ գնացեալ եհաս յանապատ մի առ կրաւնաւորս եւ ագեցեալ ագեստ միանակեցի եւ ծառայէր կարգաւորացն ամենայնի„, վերջապէս "սուրբ Վարդան անտի եւս փախուստ առեալ եւ գնացեալ յերկիրն Եգիպտոսի, բնակեցաւ ի վանք մի„՝ մինչեւ վերջն իբր "մունջ„ եւ հոն այնպէս կը մեռնի, մի անգամ

տասխանի„ եւ քանի մը խրատականներէն ետքը "Պատմ. յղ. մատինն Ս. Առաքելոյն„, Աքանչելիք Ս. Նիկողայոսի, "վասն պահոց„, "վասն խոստովանութեան„ խրատներ. "Խաւսք ճշմարտառէքրոյ„ եւ անոր կից "Խաւսք ճշմարտառէքրոյ ուղղափառաց վարդապետաց վասն գողանոց եւ սողնոց եւ որք ի նոսա սահմանեալ է„ ուստի Բարթուղախոս, որոնց մասին տես քննութիւնը: Անկէ ետքը կու գայ "Պատմ. Տարաւնոյ զոր թարգմանեաց Զենովբ Ասորոց եպիսկոպոսն„ եւ Պատմ. Տարաւնոյ Յովհ. Մամիկոնենի, առանց կցուելով "Պատմ. Ծիծեռնան խաչին„ եւ Պատմ. Հացունեաց խաչին, եւ քանի մ'այլ կտորներ:

Ի. Էջմիածնի Թ. 1722 ("Մայր Ցուցակ„ Թ. 1681) ձեռագիր 306 թղթով, բոլորգիր, գրուած 1279—1311 տարիներու մէջ, Սարգիս գրչէ: Ցարգի գրչագիր մըն է իւր պարունակութեամբն (տես էջ 55—57.) վասն զի նախ ունի (Թղ. 3բ—127բ) "Պատմաբանութիւն Ղեւոնդեա մեծի վարդապետի Հայոց որ յղ. երեւելոյն Մահմետի„ եւն, ուստի Ղեւոնդ երիցու պատմագրութիւնն, յիշատակարանով[1]: Յետոյ

---

միայն ստիպուելով խօսիլ թէ "ես եմ Վարդան փիլիսոփայն:„

[1] Այս յիշատակարանն է (Թղ. 127բ) "Կատարեցաւ վարդապետութիւն Ղեւոնդի վասն ժամանակագրաց տան Թորգոմայ ի հրամանէ տեառն Շապհոյ Բագրատունւոյ: Որ եւ ցանկացող եղեալ սորին տէր Համազասպ ի պատուաւոր յազգէն Մամիկոնեաց ի հալալ արդեանց եւ հրաման ծրել փծուն գրչի Սարգսի: Աղաչեմ յիշեցէք„ եւն: Նոյնպէս մ'ալ Եւագրի գործերէն ետքը (Թղ. 214բ) յիշելով նոյն Համազասպը:

կու գան Եւագրի «Հարիւրաւորքն» (Թղ. 128ա—174բ), անոր Բանք խրատու (Թղ. 174բ—181բ) եւ Թղթակցութիւնն Եւագրի եւ Մելինեայ (Թղ. 182ա—209բ։) Բաց ի «Լուծմունք... ուրումն կատարելոյ ի լեռնէն Նուէի» (Թղ. 210ա—214բ) կը գտնենք «Պօղ. Վրդ.» ժամանակագրութիւնն (Թղ. 215ա—306բ։) Վերջին յիշատակարաններէն կ'իմանանք որ Յովհ. Կարճաւանցի ձեռագիրս «որ փտեալ կայր» նորոգել ու կազմել տուած է Շմաւոն վարդապետի Լօռեցւոյ ՌՃԺԳ (= 1664) թուին. ձեռագիրը յետոյ Վարդանայ Բաղիշեցւոյ ստացուածքն եղած է որ նուիրած է Էջմիածնի, «ի թվին ՌՃԼԹ» (= 1690։) Ըստ այսմ ամէն կողմանէ թանկագին գրչագիր մըն է։

Ժ. Էջմիածնի Թ. 1755 («Մայր Ցուցակ» Թ. 1714) ձեռագիր 299 թղթով, բոլորգիր գրուած ՊՂ (= 1441) թուին ի Տայշող Ստեփան երիցուէ։ Ասոր պարունակութիւնն ալ հետաքրքրական է (տես էջ 57—64.) եւ նախ կայ Մեսրոպայ Երիցու պատմութիւնն Ներսիսի, (Նախարարաց ցանկն ու ընդարձակ յիշատակարանը տես էջ 58—60.) յետոյ «Պատմ. կրաւնաւորին եւ ամիրային որ եղեւ յամս[ ]Ծ[1]

[1] Ինչպէս կը ծանուցանէ Հայագէտը՝ [ ] տեղը քերուածք մը կայ, ուր եթէ թուական մը չէ քերուածը, կը մնայ Ծ տարին (= 601) յիշեալ զրուցին համար։ Այս զրոյցը կայ նաեւ մեր Մատենադարանին Թ. 29 ձեռագրին մէջ (տես «Ցուցակ էջ 173 ուր բովանդակութիւնն ուրուագծուած է) սակայն տարբերութիւնք շատ կ'երեւան, օրինակի համար պատմական ձեւով վերջաբանը (մկրտուիլ Աբդլազիզ

Թուականութեան Հայոց„. ուստի Մովսիսեայ կրաւնաւորի եւ Աբդլմսիհ ամիրայի վիճաբանականն է որ ծանօթ է այլուստ ալ, բայց կը տեսնուի որ լաւագոյն օրինակ մըն է, յիշատակարանով Թարգմանչին Աբուսահլի: Ասկէ ետքը կուգան պատմութիւն Նախահարց, «Պատմ. Յովասափայ եւ Բարղամու„, Պտմ. Տարօնոյ Զենոբայ եւ Յովհ. Մամիկոնենի, «Կտակ. Յովսեփայ որդոյն Յակոբեա վասն՝ Նախանձու„ կից ունենալով «Պտմ. Ասանեթայ„ եւ «Աւրհնութիւն„ Ասանեթայ:

Այս ձեռագրով կը լմնայ հոս ցուցակագրուած Էջմիածնեան 10 ձեռագիրները:

Յաւելուած Բ (էջ 65—93) հրատարակութիւն է բնագրիս «Առակք Վարդանայ Այգեկցւոյն„, երեք ձեռագրաց համեմատ, այսինքն M (= Թ. 63 Լազ. ճեմ.,) N (= Թ, 1631 Էջմ.) եւ O (= Թ. 1767 Էջմ.:) Առաջին կամ Ներածական մասն «Վասն տասն վաճառականացն որ են մարդիկ„ (էջ 67—70) անոնց տասն անցքերով, ունի միայն O: Երկրորդը կամ «Մեկ-

---

ամիրային, Աշտափար ծառային եւն) զոր կը հաղորդէ Հայագէտը (էջ 60), չկայ Թ. 29ի մէջ: Նոյնպէս յիշատակարանն որ է հետեւեալը՝ «Ես Բարթողիմէոս Անձեւացեաց Թագաւոր ի ներընդականութենէ Ապոստոլին կոչեցեալ, թարգմանեցի զպատմութիւնս ի փոքրիկ գրոց ի հայ լեզուս յորժամ ծովացեալ մեղքն իմ ընկղմեցին զիս յանդունդս եւ մատնեալ եղէ ի ձեռս անաւրինաց, մինչեւ գերեզմանի արժանի չեղէ, բայց թէ աւգտակար է ինձ եւ մարդասիրական եւ մեծ խնամ արարչին առ իմ յաւժարութեանս, զի բազում մեղաց իմոց մասն ինչ թեթեւութիւն լիցի ի տանջանաց. եւ Քրիստոսի փառք յաւիտեանս ամէն:„

նութիւն տասն վաճառականացն„ (էջ 70—75) ունին թէ O եւ թէ N, բայց երկու տարբեր ձեւով, որոնք դիմացէ դիմաց դրուած են։ Միւս Բ—ԺԱ առակներն ալ (էջ 75—83) փոխնի-փոխն ունին յիշեալ երեք ձեռագիրքն, գլխաւ-որաբար M եւ N. վասն զի O ունի միայն Բ եւ Ջ առակները, վերջինս ալ տարբեր ձեւով։ Գ եւ Ժ առակները միայն N ունի, որ ասոր դիմաց չունի Ջ առակը։ — Առակաց միւս 17 կտորով հաւաքումն (էջ 83—93) որ կը սկսի "Էշա-ռիւծ„ կտորով եւ կ'աւարտի "Ժիժի եւ Մեղու„ առակով, ունին հաւասարապէս M եւ N, իսկ O չունի։ Մանրամասնութիւնք տեսնելու է թէ այս հրատարակութեան եւ իւր ծանօթութեանց եւ թէ բուն Ուսումնասիրութեան մէջ։

Յաւելուած Գ (էջ 95—110) հրատարա-կութիւն է Վարդանայ միւս հաւաքման 65 ա-ռակներով, որուն խորագիրն է՝ "Վարդան վար-դապետի ասացեալ առակ Բարախօս„, որուն մասին յաճախ խօսք եղաւ ուսումնասիրութեանց մէջ։ Այս է Br. կոչուած հաւաքումն, զոր կը գտնենք միայն նոյն ձեռագրին մէջ (Բերլինի Գրատան Ms. Or. Minut. 273.)

Յաւելուած Դ (էջ 111—128) հրատա-րակութիւն է արաբերէն բնագրին, բայց քա-ղուածոյ, ինչպէս խորագիրն ալ կը ցուցնէ՝ "Հատընտիր Առակք արաբերէն Աղուեսագրքէն„ ռուսերէն խորագրին համեմատ, արաբերէնին համաձայն՝ من كتاب امثال الثعالب. Ձեռագիրն է՝ ինչպէս արդէն ըսուեցաւ՝ ասորատառ կամ կար-

շունի (كارشونى) օրինակն՝ India Office N. 1049 ի Լոնտոն: Տես ուսումնասիրութեանց առաջին գլուխն:

Յաւելուած Ե (էջ 129—175) է Հրատարակութիւն բնագրին "Բարոյախօսի" գրութեան, վեց ձեռագիրներու եւ մէկ տպագրութեան համեմատ: Այս ձեռագիրքն են Էջմիածնի մատենադարանին Թ. 453 (B), 1684 (C), 1711 (C²) եւ 23 (R), Սեւանայ գրատան Թ. 78 (S), Պետերբուրգի Կայս. Հրապարակական գրատան Թ. 640 (Dorn, Catalogue, p. 571, Nr. DCXL.) եւ Պիտրայի հրատարակութիւնն (Pitra, Spic. Solesm. III, 374—90:) Բնական էր որ հոս ալ ճոխ ըլլան ձեռագրաց ընթերցուածոց պէսպիսութիւնքն, եւ նաեւ նոյն կտորին այլեւայլ խմբագրութիւնքն, զորոնք պէտք էր առանձինն դնել, յաւելուածոյ մասեր եւն. (Համմտ. Թ կտորն կրկին խմբագրութեամբ, յետոյ Թ²⁻⁶ կտորներն այլեւայլ ձեռագիրներէ:) Յատկապէս շատ մասեր աւելի ունի միայն B, որմէ են օրինակի համար ԺԴ—ԺԵ, ԺԸ—ԼԲ, ԼԵ—Ձ, որոնց համեմատականը կայ ասկէ զատ միայն P ի կամ Պիտրայի հրատարակութեան մէջ. բաց աստի ԼԵ—ԾԵ ունի դարձեալ միայն B, իսկ ԾՁ—Կ միայն C ձեռագիրն ունի, եւ այլ նման պէսպիսութիւններ: Բարուախօսի մասին տես ուսումնասիրութեանց մէջ յատուկ գլուխը:

Յաւելուած Զ (էջ 117—192) Հրատարակութիւն է արեւելեան նշանաւոր եւ սիրուն զրուցին "Աղուէս եւ Գայլ յԱկնատի", որ հայե-

ըջէնին մէջ սա խորագիրն ունի՝ «Բանք վասն խաբող Աղուէսուն եւ չարութեան Նորայ», որուն միւս հրատարակութիւնքն եւ՝ իտալերէն գործն Հայագէտ Ցեզայի՝ յիշուեցան վերն ուսումնասիրութեանց մէջ: Արդի հրատարակութիւնն ամբողջական է՝ նաեւ մէջը հիւսուած քանի մը կաֆաներով, դիմացն ալ ռուսերէն թարգմանութեամբ: Հրատարակութիւնս եղած է Պարիսի Ազգային Մատենադարանին մէկ ձեռագրին (anc. fonds Nr. 135) համեմատ (= V), համեմատուած՝ անոր հետ՝ որ լոյս տեսաւ ի «Բազմավէպ» 1881, էջ 193—8:

Ասով կ'աւարտի Յաւելուածներու շարքն եւ վերջին հատորս ալ, որ կը կնքուի անուանց ցանկով մը:

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ.; Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գուշեր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մենեվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց. (պատկերազարդ:) 1890: 8° Երես՝ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դեմետրիոս Տաձի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Ալպէր Տըմօն եւ Գ. Փիռոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Մնուփրիոս Անուփեան: 1892: 8 Երես՝ 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Ֆր. 1

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794–1860: (1 լուսանկարով:) 1893: 8° Երես՝ 232: Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Է+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 գըն-կատիպ.) 1893: 8° Երես՝ Ժ+533: Փր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Ջենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտակ՝ 55 պատկ.:) 1894: 8° Երես՝ 103: Փր. 2.—

ԺԴ. Գարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Ց. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես՝ 9+145: Փր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտր. Ա.: Ա—Զ: Ա. Նեմեսիոս: Բ. Պրոկղ Դիադոխոս: Գ. Խոսրովիկ: Դ. Գիրք Հերձուածոց կամ Եպիփան: Ե. Պրոկղ: Զ. Սեկունդոս իմաստասէր: 1895: 8° Երես՝ ԺԲ+294: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202: Փր. 2.50

ԺԸ. Տիւրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես՝ 192: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8° Երես՝ Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յակովբոս Վ., "Վարդապետութիւն առաքելոց" անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: 8° Երես՝ Թ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշեկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: 8° Երես՝ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Արգասւոր գրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ. Թրգմ. Հ. Գաբրիէլ Վ. Մէնէվիշեան: 1897. 8° էջ ԺԶ+107: Փր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, 8° էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի են: Տետր Բ: 1897: 8° էջ Ա—Ը+273—522: Փր. 3.—

ԻԵ. Գելցեր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք թարգմանչին՝ 1. Ցանկ 1895—1897 Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897 8° էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ Վ., Գիրք (կամ յօղուած) գրելու արուեստը: Նորոյս հեղինակներուն ուղղեալ քանի մը կարեւոր ակնարկութիւններ: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: 8° էջ Է+123: Փր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: 8°, 56 էջ: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 ընկատիպ պատկերով): 1898: 8° ԺԱ+202 էջ: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փաւստոս Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Մ. Խորենացու աղբիւրների ուսումնասիրութիւն: 1898, 8° 175 էջ: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899, 8° Երես՝ Է+26: Փր. —.50

ԼԱ. *Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ ԺԲ+369:* *Ֆր. 5.—*

ԼԲ: *Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ միջակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ Ժ+161:* *Ֆր. 2.50*

ԼԳ. *Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հատոր 1780—1825. (1 զնկատիւ:) 1899: 8°. Երես՝ Ը+558:* *Ֆր. 5.—*

ԼԴ. *Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: 8° Երես՝ Ը+124:* *Ֆր. 1.—*

ԼԵ. *Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յակովբոս Վ. Տաշեան: (1 աշխարհագրկն տախտակով:) 1899: 8° Երես՝ 48:* *Ֆր. —.75*

ԼԶ. *Տաշեան Հ. Յ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: 8° Երես՝ ԺԱ+198:* *Ֆր. 2.50*